



ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ • 1972

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ 1972

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 50-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

# Содержание

## СТАТЬИ



## НАВСТРЕЧУ 50-ЛЕТИЮ ОБРАЗОВАНИЯ СССР



## ПАРТИЙНАЯ ЖИЗНЬ



## ВОПРОСЫ ЭКОНОМИКИ



## ТРИБУНА НАУЧНОГО РАБОТНИКА



## КРИТИКА И БИБЛИОГРАФИЯ







# ՀՈԴՎԱԾՆԵՐ


Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆ

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար


# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՀԱՄՈԶՎԱԾՈՒԹՅԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՄԱՆ ԳՈՐԾԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒՄԸ

ՍՄԿԿ XXIV համագումարի նախատեսած վիթխարի ծրագիրն իրականացնող սովետական մարդկանց անձնվեր աշխատանքն այս օրերին ուղեկցվում է ստեղծագործական ակտիվության հատկապես մեծ վերելքով, հանդիսավոր տարելիցը՝ ՍՍՀՄ-ի կազմավորման 50-ամյակը արժանավայել նշանավորելու ձգտմամբ:

XXIV համագումարի որոշումները հստակորեն շարունակում և զարգացնում են կուսակցության լենինյան ազգային իմաստուն քաղաքականությունը, որի կենսահաստատ ուժի փայլուն վկայությունն են նաև հայ ժողովրդի նվաճումները, որպես մեր բազմազգ սոցիալիստական հայրենիքի բոլոր աշխատավորների ջանքերի անկապտելի մասը: Այդ նվաճումները ամբողջովին պայմանավորված են կուսակցական կազմակերպությունների գաղափարական ու կազմակերպչական մեծ աշխատանքով, մասսաներին ոգեշնչելու և իրենց ետևից տանելու նրանց կարողությամբ: Իրենց այդ գործունեության մեջ Հայաստանի կուսակցական կազմակերպություններն առաջնահերթ նշանակություն են տալիս հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների մարքս-լենինյան դաստիարակությանը, նրանց քաղաքական գիտակցականության մակարդակի, գաղափարական համոզվածության բարձրացմանը, կոմունիստական շինարարության պլանների հաջող իրականացման նկատմամբ նրանց խոր վստահության ամրապնդմանը:

* * *

Մարքս-լենինյան տեսությամբ, հասարակական զարգացման օրինաչափությունների իմացությամբ պինված, գաղափարապես համոզված մարդը ուժեղ, նպատակին համառորեն ձգտող անձնավորություն է: Նա խորապես նվիրված

է կոմունիզմի գործին, հանուն որի ակտիվորեն գործում է, իր բոլոր ուժերն ու եռանդը նվիրաբերում հասարակության հեղափոխական վերափոխմանը:

Դեռևս մեր դարի արշալույսին Վ. Ի. Լենինը, հիմնադրելով կոմունիստական կուսակցությունը, **հանձին նրա տեսնում** էր իրենց գործի ճշմարտացիությանը, նրա վերջնական հաղթանակին խորապես հավատացող հեղափոխականների կուսակցություն: Եվ այդ հատկանիշները ծնում էին ու ծնում են արիություն և հերոսություն:

Երբ Ախչա-Կույմայի ավազուտներում Բաքվի կոմունայի 26 անվեհեր ասպետները Ստեփան Շահումյանի գլխավորությամբ կանգնած էին հեղափոխության թշնամիների հրացանների փողերին դեմ-հանդիման, նրանցից ոչ մեկը չէր կասկածում, որ իր իդեալները կհաղթանակեն: Ի պատասխան թշնամիների համազարկերի, նրանք գոչում էին. «Մենք մեռնում ենք կոմունիզմի համար, կեցցե կոմունիզմը»: Անմահ կոմիսարները վստահ էին, որ սովետական իշխանությունը կվերահաստատվի Բաքվում, կհաղթանակի ամբողջ Անդրկովկասում: 1920 թվականին գաղափարապես համոզված կոմունիստ մարտիկներ ընկան նաև Հայաստանում: Մայիսյան ապստամբության հերոսները նույնպես չէին կասկածում, որ մեր բազմաչարչար երկրում ևս կհաղթանակեն սովետները:

Հանուն մարքսիզմի գաղափարների հաղթանակի բոլշևիկները մարտնչում էին բարիկադների վրա, աքսորվում էին, կրում տանջանքներ ու զրկանքներ, բայց երբեք չէին կորցնում հեղափոխական հեռանկարը: Ոգևորված նրանց օրինակով, միլիոնավոր պրոլետարներ և աշխատավոր գյուղացիներ զրոհի ելան ընդդեմ ինքնակալության ու կապիտալիզմի և համաշխարհային պատմական հաղթանակներ տարան:

Հեղափոխական մարտերի վետերանները կուսակցության գործին, կոմունիզմի գործին անձնվիրաբար ծառայելու էստաֆետը հանձնեցին հաջորդ սերունդներին: Նրանց փառավոր ավանդույթները պահպանելու և բազմապատկելու ձգտումը ծնում է սովետական մարդկանց մասսայական հերոսություն, նրանց ոտքի հանում մարտական և աշխատանքային սխրագործությունների՝ հանուն սոցիալիստական հայրենիքի, ամրապնդում է նրանց հավատը լենինյան կուսակցության՝ վեհ իդեալների կուսակցության, վերակերտող հեղափոխական գործողության կուսակցության նկատմամբ, որը կենսագործում է պատմական իր մեծ առաքելությունը՝ նոր մարդու, կոմունիզմի համոզված կառուցողի դաստիարակումը:

Կոմունիստական հասարակության մարդու, նոր արտադրահարաբերություններ կերտողի ձևավորման ուղիների տեսական հիմնավորումը պատկանում է մարքսիզմ-լենինիզմի կլասիկներին: Այդ ողջ տևական և բարդ պրոցեսը նրանք շաղկապում էին ոչ միայն սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանում կյանքի օբյեկտիվ պայմանների փոփոխության հետ, այլև կուսակցության ակտիվ գործունեության հետ, մասսաների շրջանում նրա նպատակաուղղված, հաստատակամ գաղափարա-դաստիարակչական աշխատանքի հետ:

Նոր մարդու ձևավորումը տեղի է ունենում մարքս-լենինյան աշխարհայացքի հիման վրա, որը աշխարհի, բնության, հասարակության վերաբերյալ հայացքների գիտականորեն հիմնավորված մի սիստեմ է: Այդ աշխարհայացքը մարդուն տալիս է քաղաքական և բարոյական հաստատուն կողմնորոշում, օգնում է նրան գտնելու իր տեղը կյանքում:



Ժողովրդական լայն մասսաներին տիրապետած մարքս-լենինյան ուսմունքի գաղափարների ստեղծարար մեծ ուժը վառ կերպով դրսևորվում է այն հսկայական վերափոխություններում, որոնք մեր երկրում կատարվել են սովետական իշխանության տարիներին: Դրանց անկապտելի մասն են Հայաստանում տեղի ունեցած աննախադեպ կերպարանափոխությունները: Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում նա հետամնաց, ագրարային երկրամասից վերածվել է ծաղկուն սոցիալիստական հանրապետության՝ ժամանակակից արդյունաբերությամբ, մեքենայացված գյուղատնտեսությամբ, կուլտուրայի բարձր մակարդակով: Հանրապետության արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալը սովետական իշխանության տարիներին աճել է 200 անգամ: Այժմ երկու օրում նրա գործարաններն ու ֆաբրիկաները զգալիորեն ավելի շատ արտադրանք են թողարկում, քան արտադրվում էր ամբողջ 1913 թվականին: Սոցիալ-տնտեսական արմատական փոփոխություններ են կատարվել գյուղի կյանքում: Այն անճանաչելիորեն կերպարանափոխվել է: Հայ ժողովուրդը սոցիալիստական բոլոր ազգերի սերտ համագործակցությամբ հասել է ժամանակակից քաղաքակրթության, գիտության ու կուլտուրայի բարձունքներին: Հանրապետությունում յուրաքանչյուր երրորդ մարդը սովորում է:

Սոցիալիստական շինարարության պրակտիկայով, կազմակերպչական և գաղափարական աշխատանքի փորձով հարստացած, Հայաստանի կոմունիստական կուսակցությունը հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների եռանդը ի սպաս է դնում ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների կենսագործմանը, նոր հնգամյակի գլխավոր խնդրի՝ ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի ըստ ամենայնի բարձրացմանը, հաջող իրականացմանը:

Իսկ որո՞նք են այն առանձնահատկությունները, որոնք ժամանակակից պայմաններում որոշում են մասսաների, աշխատավորական կոլեկտիվների, յուրաքանչյուր առանձին սովետական մարդու վրա կուսակցական ներգործության բնույթը, մեթոդներն ու միջոցները: Նախ և առաջ՝ դա հանրային արտադրության անընդհատ և արագաճող մասշտաբներն են, գիտատեխնիկական հեղափոխության ներգործությամբ նրա առավել բարդացումը, սոցիալիստական հասարակական հարաբերությունների, լայն մասսաների քաղաքական ակտիվության և կուլտուրայի անհամեմատ ավելի բարձր մակարդակը:

Այսպես, եթե 30—40 թվականներին հանրապետությունում իրադարձություն էր համարվում մի քանի ոչ մեծ ֆաբրիկաների ու գործարանների գործարկումը, ապա միմիայն անցած հինգ տարում Հայաստանը հարստացել է ավելի քան հարյուր արդյունաբերական ձեռնարկություններով և խոշոր արտադրամասերով: Անցած հնգամյակում հանրապետության արդյունաբերական արտադրանքի ծավալը նախորդ հինգ տարիների համեմատությամբ աճեց մոտավորապես 1,8 անգամ:

Կուսակցության տնտեսական քաղաքականության արմատական հարցը, որին ՍՄԿԿ XXIV համագումարը հատուկ ուշադրություն նվիրեց, արտադրության արդյունավետության հետագա բարձրացումն է: Առաջին պլան է մղվում արտադրության աճի ինտենսիվ գործոնների առավել լայն կիրառությունը, նրա ծավալի մեծացումը և աշխատանքային, նյութական ու ֆինանսական ռեսուրսների ծախսումների յուրաքանչյուր միավորին ընկնող ազգային եկամտի ավելացումը: Իսկ դա վերջին հաշվով որոշում է հանրային աշխատանքի ար-

տադրողականության բարձրացման տեմպերը: Մեր հանրապետությունում, օրինակ, ընթացիկ հնգամյակում նախատեսվում է արդյունաբերական արտադրության աճի 70 տոկոսը և շինարարության ու գյուղատնտեսության մեջ արտադրության ամբողջ աճն ապահովել բացառապես աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Ժողովրդական տնտեսության արդյունավետության այդպիսի բարձրացումը կարող է իրագործվել նախ և առաջ գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների լայն արմատավորմամբ, հետևապես, աշխատավորների ստեղծագործական ակտիվության հետագա բարձրացմամբ: Դրանում է դրսևորվում կուսակցության տնտեսական ու քաղաքական, գաղափարական և կազմակերպչական աշխատանքի օրգանական միասնության անխախտ սկզբունքը:

Կոմունիստական կուսակցության ծրագրմամբ և նրա ղեկավարությամբ սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման ընթացքում ձեռք բերված հաջողությունները մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ամենահաղթ ուժի նկատմամբ սովետական մարդկանց խոր համոզվածության հիմքն են: Դրանք վստահություն են ներշնչում, որ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներով նախատեսված նոր բնագծերը կնվաճվեն ժամկետից շուտ:

Իններորդ հնգամյակում կատարվելիք աշխատանքների բուն թափը չի կարող հայրենասիրական հպարտություն չառաջացնել սովետական աշխատավորների շրջաններում: Հայաստանի կուսակցական կազմակերպությունները ձգտում են իրենց գաղափարական ու կազմակերպչական աշխատանքում որքան կարելի է լայնորեն ու լիակատար կերպով ներկայացնել նախատեսված խնդիրների մասշտաբներն ու բարդությունը: Մենք ելնում ենք այն բանից, որ, ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը, «Մոտակա ժամանակաշրջանում կուսակցության պրոպագանդիստական և ագիտացիոն-մասսայական աշխատանքի կենտրոնական տեղերից մեկը պետք է գրավի մեր համագումարի որոշումների իմաստի ու նշանակության խոր պարզաբանումը աշխատավորությանը: Ինչպես հարկն է կարողանալ աշխատավորության հոծ զանգվածներին լիակատար չափով հաղորդել մեր գաղափարական համոզվածության ամբողջ ուժը, ինչպես հարկն է, իսկապես ստեղծագործաբար մոտենալ սովետական մարդու կոմունիստական դաստիարակության գործին, ահա թե որոնք են մեր գլխավոր խնդիրները այդ բնագավառում»[1]:

Մեր ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքում, օրինակ, մեծ տեղ են գրավում հանրապետությունում իրականացվող տնտեսական ու գիտատեխնիկական բարդ միջոցառումները, որոնց մասին մոտ անցյալում մենք երազել անգամ չէինք կարող: Այսպես, լեռնային բարձրադիր շրջանում՝ Զանգեզուրում, Որոտան գետի վրա, ստեղծվում է հիդրոէլեկտրակայանների կասկադ: Դրանց կառուցման համար պահանջվում է կիրառել հիդրոտեխնիկական աշխատանքների կոմպլեքս՝ փորել դերիվացիոն թունելներ, տեղադրել դյուկերներ և այլն: Իր ինժեներային մակարդակով այդ շինարարությունը պատկանում է համաշխարհային պրակտիկայում եղած ամենաբարդ շինարարությունների թվին: Իսկ նրա տնտեսական նշանակությունը պարզապես դժվար է գերագնահատել, որն արմատապես կկերպարանափոխի լեռնային խստաշունչ շրջանը:

[1] Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարին, էջ 142, «Հայաստան» հրատ., Երևան, 1971 թ.:



Պակաս եզակի չէ նաև 48 կիլոմետրանոց հիդրոտեխնիկական այն թունելի կառուցումը, որ անցնում է Վարդենիսի լեռնաշղթայի ժայռազանգվածի միջով: Այդ թունելով Արփա և Եղեգիս գետերի ջրահոսքի մի մասը շուռ կտրվի դեպի Սևանա լիճ, որի ջրերը բանեցնում են էլեկտրակայանների Սևան—Հրազդան բազմաստիճան կասկադի տուրբինները և ոռոգում հանրապետության կենտրոնական ու հարավային շրջանների հարյուր հազարավոր հեկտար հողեր: Թունելը կառուցվում է դժվարին պայմաններում, հորատանցումը որոշ տեղերում կատարվում է երկրի մակերևույթից ավելի քան 600 մետր խոր շերտի տակ: Բայց ժամանակակից տեխնիկայով զինված շինարարների աշխատանքային խանդավառության շնորհիվ հաջողությամբ են լուծվում ամենաբարդ խնդիրները:

Սոցիալիստական տնտեսական ու տեխնիկական առաջադիմության գծերը ակնառու կերպով երևան են գալիս, երբ խոսքը վերաբերում է Երևանում ստեղծված խոշորագույն էլեկտրոնային օղակաձև արագացուցչին, կառուցվող հզոր ատոմային էլեկտրակայանին, լեռնաքիմիական և ոսկու հանքի կոմբինատներին, շատ ձեռնարկություններում էլեկտրոնային հաշվիչ մեքենաների և մյուս նորագույն ապարատների արմատավորմանը:

Մեր պրոպագանդայում այդ բոլոր մեծագործությունների վերլուծումն ու ընդհանրացումը աշխատավորներին օգնում են պարզ տեսնելու, թե յուրաքանչյուր սովետական մարդու գաղափարա-քաղաքական, կուլտուր-տեխնիկական հասունության շեշտակի վերելքի շնորհիվ ինչպես է աճում սոցիալիզմի երկրի ստեղծարար հզորությունը: Մեր օրերում առավել ուժգնությամբ են հնչում Լենինի խոսքերն այն մասին, որ «հասունությունը վկայագրվում է ոչ թե գրանցումով, կամ վկայաթղթով, այլ, հաստատվում է փորձով, պրակտիկայով»[1]:

Աշխատավորների գաղափարական համոզվածության դաստիարակման աշխատանքի բովանդակությունը, իհարկե, կազմում է կուսակցական կազմակերպությունների գլխավոր հոգսը: Բայց պակաս կարևոր չէ մշտապես կատարելագործել այդ աշխատանքի ձևերն ու մեթոդները: Դա աշխատավորների ձեռք բերած գիտելիքները համոզմունքների, ակտիվ գործունեության խթանի վերածելու խիստ էական գործոն է:

Կոմունիզմի գործի համար պայքարող գաղափարապես համոզված մարտիկների ձևավորման, նրանց քաղաքական կոփման կարևորագույն միջոցը կուսակցական լուսավորությունն է: Հեղափոխական տեսության, մարքս-լենինյան ուսմունքի ուսումնասիրման նկատմամբ կոմունիստների, աշխատավորների հետաքրքրությունը տարեցտարի աճում է: Եթե 1969 թվականին կուսակցական ուսուցման ցանցի բոլոր օղակներում կար 127 հազար ունկնդիր, ապա անցած ուսումնական տարում այդ թիվը հասավ 142 հազարի: Կոմերիտական լուսավորության ցանցի խմբակներում և սեմինարներում պարապում են ավելի քան 155 հազար պատանիներ և աղջիկներ, տասը հազարով ավելի, քան նախորդ ուսումնական տարում:

Այստեղ չափազանց բնորոշ է այն, որ թե՛ կոմունիստները, թե՛ անկուսակցականները ավելի ու ավելի խոր հետաքրքրություն են ցուցաբերում այնպիսի գիտությունների հիմունքների ուսումնասիրման նկատմամբ, ինչպիսիք են ՍՄԿԿ պատմությունը, մարքս-լենինյան փիլիսոփայությունը, գիտական կո-

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 585:

մունիզմը, որոնք վճռական դեր են խաղում մարդկանց կոմունիստական գիտակցության, նրանց գաղափարական համոզվածության ձևավորման գործում: Եթե, օրինակ, քաղաքական լուսավորության բոլոր օղակների դպրոցներում, սեմինարներում 1970—71 ուսումնական տարում այդ առարկաները ուսումնասիրում էր ունկնդիրների 38 տոկոսը, ապա 1971—72 ուսումնական տարում՝ արդեն 52 տոկոսը:

Այս խիստ հատկանշական թվերի ետևում առկա է կուսակցական կազմակերպությունների մեծ աշխատանքը: Իսկ դրա իմաստն այն է, որ մարքս-լենինյան տեսության ուսումնասիրման նկատմամբ աճող հետաքրքրությունը, որը վերածվում է, կարելի է ասել, կենսական պահանջմունքի, անհնար է բավարարել, առանց մի ամբողջ շարք միջոցառումների, որոնք դառնում են ուսման որակական մակարդակի բարձրացման որոշակի սիստեմ: Այստեղ առաջին պլան է մղվում ունկնդիրների տեսական մտածողությունը դաստիարակելու մեթոդը, որը հնարավորություն է տալիս հստակորեն տեսնել հասարակական զարգացման հեռանկարները, կոմունիստական գաղափարախոսության արմատական դրույթները օրգանապես շաղկապել պրակտիկ գործունեության խնդիրների հետ: Բացի դրանից, այդ մեթոդը թույլ է տալիս որոշելու մեր առաջընթացի տենդենցները և նպաստելու դրանց ուժեղացմանը, բոլոր ուժերով ու միջոցներով պաշտպանելով ամեն մի առաջադիմական նախաձեռնություն, փակելով սոցիալիստական հասարակարգին խորթ ամեն տեսակ դրսևորումների ճանապարհը:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունները ձգտում են հասնել այն բանին, որ ունկնդիրների կողմից գաղափարա-տեսական և քաղաքական գիտելիքներ ձեռք բերելու գործում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների, կուսակցության փաստաթղթերի ինքնուրույն խոր ուսումնասիրությունը սերտորեն զուգորդվի այն բանի ակնառու ցուցադրման հետ, թե այդ աշխատությունների և փաստաթղթերի գլխավոր գաղափարները, նրանց մեթոդաբանական հիմքը ինչպես են ստեղծագործաբար յուրացվում: Այդ նպատակով սիստեմատիկաբար կազմակերպվում են խմբակային և անհատական զրույցներ, կոնֆերանսներ և այլն: Պլանաչափորեն վերահսկվում են քաղաքական լուսավորության բովանդակությունը, նրա մակարդակը: Այդ հարցերին են նվիրվում կուսակցական ժողովներ, կուսկոմների և կուսբյուրոների նիստեր: Ընդ որում, բանը չի սահմանափակվում ընդհանուր առմամբ եղած վիճակի քննարկմամբ, այլ դրվում են այս կամ այն պրոպագանդիստի գործունեության հարցերը, այն հարցերը, թե ուսումը որքանով հաջող է անցնում այս կամ այն ունկնդրի մոտ կամ ունկնդիրների խմբում: Քաղաքական լուսավորության որակի հարցերը սիստեմատիկաբար դրվում են քաղաքային և շրջանային կուսակցական կոմիտեների բյուրոների և պլենումների քննարկմանը:

Կադրերի գաղափարա-քաղաքական հարստացման հարցերն առավել լայն ծավալով դրվում են գիտատեսական կոնֆերանսներում, որոնք ավելի ու ավելի ամուր տեղ են գրավում մեր ամենօրյա պրակտիկայում: Ընդ որում, դրանք առավել շոշափելի հետք են թողնում կուսակցական կազմակերպությունների կյանքում ու գործունեության մեջ: Այդ տեսակետից խիստ բնորոշ էր Ապիվբեկովի շրջանում տեղի ունեցած կոնֆերանսը, որին մասնակցում էին գիտական կոմունիզմի հիմունքներն ուսումնասիրողները: Կոնֆերանսը նվիրված էր հե-





տևյալ թեմային՝ «Սոցիալիստական ազգերի ծաղկումը և նրանց աստիճանա-
կան մերձեցումը զարգացած սոցիալիստական հասարակարգում»: Կոնֆե-
րանսում հանդես եկան Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի թղթ-
թակից-անդամ, պատմության ինստիտուտի դիրեկտոր Գ. Գալոյանը, պրոֆե-
սոր Ա. Հակոբյանը, դոցենտ Ա. Աբրահամյանը, Հայաստանի կոմկուսի Ապիվ-
բեկովի շրջկոմի քարտուղար Ա. Հովհաննիսյանը և ուրիշներ:
Մեծ հետաքրքրություն առաջացրեց «Կուսակցության ղեկավար դերի աճը
զարգացած սոցիալիստական հասարակարգում» պրոբլեմին նվիրված կոնֆե-
րանսը, որը կազմակերպել էր Հայաստանի կոմկուսի Կենտկոմին առընթեր
կուսակցության պատմության ինստիտուտը՝ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր
մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի ֆիլիալը: «Կուսակցության ղեկավար դերի
մասին լենինյան ուսմունքի հետագա զարգացումը ՍՄԿԿ XXIV համագումարի
կողմից» զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-
լենինիզմի ինստիտուտի սեկտորի վարիչ, պատմական գիտությունների դոկ-
տոր, պրոֆեսոր Ի. Ն. Յուդինը: «ՍՄԿԿ XXIV համագումարը սկզբնական կու-
սակցական կազմակերպությունների դերի և մարտունակության բարձրացման
մասին» թեմայով զեկուցեց պատմական գիտությունների թեկնածու Գ. Մ. Օգա-
նեսովը: Զեկուցումների քննարկմանը մասնակցեցին կուսակցության Կրասնո-
սելսկի և Արարատի շրջկոմների առաջին քարտուղարներ, գյուղատնտեսական
գիտությունների թեկնածու Ռ. Փաշինյանը և իրավաբանական գիտությունների
թեկնածու Հ. Հովսեփյանը: Նրանք պատմեցին մասսաների հետ կուսակցա-
կան կազմակերպությունների կապերն ընդլայնելու իրենց աշխատանքի փորձի
մասին:
Անցյալ տարի անցկացվել է ավելի քան 250, իսկ ընթացիկ տարվա վեց
ամսում՝ մոտավորապես 200 այդպիսի կոնֆերանս:
Ձգտելով բարձրացնել մարքս-լենինյան ուսմունքի ուսուցման արդյունա-
վետությունը, մեր աշխատանքի պրակտիկայի վրա նրա ներգործությունը,
մենք ամենասևեռուն ուշադրություն ենք նվիրում պրոպագանդիստների որա-
կյալ կադրերի պատրաստմանը, նրանց տեսական գիտելիքներով հարստաց-
նելուն, ու պարապմունքների անցկացման մեթոդիկայի կատարելագործմանը:
Այդ նպատակով ամեն տարի անցկացվում են պրոպագանդիստների վերա-
պատրաստման ամառային դասընթացներ, ինչպես նաև առանձին պրոբլեմ-
ների նվիրված կարճատև սեմինարներ: Մենք ձգտում ենք այնպես անել, որ
պրոպագանդիստական աշխատանքի առաջ քաշվեն ամենափորձված, տեսա-
կանորեն պատրաստված կոմունիստները, որոնք հեղինակություն են վայելում
աշխատավորների շրջանում: Այդ պատվավոր գործունեությունը վարում են կու-
սակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական
ղեկավար աշխատողներ, աչքի ընկնող գիտնականներ, գիտության և կուլտու-
րայի գործիչներ:
Կուսակցական կազմակերպությունները վերլուծում են պարապմունքների
բովանդակությունն ու մեթոդիկան, ընդհանրացնում լավագույն պրոպագան-
դիստների փորձը, որոնց թվում կարելի է հիշատակել Կալինինոյի շրջանի «Կա-
լինինո» կաթնա-անասնապահական սովխոզի դիրեկտոր, սոցիալիստական
աշխատանքի հերոս Գ. Ավդալյանին, հանրապետության վաստակավոր ինժե-
ներ, «Արմգլավէներգոյի» գլխավոր դիսպետչեր Վ. Մարտինովին, հանրապե-

տության վաստակավոր ուսուցիչ Հ. Նալբանդյանին (Երևան), Լենինականի
քաղաքային թերթի բաժնի վարիչ Մ. Մարկոսյանին:
Մենք ունենք շատ կուսակցական կոմիտեներ, որոնք քաղաքական ուսուց-
ման կազմակերպման ուսանելի փորձ են կուտակել: Հիշատակենք, օրինակ,
կուսակցության Երևանի քաղկոմին: Կատարելագործելով քաղաքական լուսա-
վորության ղեկավարման մեթոդներն ու ձևերը, Երևանի քաղկոմը անցկաց-
րեց քաղաքական խմբակների և տեսական սեմինարների ունկնդիրների մաս-
սայական հարցում: Հարցման արդյունքները քննարկվեցին քաղկոմի բյուրոյի
նիստում: Ընդունված որոշման մեջ միջոցառումներ նախատեսվեցին քաղաքա-
կան կրթության սիստեմի առանձին օղակների կառուցվածքը կատարելագոր-
ծելու, նրանց աշխատանքը բարելավելու նպատակով: Մասնավորապես, հաշ-
վի առնվեցին ունկնդիրների ցանկությունները՝ տնտեսագիտական ուսուցումը
մոտեցնելու իրենց աշխատանքի կոնկրետ պայմաններին: Իսկ այդ կապակ-
ցությամբ պրոպագանդիստների կազմը համալրվեց ձեռնարկությունների և
հիմնարկների ղեկավար աշխատողներով: Միաժամանակ կուսակցության քա-
ղաքային կոմիտեի բյուրոն որոշեց բարձրացնել կուսակցության շրջկոմների
դերը պրոպագանդիստների հետ կատարվող աշխատանքում, որպեսզի շրջանա-
յին մեթոդական խորհուրդների ուժերով պրոպագանդիստներին առավել կոնկ-
րետ օգնություն ցույց տան նյութերի ընտրության, մեթոդիկայի հարցերում:
Երևանի կուսակցական կազմակերպության աշխատանքում ուշագրավ է նաև
քաղաքական կրթության հեռանկարային պլանների մշակումը: Այդ պլանները
նախատեսում են սիստեմատիկաբար, տարեցտարի ընդլայնել յուրաքանչյուր
սեմինարի կամ քաղխմբակի ունկնդիրների կողմից ձեռք բերվող գիտելիքները,
այն հաշվով, որ որոշակի ժամանակաշրջանում յուրաքանչյուր ունկնդիր
ավարտի համապատասխան ուսումնական ցիկլը:

***

Բնական է, որ քաղաքական լուսավորության սիստեմի կատարելագործ-
մամբ, որքան էլ դրա նշանակությունը մեծ լինի, ամենևին չի սպառվում գա-
ղափարական դաստիարակության աշխատանքը: ՍՄԿԿ XXIV համագումարի
որոշումները կուսակցության, նրա բոլոր կազմակերպությունների առջև դնում
են բնակչության բոլոր խավերի վրա կուսակցական ներգործության ոլորտի հե-
տագա ընդլայնման, սովետական մարդկանց գաղափարական համոզվածու-
թյան բարձրացման նպատակին ուղղված քաղաքական ու դաստիարակչական
աշխատանքի ձևերի կատարելագործման կարևոր խնդիրները:
Այս տեսակետից բարձր գնահատականի է արժանի բնակչության շրջա-
նում ագիտացիոն-մասսայական աշխատանք կատարելու ուղղությամբ Լենի-
նականի քաղաքային կուսակցական կազմակերպության փորձը: Քննարկելով
այդ հարցը 1972 թվականի մարտին, քաղկոմի բյուրոն որոշեց բոլոր միջո-
ցառումների անցկացումը կենտրոնացնել միկրոշրջաններում, իսկ կազմակեր-
պող կենտրոն դարձնել ակումբներն ու կուլտուրայի տները: Միկրոշրջաննե-
րում ստեղծված են հասարակական խորհուրդներ, որոնց կազմը հաստատվում
է կուսակցական քաղկոմի բյուրոյում: Այդ խորհուրդների կազմում գործում են
բազմաթիվ սեկցիաներ, որոնք դասախոսություններ ու զեկուցումներ են կազ-
մակերպում քաղաքական, իրավական և գեղագիտական պրոբլեմների շուրջը,
անցկացնում հանդիպումներ անվանի մարդկանց, գիտության ու կուլտուրայի
գործիչների հետ, հատուկ երեկույթներ երիտասարդության հետ: Խորհուրդները



և դրանց ակտիվը չեն սահմանափակվում մասսայական միջոցառումներով,
նրանք խորամուխ են լինում միկրոշրջանների բնակչության ամենօրյա կյանքի
մեջ, հետևում են հասարակական կարգի պահպանմանը, բարեկարգմանը,
դպրոցներում դաստիարակչական պրոցեսի ընթացքին:
Այդ ամբողջ աշխատանքը կատարվում է սկզբնական կուսակցական կազ-
մակերպությունների անմիջական ղեկավարությամբ: Դա կազմում է սովետա-
կան մարդկանց գաղափարական համոզվածության դաստիարակման ուղղու-
թյամբ նրանց գործունեության առաջնահերթ մասը, մեծապես նպաստում է
աշխատանքային ակտիվության բարձրացմանը, ՍՄԿԿ XXIV համագումարի
առաջադրած խնդիրների հաջող լուծման պայքարի ներգործության ուժեղաց-
մանը:
«Քաղաքի աշխատավորության կոմունիստական դաստիարակության վի-
ճակը և նրա բարելավման միջոցառումները ՍՄԿԿ XXIV համագումարի որո-
շումների լույսի տակ» հարցը քննարկվեց Լենինականի քաղկոմի պլենու-
մում: Աշխույժ խոսակցություն տեղի ունեցավ այն մասին, թե ինչ ուղղու-
թյամբ պետք է ընթանա աշխատավորների վրա կուսակցական ազդեցության
ձևերի ու մեթոդների կատարելագործումը: Այդ հարցի քննարկման ժամանակ
առաջացած մեծ ակտիվությանը նպաստեց խնամքով նախապատրաստությու-
նը: Պլենումի անցկացումից երկու ամիս առաջ քաղկոմի մի խումբ անդամներ,
փորձված դասախոսներ ու պրոպագանդիստներ, կուսակցական ակտիվիստ-
ներ հիմնավորապես ուսումնասիրեցին սկզբնական կազմակերպությունների
կողմից կատարվող քաղաքական-մասսայական և գաղափարական աշխատանքի
վիճակը: Նրանք ընդհանրացրին դրական փորձը, վերլուծեցին եղած թերություն-
ները և դրանց պատճառները: Ընդ որում, բնորոշ է, որ շատ թերություններ
վերացվեցին արդեն պլենումի բուն նախապատրաստման ընթացքում: Մեծ
օգնություն ցույց տրվեց կուսակցական կազմակերպություններին, առաջարկ-
վեցին հրատապ զրույցների, դասախոսությունների, զեկուցումների թեմաներ,
որոնցով մի շարք դեպքերում հանդես եկան քաղկոմի հանձնաժողովի ան-
դամները: Անցկացվեցին նաև պրոպագանդիստների մեթոդական պարապ-
մունքներ:
Կոմունիստական շինարարության արդի փուլում, որի համար բնորոշ են
գիտատեխնիկական առաջադիմության արագ տեմպերը, աշխատանքի բնույթի
և պայմանների մեջ կատարված խոր փոփոխությունները, մարդկային գիտե-
լիքների շեշտակի նորացումը, հատկապես կարևոր նշանակություն է ստանում
տնտեսագիտական կրթությունը: Դա մասսաների ստեղծագործական ակտիվու-
թյան հետագա զարգացման, արտադրության կառավարման գործում աշխա-
տավորների իրազեկության, նրանց շրջանում աշխատանքի նկատմամբ կոմու-
նիստական վերաբերմունքի ձևավորման, գաղափարական համոզվածության
բարձրացման առաջնահերթ աղբյուրներից մեկն է:
Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն 1971 թվականի վերջերին քըն-
նարկեց տնտեսագիտական կրթության դրվածքը բարելավելու հարցը և հաս-
տատեց մի շարք միջոցառումներ: Դրանցից մեկը հանրապետության բոլոր քա-
ղաքներում ու շրջաններում տնտեսագիտական ուսուցման հարցերին նվիր-
ված կուսակցական ակտիվի, պրոպագանդիստների և դասախոսների խոր-
հրդակցությունների անցկացումն էր: Խորհրդակցություններին մասնակցում

էին Կենտկոմի անդամներ, Կենտկոմի բաժնի վարիչներ, մինիստրներ, հանրապետական գերատեսչությունների ղեկավարներ և ուրիշներ:

Ձեռնարկված միջոցառումների շնորհիվ կուսակցական կոմիտեները և սկզբնական կազմակերպությունները սկսեցին ավելի կոնկրետ ղեկավարել աշխատավորների տնտեսագիտական կրթությունը, այն դիտելով որպես մասսաների ակտիվության բարձրացման կարևորագույն ուղղություն: Ամենուրեք վերանայվեցին տնտեսագիտական սեմինարների ու խմբակների ղեկավարների կազմերը, առաջադրվեցին մեծ թվով տնտեսագետ ինժեներներ, պլանավորողներ, տնտեսական պրակտիկայի քաջատեղյակ մարդիկ:

Այժմ ուսուցման տարբեր ձևերում տնտեսական գիտելիքներին տիրապետում են մոտավորապես 44 հազար կոմունիստներ և անկուսակցական ակտիվիստներ: Ստեղծվել են 53 ժողովրդական համալսարաններ և 181 լեկտորիումներ, արդյունաբերական խոշոր ձեռնարկություններում գործում են աշխատանքի առաջավոր մեթոդների տարածման դպրոցներ, որակավորման բարձրացման խմբակներ, առաջավոր փորձի դպրոցներ: Տարածվում են առաջատար գյուղատնտեսական մասնագիտությունների աշխատողների համար գյուղական կուլտուր-լուսավորական հիմնարկների կողմից կազմակերպվող խմբակները:

Այս ամենը լավ պտուղներ է տալիս. աճում է մասսաների աշխատանքային ակտիվությունը, ընդլայնվում է ռացիոնալիզատորների և գյուտարարների շարժումը: Այժմ հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում աշխատում են ավելի քան 16 հազար ռացիոնալիզատոր և գյուտարար: Անցած հնգամյակում նրանք մոտավորապես հարյուր հազար առաջարկություն արեցին, որոնց ներդրումից ստացված տնտեսական արդյունքը կազմեց ավելի քան հարյուր միլիոն ռուբլի:

Մասսայական տարածում են ստացել կոմունիստական աշխատանքի դպրոցները, ուր հաճախում են 43 հազար աշխատավորներ: Այդ դպրոցները ղեկավարում են փորձված ինժեներա-տեխնիկական աշխատողներ, տնտեսագետներ, վարպետներ, բրիգադիրներ, արտադրության նորարարներ, առաջավորներ, տնտեսավարներ, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական ակտիվիստներ: Նրանք բոլորն ունեն պրոֆեսիոնալ բարձր պատրաստություն, քաղ-դաստիարակչական աշխատանքի անհրաժեշտ հմտություններ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն քննարկեց կոմունիստական աշխատանքի դպրոցների ղեկավարման ուղղությամբ Իջևանի շրջանային կուսակցական կազմակերպության աշխատանքի փորձը: Նշվեց, որ կուսակցության շրջկոմը, շրջանի սկզբնական կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները շատ բան են արել, որպեսզի կոմունիստական աշխատանքի դպրոցների պարապմունքներում ունկնդիրների քաղաքական մտահորիզոնի ընդլայնումը զուգորդեն նրանց կողմից աշխատանքի առաջավոր մեթոդների յուրացման հետ, նրանց գիտակցության մեջ, վարքագծում նոր հասարակության մարդկանց բարոյական նորմերը հաստատելու հետ: Պարապմունքներում լայնորեն օգտագործվում են պրոպագանդայի տեխնիկական միջոցները, ունկնդիրների համար կազմակերպվում են էքսկուրսիաներ և այլն: Կոմունիստական աշխատանքի դպրոցների աշխատանքի հմուտ կազմակերպումը ամենից լավ դրսևորվում է անմիջական արտադրական արդյունքներով, նրանով, որ դպրոցների ունկնդիրները նկատելիորեն բարձրացրել են աշխատանքի արտադրողականությունը, արտադրանքի որակը:



Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի որոշումը ընդհանրացրեց Իջեվանի շրջանում կոմունիստական աշխատանքի դպրոցների կուսակցական ղեկավարման փորձը և կուսակցության բոլոր քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կազմակերպություններին հանձնարարեց օգտագործել այն: Դա ռեալ արտացոլում գտավ կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների պրակտիկայում:

Կոմունիստական աշխատանքի դպրոցների աշխատանքի հարցերը այժմ ավելի հաճախ են քննարկում քաղկոմները, շրջկոմները և սկզբնական կազմակերպությունները: Ակտիվացել է մեթոդական խորհուրդների և պրոպագանդիստների մշտապես գործող սեմինարների գործունեությունը: Կոմունիստական աշխատանքի լավագույն դպրոցների աշխատանքի փորձը ընդհանրացնում և տարածում են մամուլն ու ռադիոն: Նախատեսված է մատենաշար հրատարակել կոմունիստական աշխատանքի դպրոցների աշխատանքի մեթոդիկայի հարցերի վերաբերյալ:

Կոմունիստական աշխատանքի դպրոցները արդեն ամուր կերպով մտել են գաղափարական աշխատանքի սիստեմի մեջ. անշեղորեն աճում է նրանց դերը անհատի կոմունիստական համոզվածության դաստիարակման գործում:

Իհարկե, կոմունիստական աշխատանքի դպրոցներն իրենց ամբողջ նշանակալիությամբ հանդերձ, չի կարելի դիտել որպես աշխատավորների գաղափարական համոզվածության դաստիարակման համապարփակ ձև: Արտադրական կոլեկտիվների կյանքը չափից ավելի բազմաբովանդակ է: Եվ նրա վրա կուսակցական ներգործության ձևերը պետք է լինեն բացառիկ ճկուն, շարժուն:

Այս տարվա սկզբներին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն քննարկեց «ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների լույսի տակ սոցիալիստական կոլեկտիվիզմի և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման ուղղությամբ Հրազդանի շրջանի կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին» հարցը: Քննարկմանը նախորդեց շրջկոմի և սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մեթոդների ու ձևերի համգամանալի ուսումնասիրությունը: Կենտկոմի բրիգադի անդամները եղան բոլոր արդյունաբերական ձեռնարկություններում, շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների մեծ մասում, ծանոթացան կուսակցական ամենօրյա կյանքին, զրուցեցին կուսակցական, տնտեսական ղեկավարների, ակտիվիստների, բանվորների և կոլտնտեսականների հետ, սոցիոլոգիական հետազոտություններ կատարեցին աշխատանքի ավելի լավ կազմակերպման հարցերի շուրջը: Հարցման ենթարկված հազար մարդկանց մեծամասնությունն ընդգծում էր, որ արտադրության զարգացմանը, նյութական շահագրգռության բարձրացման միջոցների օգտագործման հետ միասին, հսկայական չափով նպաստում է աշխատանքի բարոյական խթանների լայն կիրառումը:

Ընդհանրացնելով մասսաներին սոցիալիստական կոլեկտիվիզմի և աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու ուղղությամբ Հրազդանի շրջանային կազմակերպության աշխատանքի փորձը, Կենտկոմի բյուրոն իր որոշման մեջ ուշադրություն նվիրեց նաև չլուծված խնդիրների վրա և մշակեց մի շարք հանձնարարականներ, որոնք ուղղված էին այդ աշխատանքն ավելի բարձրացնելու նպատակին՝ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների, կուսակցության այսօրվա պահանջների առումով:

Որոշման ընդունման օրվանից շատ ժամանակ չի անցել: Բայց այդ ժամանակամիջոցում կուսակցության շրջկոմն արդեն նշանակալի աշխատանք է կատարել դրա իրականացման ուղղությամբ: Նախ և առաջ, որոշումը համակողմանիորեն քննարկվեց շրջկոմի պլենումում, որտեղ գործուն միջոցներ նախատեսվեցին մասսաների դաստիարակության աշխատանքում եղած այն թերությունները վերացնելու ուղղությամբ, որոնք նշվել էին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի կողմից: Վերանայվեցին շրջկոմի և սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի հեռանկարային պլանները: Այդ պլաններում նախատեսվում են կոմպլեքս միջոցառումներ տեխնիկական պրոգրեսն արագացնելու, արտադրության մեջ գիտության նվաճումները լայնորեն արմատավորելու, նրա արդյունավետությունը ապահովելու, բանվորների և կոլտնտեսականների հանրակրթական մակարդակն ու պրոֆեսիոնալ որակավորումը բարձրացնելու, աշխատավորական կոլեկտիվների սոցիալական զարգացման ուղղությամբ:

Այդ միջոցառումներն իրականացնելիս հիմնական ուշադրությունը կենտրոնացվում է մարդկանց դաստիարակման գործում աշխատանքային կոլեկտիվների դերը բարձրացնելու, ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում ստեղծագործական մթնոլորտ ստեղծելու վրա: Շատ բան է արվում բարձրացնելու արտադրամասերի պետերի, ինժեներա-տեխնիկական աշխատողների, բրիգադիրների և վարպետների պատասխանատվությունը աշխատանքի և արտադրության հստակ կազմակերպման համար:

Հրապդանցիները հանրապետությունում առաջինը միահամուռ պաշտպանեցին երկրի առաջավոր կոլեկտիվների կոչը, որոնք սոցիալիստական բարձր պարտավորություններ են ստանձնել ի պատիվ ՍՍՀ Միության 50-ամյա հոբելյանի:

Ուսանելի է նաև Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի՝ հանրապետության խոշորագույն ձեռնարկություններից մեկի, կուսակցական կազմակերպության փորձը: Գործարանի կոլեկտիվն անցած հնգամյակում արտադրության ծավալն ընդլայնեց 45 տոկոսով, զգալիորեն բարելավելով արտադրանքի որակը: 1971 թվականին՝ նոր հնգամյակի առաջին տարում արտադրանքի իրացումը կրկին աճեց և նախորդ տարվա ցուցանիշները գերազանցեց 17,6 տոկոսով: Արտադրության աճը լրիվ ապահովվեց ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման:

Այս թվերի ետևում գործարանի կուսակցական կազմակերպության իսկական աշխատանքն է: Նրա գործունեության մեջ նախ և առաջ ուշադրություն է գրավում արտադրական սոցիալիստական դեմոկրատիայի հետևողական ընդլայնումը: Գործարանի բանվորների լայն կանգվածներն ամենաեռանդուն կերպով մասնակցում են արտադրության կառավարմանը՝ մշտապես գործող արտադրական խորհրդակցությունների, ժողովրդական վերահսկողության խմբերի ու պոստերի, արհմիությունների կանայան հանձնաժողովների և այլ օրգանների միջոցով:

Գործարանի կոլեկտիվի աշխատանքային և հասարակական ակտիվության բարձրացման կարևոր գործոնը բանվորների, ծառայողների, հանրակրթական և կուլտուր-տեխնիկական մակարդակի աճն է: Վերջին հինգ տարում էլեկտրամեքենաշինական գործարանի ավելի քան 7800 բանվորներ հարստացրել են իրենց պրոֆեսիոնալ-տեխնիկական գիտելիքները, մոտավորապես 850 մարդ



առանց արտադրությունից կտրվելու ավարտել են միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատություններ:

Գործարանի կուսկոմը և արտադրամասային կուսակցական կազմակերպությունները լայն հիմքերի վրա են դրել ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերի պրոպագանդան, այն սերտորեն շաղկապում են կոլեկտիվի կոնկրետ խնդիրների հետ, բանվորների և ծառայողների ջանքերը հմտորեն ի սպաս են դնում ներտնտեսական ռեզերվների որոնմանն ու օգտագործմանը, ձեռնարկության տեխնիկական վերազինմանը և նոր հնգամյակում թողարկվող արտադրանքի ասորտիմենտի լրիվ նորացմանը:

Աշխատանքային կոլեկտիվների արտադրական և հասարակական-քաղաքական ակտիվությունը բարձրացնելու, նրանց ուժերն ու եռանդը ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման համար մոբիլիզացնելու նպատակով, զգալի աշխատանք են կատարում նաև Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի, «Էլեկտրոն» գործարանի և այլ ձեռնարկությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունները:

Կոմունիստական դաստիարակության գործում մեծ է սոցիալիստական մրցության դերը: Այն իսկական ազդեցություն է գործում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք ձևավորելու, իսկական կոլեկտիվիզմ դաստիարակելու, մասսաների ստեղծագործական ակտիվությունը զարգացնելու վրա: Հանրապետությունում հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու շարժմանը ակտիվորեն մասնակցում է ավելի քան 600 հազար մարդ: Մոտավորապես 200 հազար աշխատավորներ պայքարում են կոմունիստական աշխատանքի հարվածայինի պատվավոր կոչման համար, ավելի քան 51 հազարին այդ կոչումն արդեն շնորհված է:

Մասսաների ստեղծագործական ակտիվության զարգացման, նրանց աշխատանքային խանդավառության բարձրացման վրա իսկական ազդեցություն գործեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշումը՝ «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին»: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը, կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական մարմինների ուշադրությունն ուղղեց սոցիալիստական մրցության մեթոդներն ու ձևերը է՛լ ավելի կատարելագործելու, նրա դեմոկրատական հիմունքները հետևողականորեն զարգացնելու, մրցության կազմակերպման ու ղեկավարման պրակտիկայից ձևամոլության տարրերն արմատախիլ անելու նպատակին: Հանձնարարվեց ուշադրություն դարձնել խրախուսական միջոցների սիստեմին, ամենից առաջ բարոյական խթանների զարգացմանը, որպեսզի լրիվ չափով օգտագործվի սոցիալիստական մըրցությունը մարդկանց կոմունիստական դաստիարակության ուժեղացման համար:

Հայաստանի կոմունիստական կուսակցության ուշադրության կենտրոնում են կոմերիտմիության գործունեության ակտիվացման, երիտասարդության գաղափարական դաստիարակության հարցերը: Հայաստանի կոմերիտմիությունը մեծ ուժ է: Նա իր շարքերում ունի ավելի քան 300 հազար պատանիներ և աղջիկներ, որոնք անձնվիրաբար աշխատում են ժողովրդական տնտեսության ամենատարբեր բնագավառներում, սովորում են, հարստացնում իրենց գիտելիքները, պատրաստվում են դառնալ ավագ սերնդի հեղափոխական, մարտական և աշխատանքային փառավոր ավանդույթների արժանի շարունակողները:

Դաստիարակել քաղաքական հասունություն, սովետական հայրենասիրության
և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վեհ զգացում, բոլոր ուժերը նոր
հնգամյա պլանի առաջադրանքների, ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական
որոշումների հաջող կատարմանը նվիրելու պատրաստակամություն՝ այսպիսի
նշանաբանով անցավ Հայաստանի ԼԿԵՄ համագումարը այս տարվա մարտին:

Պատանիների և աղջիկների քաղաքական աճին, նրանց աշխատանքային
ակտիվության բարձրացմանը մեծապես նպաստում է դեռևս Վ. Ի. Լենինի
ծննդյան 100-ամյակի նախապատրաստության շրջանում սկզբնավորված աշ-
խատանքի այնպիսի արդյունավետ ձև, ինչպիսին է լենինյան ստուգարքը:
1969 թվականի նոյեմբերին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, քննար-
կելով «Կոմերիտականների և երիտասարդության համամիութենական լենին-
յան ստուգարքի ընթացքի նկատմամբ Կիրովական քաղաքի կուսակցական
կազմակերպությունների ղեկավարության մասին» հարցը, նշեց մեծ առաջնոր-
դի տեսական ժառանգության ուսումնասիրման իսկայական նշանակությունը,
լենինյան ստուգարքի մեծ դերը պատանիների և աղջիկների աշխատանքային
ակտիվության բարձրացման և նրանց ստեղծագործական նախաձեռնության
կարգացման գործում, նախատեսեց մի շարք միջոցառումներ կոմերիտական-
ների և արտամիութենական երիտասարդության շրջանում քաղաքական-դաս-
տիարակչական աշխատանքը լայնորեն ծավալելու ուղղությամբ:

Առաջնորդվելով այդ որոշմամբ, քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական
կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները ակտիվացրին աշխա-
տանքը երիտասարդությանը Վ. Ի. Լենինի աշխատությունների, կուսակցական
կարևորագույն փաստաթղթերի ուսումնասիրմանը հաղորդակից դարձնելու,
նրան լենինիզմին հավատարմության ոգով, աշխատանքի նկատմամբ կոմու-
նիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու ուղղությամբ: Լենինյան
ստուգարքի ասպարեզում հանրապետության կոմերիտմիության աշխատանքի
փորձը բարձր գնահատվեց ՀամԼԿԵՄ Կենտկոմի բյուրոյի նիստում, 1969 թվա-
կանի նոյեմբերին, և հանձնարարվեց երկրի կոմերիտական կազմակերպու-
թյուններին:

Հայաստանի կոմերիտականներն ու երիտասարդությունը շատ անգամ են
աչքի ընկել իրենց հայրենասիրական նախաձեռնություններով: Այժմ նրանք
հանդես են գալիս որպես «Հնգամյակը չորս տարում» շարժման նախաձեռնող-
ներ: Այն սկսեց Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գոր-
ծարանի կոմերիտական-երիտասարդական բրիգադի բրիգադիր, սոցիալիստա-
կան աշխատանքի հերոս Ռ. Մովսիսյանը: Գյուղական երիտասարդությունը
ջերմորեն արձագանքեց Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան կոլտնտեսու-
թյան կոմերիտական-երիտասարդական օղակի օղակավարուհի, ՍՍՀ Միու-
թյան Գերագույն սովետի դեպուտատ Հ. Կարապետյանի կոչին՝ «1972 թվակա-
նը դարձնել բարձր բերքի տարի»: Էջմիածնի շրջանի կոմերիտականները մըր-
ցություն են սկսել «Անասնապահության մեքենայացումը կոմերիտական հար-
վածային տեղամաս է» նշանաբանով:

* * *

Կոմունիստական գաղափարախոսության ամենահատկանշական գծերից
մեկը կոլեկտիվիզմն է: Եվ այն դրսևորվում է ոչ միայն ձեռնարկության, շըր-
ջանի, հանրապետության շրջանակներում: Այն կայմում է սոցիալիզմի մեծա-
գույն նվաճման՝ մեր երկրի ժողովուրդների բարեկամության հիմքը, բարեկա-





Հայ ժողովուրդը մշտապես զգում է ռուս մեծ ժողովրդի, մեր երկրի բոլոր
մություն, որը ցեմենտվում է լենինյան գաղափարներին խոր նվիրվածությամբ:
ժողովուրդների եղբայրական օգնությունը: Երբ Սովետական Հայաստանում
ստեղծվեց առաջին խոշոր ձեռնարկությունը՝ Լենինականի տեքստիլ կոմբինա-
տը, Իվանովո-Վոզնեսենսկի բանվորները հանրապետությանը նվեր ուղարկե-
ցին հաստոցներ և ագրեգատներ: Եղբայրական ամենօրյա օգնության շնորհիվ
Հայաստանում բուռն տեմպերով կարգանում են էկոնոմիկան և կուլտուրան,
կառուցվում են ձեռնարկություններ, ստեղծվում գիտական կենտրոններ, նոր
քաղաքներ և ավաններ: Սովետական Հայաստանի նորակառույցներում, ար-
դյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզ-
ներում անձնվիրաբար աշխատում են շատ ազգությունների ներկայացուցիչներ:
Իր հերթին հայ ժողովուրդը փոքր ավանդ չի մուծում եղբայրական հանրապե-
տությունների արդյունաբերության ու գյուղատնտեսության կարգացման մեջ,
որոնք ստանում են Հայաստանում պատրաստված շարժական էլեկտրակայան-
ներ ու տրանսֆորմատորներ, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, կանական
սարքեր, քիմիական ապրանքներ և հաստոցներ, գունավոր մետաղներ, բու-
ժական պրեպարատներ, գինի, միրգ և ուրիշ շատ արտադրանք:

Սովետական հանրապետությունների եղբայրական փոխօգնության և ար-
տադրական կողման կոնկրետ օրինակներով ինտերնացիոնալիզմի և ժողո-
վուրդների բարեկամության գաղափարների պրոպագանդան այժմ առաջնա-
հերթ նշանակություն է ստանում: Այդ օրինակներով մեկանում դաստիարակ-
վում են բոլոր կոմունիստները, հանրապետության ամբողջ աշխատավոր բնակ-
չությունը:

Հայաստանի կուսակցական կազմակերպությունները կուտակել են պրոլե-
տարական ինտերնացիոնալիզմի հիմունքներով աշխատավորների դաստիա-
րակման աշխատանքի հարուստ փորձ: Մասսաների քաղաքական դաստիարա-
կության նոր գործուն ձև են դարձել ինտերնացիոնալ բարեկամության ակումբ-
ները: Երևան գալով մի քանի տարի առաջ, նրանք արագորեն մասսայակա-
նություն նվաճեցին, գործնականում արդարացնելով իրենց մեծ կոչումը:
Այժմ տարածում են ստանում ժողովուրդների բարեկամության ժողովրդական
համալսարանները:

Սովետական Հայաստանի աշխատավորները իսկայական հետաքրքրու-
թյամբ ու ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշումը
«Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավոր-
ման 50-ամյակի նախապատրաստության մասին», որը վառ կերպով բնութա-
գրում է Սովետական Միության ստեղծման ու կարգացման համաշխարհային
պատմական նշանակությունը, նրա նվաճումներն ու հաջողությունները, ազ-
գային հարցի մարքս-լենինյան ուսմունքի կենսահաստատ ուժը, լենինյան ազ-
գային քաղաքականության հաղթանակը:

Առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ, Հայաստանի կոմկուսի Կենտ-
կոմի բյուրոն քննարկեց սովետական բազմազգ ժողովրդի փառապանծ հո-
բելյանին համակողմանիորեն նախապատրաստվելու հարցը: Մշակված է գոր-
ծողությունների լայն ծրագիր, որն ուղղված է աշխատավորական կոլեկտիվ-
ներում կազմակերպչական և քաղաքական աշխատանքն ուժեղացնելու նպա-
տակին: Հանրապետության կուսակցական մարմինների ուշադրությունն է
հրավիրված ազգային հարցի վերաբերյալ մարքս-լենինյան տեսության սկզբ-

բունքների և ՍՄԿԿ-ի ծրագրային դրույթների պրոպագանդայի ծավալման հատուկ կարևորության վրա, լենինյան ազգային քաղաքականության ուժի և կենսականության աղբյուրների պարզաբանման, մեր երկրում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար ՍՍՀ Միության կազմավորման նշանակության վրա:

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները միջոցներ են ձեռնարկում ավելի ծավալելու մեր հանրապետության աշխատավորների սոցիալիստական մրցությունը եղբայրական մյուս սովետական հանրապետությունների աշխատանքային կոլեկտիվների հետ, ընդլայնելու Հայաստանի գրականության, կուլտուրայի և արվեստի աշխատողների անմիջական կոնտակտներն ու ստեղծարար համագործակցությունն իրենց կոլեգաների՝ մյուս սովետական ազգերի և ազգությունների ներկայացուցիչների հետ, խորացնելու և ամրապնդելու կոմերիտականների, երիտասարդական կազմակերպությունների ինտերնացիոնալ կապերը:

ՍՍՀՄ-ի կեսդարյա հոբելյանի նախապատրաստությունը հանրապետությունում անցնում է աշխատավորների արտադրական ակտիվության հետագա բարձրացման և նրանց ստեղծագործական նախաձեռնության զարգացման նշանաբանով, համաժողովրդական տոնը կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում, ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած պատմական խնդիրների լուծման գործում նոր նվաճումներով դիմավորելու նշանաբանով:

Գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում մեր կուսակցական կազմակերպությունների ավելի ու ավելի մեծ ուշադրությանն են արժանանում տեխնիկական մտավորականության, հանրապետության գիտական հասարակայնության հետ կատարվող կազմակերպական ու քաղաքական աշխատանքի հարցերը:

Հայտնի է, որ սոցիալիստական վերարտադրության տեմպերի խիստ արագացման հետ մեկտեղ, գիտատեխնիկական հեղափոխությունն արագորեն փոխում է նաև մեր արդյունաբերության որակական կառուցվածքը, առաջին պլան մղելով նրա առավել պրոգրեսիվ, ժամանակակից ճյուղերը: Խոսքը վերաբերում է այնպիսի ճյուղերին, ինչպիսիք են էլեկտրոնիկան և ռադիոտեխնիկան, էլեկտրոնային-հաշվողական, քվանտային տեխնիկան, ճշգրիտ սարքաշինությունը, ավտոմատացման և կապի միջոցների արտադրությունը, արդյունաբերական միկրոկենսաբանությունը: Նոր հնգամյակում այդ ճյուղերից մի քանիսն իրենց արտադրանքի թողարկումը կմեծացնեն երեք-չորս անգամ և ավելի: Դա առաջ է բերում մեր արդյունաբերության բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների որակական կազմի էական փոփոխություններ:

Այժմ Հայաստանի ձեռնարկություններում աշխատում են բարձրագույն և միջնակարգ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթություն ունեցող մոտավորապես 50 հազար մասնագետներ: Այդ միջավայրում կատարվող գաղափարական աշխատանքը, գիտության ու տեխնիկայի աշխատողների մեջ գաղափարական բարձր համոզվածության դաստիարակումը պահանջում է պրոպագանդիստների, դասախոսների, գաղափարական ճակատի աշխատողների կազմի հետագա որակական բարելավում, պրոպագանդայի հետագա կատարելագործում և նրա նոր, է՛լ ավելի արդյունավետ ձևերի ու մեթոդների որոնում, մեր էկոնոմիկայի ու տեխնիկայի անընդհատ առաջընթացի օրինաչափությունների, քաղաքական



ու տնտեսական խնդիրների, տեսության և պրակտիկայի փոխադարձ կապի խոր բացահայտման կարողություն:

Վերջին տարիներս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հանրապետության գիտությունների ակադեմիայի հետ միասին մի շարք միջոցառումներ ձեռնարկեց արտադրության հետ գիտության կապերն ամրապնդելու ուղղությամբ: Ամենից առաջ հարկ եղավ կազմակերպչական մեծ աշխատանք կատարել գիտական տարբեր օղակներում, հետազոտողների ուշադրությունը հրավիրել արդյունաբերության և գյուղատնտեսության հրատապ խնդիրների լուծման անհրաժեշտության վրա: Շատ բան արվեց նաև գիտական հիմնարկների կուսակցական կազմակերպությունների գաղափարական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը բարձրացնելու համար: Ներկայումս հանրապետության գիտնականների ջանքերն ուղղված են հնգամյա խնդիրների հաջող լուծման նպատակին: Նրանք մշակում են հանրային արտադրության ինտենսիվության և արդյունավետության բարձրացման հետ սերտորեն կապված 92 գիտատեխնիկական պրոբլեմներ:

Իրենց ամենօրյա աշխատանքում գիտական հիմնարկների կուսակցական կազմակերպությունները ելնում են այն բանից, որ գիտատեխնիկական հեղափոխության դարում կարևորագույն պրոբլեմների մշակումը պահանջում է մեծ կոլեկտիվների նպատակասլաց ջանքերը, յուրաքանչյուր աշխատողի ստեղծագործական վերաբերմունքը գործի նկատմամբ: Այդ առումով հաջողությամբ է գործում Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի կուսակցական կազմակերպությունը: Նրա ծառայությունը պակաս չէ այն բանում, որ ինստիտուտը ստեղծեց «Հրազդան—2» ունիվերսալ էլեկտրոնային հաշվիչ մեքենաները, որոնք լայն ճանաչում են ստացել և արժանացել ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի ոսկե մեդալին, և «Նաիրի» մեքենան, որի համար ինստիտուտի մի խումբ կոնստրուկտորների և ինժեներների շնորհվեց ՍՍՀՄ 1971 թվականի պետական մրցանակ:

Հայտնի է, թե աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց գաղափարական համոզվածության բարձրացման գործում ինչպիսի կարևոր դեր են խաղում գրականությունը և արվեստը: Գրականության և արվեստի գործիչների, կուլտուրայի աշխատողների ստեղծագործության մեջ հուսալի կողմնորոշիչի կորուստը, գաղափարական խեղումները կարող են չափազանց անցանկալի հետևանքների հասցնել: Ուստի մենք ձգտում ենք, որ ստեղծագործական աշխատողները խոր կերպով ուսումնասիրեն մարքս-լենինյան տեսությունը, կարողանան նրա լույսի տակ ճիշտ գնահատել իրականության երևույթները: Դա մասնավորապես Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի կողմից ընդգծվեց 1971 թվականին կայացած գրողների հանրապետական համագումարում:

Վերջին տարիներին հայ գրողներն սկսել են ավելի հաճախ գրել ժամանակակից թեմաներով, գեղարվեստական բարձր մակարդակով արտացոլել կոմունիստական շինարարության, նոր կյանք կերտող մարդու ձևավորման պրոցեսը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և կուսակցության քաղաքային կոմիտեների նախաձեռնությամբ սիստեմատիկաբար սեմինար պարապմունքներ են անցկացվում գրականության և արվեստի աշխատողների համար: Այստեղ նրանք ծանոթանում են երկրի էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի կար-

գացման հեռանկարներին, հանրապետության լավագույն արտադրական կոլեկտիվների գործունեությանը: Այդ պարապմունքներում դասախոսություններով ու վեկուցումներով հանդես են գալիս կուսակցական և սովետական ղեկավար աշխատողներ, տնտեսագետներ, արտադրության աշխատողներ: Սեմինարների մասնակիցները այցելում են արտադրական ձեռնարկություններ, գիտական կազմակերպություններ, կարևորագույն կառույցները, կոլտնտեսություններ և սովխոզներ: Այս ամենն օգնում է ստեղծագործական աշխատողներին ընդլայնելու մտահորիզոնը, ավելի լավ ծանոթանալու նյութական արտադրության ոլորտին:

Հանրապետության ստեղծագործական միությունները վերանայել են իրենց աշխատանքի պլանները, առաջնորդվելով «Գրական-գեղարվեստական քննադատության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ, որում խնդիր է դրվում խորապես վերլուծել արդի գեղարվեստական պրոցեսի երևույթները, տենդենցներն ու օրինաչափությունները, ըստ ամենայնի նպաստել կուսակցականության և ժողովրդայնության լենինյան սկզբունքների ամրապնդմանը, պայքարել սովետական արվեստի գաղափարա-գեղարվեստական բարձր մակարդակի համար:

Լուծելով այդ խնդիրը, հանրապետության կուսակցական կազմակերպությունը սուր կերպով է արձագանքում կոմունիստական գաղափարախոսությանը խորթ, սխալ կոնցեպցիաների ամեն տեսակ դրսևորումներին, այն փորձերին, որոնց նպատակն է նենգափոխել այս կամ այն իրադարձության, անհատի գնահատման հարցում ցուցաբերվող խիստ դասակարգային, կուսակցական մոտեցումը:

Գրականության և արվեստի աշխատողների՝ պատմական անցյալին անդրադառնալն առաջին հերթին պետք է գեղարվեստական բարձր մակարդակով բացահայտի սոցիալական առաջադիմության իսկական կերտողի՝ ժողովրդի հերոսական ավանդույթները: Սակայն դեռևս նկատվում են դեպքեր, երբ առանձին գրողներ, ձեռնարկելով շնորհակալ թեմայի, այնուամենայնիվ, ստեղծում են այնպիսի գործեր, որոնք ամբողջովին խեղաթյուրում են պատմական պրոցեսի դասակարգային էությունը:

Վերջերս, օրինակ, լույս տեսավ Մ. Զեյթաղյանի *Տունը Կիլիկիո* գիրքը, որի հեղինակը փորձում է վերարտադրել Կիլիկյան Հայաստանի 12—13-րդ դարերի պատմական իրադարձությունները:

Ջանադիր աշխատանք չկատարելով նկարագրվող դարաշրջանի և նրա սոցիալ-տնտեսական հարաբերությունների ուսումնասիրման նպատակով, Մ. Զեյթաղյանը ընկել է խոր մոլորության մեջ, որը վերջին հաշվով նրան հասցրել է հակագիտական սկզբունքի գովերգման, ազգային սնապարծության:

Գրքի լույս ընծայումը, իհարկե, առաջ բերեց հանրապետության գրական հասարակայնության, ընթերցողների վրդովմունքը: Ճիշտ վարվեց «Գարուն» ամսագրի խմբագրությունը, իր էջերում տպագրելով Ա. Միքայելյանի գրախոսությունը, որի մեջ խիստ քննադատության ենթարկվեց այդ «պատմական» վեպի հեղինակի մարքս-լենինյան մեթոդաբանությանը խորթ կոնցեպցիան:

Կուսակցական կազմակերպությունները վգայուն կերպով արձագանքում են մարքս-լենինյան տեսության այս կամ այն դրույթի սխալ մեկնաբանությունների յուրաքանչյուր դրսևորմանը: Այդպիսի մեկնաբանություններ երբեմն դեռ հանդիպում են Հայաստանում հրատարակվող որոշ աշխատու-



թյուններում: Դրանք վճռական հակահարված են ստանում, ձեռնարկվում են
նման երևույթները կանխող միջոցներ:

Մեր մարդկանց հայրենասիրական գործերը օրինական հպարտություն
են առաջացնում: Դրա հետ մեկտեղ մենք չեն կարող չնշել, որ երբեմն քաղ-
քենիական, արհամարհական վերաբերմունք է ցուցաբերվում հանրօգուտ աշ-
խատանքի նկատմամբ: Դեռևս արմատախիլ չեն արվել սոցիալիստական սե-
փականության հափշտակման, աչքակապության, պաշտոնական դիրքի չարա-
շահման, կճացածության փաստերը և մեր գաղափարախոսության ոգուն, մեր
սովետական իրականությանը խորթ այլ հակահասարակական երևույթներ:

Մեր կուսակցական կազմակերպությունները դեռևս ակամա բախվում են
լուրջ սխալների և նույնիսկ հանցագործությունների համար կուսակցության
շարքերից կոմունիստների վտարելու անխուսափելիության հետ: Մեր առաջըն-
թացին խանգարող ամեն ինչի դեմ հետևողական, անվիչում պայքարը մեր
կուսակցական կազմակերպությունների աշխատանքի կարևոր բնագավառն է:

Կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում սովետական
ժողովրդի ձեռք բերած նվաճումները ավելի են գազազեցնում մեր թշնամինե-
րին: Իր հակասովետական գործունեության մեջ բուրժուական աշխարհի գա-
ղափարական ապարատն այժմ դիմում է ամենանրբին դեմագոգիայի, պրո-
պագանդայի ամենախորամանկ ձևերի ու մեթոդների: Բուրժուական գաղա-
փարախոսության դեմ, մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկների
դեմ մղվող պայքարը կուսակցության, նրա սկզբնական կազմակերպություն-
ների գաղափարական աշխատանքի հույժ կարևոր բնագավառն է: Աշխատա-
վորներին դաստիարակելով գաղափարական բարձր համոզվածության և քա-
ղաքական տոկունության ոգով, մենք ոչ մի րոպե չենք մոռանում բուրժուա-
կան պրոպագանդայի դեմ մղվող մարտական, նպատակասլաց պայքարի
մասին:

Հայաստանի կուսակցական կազմակերպությունները այդ աշխատանքում
քիչ փորձ չեն կուտակել: Ռադիոյի, հեռուստատեսության և կինոյի միջոցնե-
րով, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պարբերական մամուլի էջերում կուսակ-
ցության քաղաքային և շրջանային կոմիտեները ակտիվ, հարձակողական հա-
կապրոպագանդա են մղում ընդդեմ ռեակցիոն գաղափարախոսության, շովի-
նիզմի և բուրժուական նացիոնալիզմի տարբեր դրսևորումների, հակամարք-
սիզմի բոլոր տարատեսակների դեմ: Հայերեն, ռուսերեն, ադրբեջաներեն և
քրդերեն լեզուներով տրվող կանոնավոր ռադիո-հեռուստատեսային հաղոր-
դումներ, գրքեր, գրքույկներ և լրագրային հրապարակումներ են նվիրվում
ժամանակակից բուրժուական փիլիսոփայական, տնտեսագիտական և բարոյա-
գիտական տեսությունների մարքսիստական քննադատությանը: ՍՄԿԿ XXIV
համագումարի որոշումների լույսի տակ քննարկելով գաղափարական աշխա-
տանքի խնդիրները, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն մշտապես ուշա-
դրություն է նվիրում բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայ-
քարի, մասսայական ինֆորմացիայի միջոցները քաղաքական հակապրոպա-
գանդայի ուժեղացման համար առավել արդյունավետ օգտագործելու հար-
ցերին:

«...Սովետական Հայաստանի ժողովրդի բնորոշ առանձնահատկությունն
այն է,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— որ նա իր հայրենի հողը՝ Սովետական

Սոցիալիստական Հայաստանը, ջերմորեն սիրող հայրենասերների ժողովուրդ է… Իրենց հանրապետության նկատմամբ հայրենասիրական բարձր ոգին հայերի, ինչպես և սովետական մյուս բոլոր ժողովուրդների մեջ, կուգորդվում է առավել լայն առումով հայրենասիրական ոգու հետ՝ մեր ընդհանուր մեծ սոցիալիստական հայրենիքի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության նկատմամբ նվիրվածության ու սիրո հետ։

…Սովետական Հայաստանի ժողովուրդը՝ կոմունիստներն ու անկուսակցականները, բանվորները, գյուղացիները և մտավորականությունը, հայրենասիրության ոգին հիանալի կերպով կուգորդում են մի այլ, ոչ պակաս արժեքավոր հատկության՝ ինտերնացիոնալիզմի հետ»[1]։

Հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի այս խոսքերն ընդունեցին ոչ միայն որպես Հայաստանի կոմկուսի ամբողջ գաղափարական ու դաստիարակչական գործունեության բարձր գնահատական, այլև որպես մարդկանց կոմունիստական դաստիարակության հետագա բարելավման ուղղությամբ կուսակցության կողմից առաջադրված կենսական խնդիր։

* * *

Զինված ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումներով, Հայաստանի աշխատավորները հաջողությամբ կատարում են հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի խնդիրները։ Այդ համաժողովրդական պայքարի ավանգարդում ընթանում են կոմունիստները։ Իրենց անձնական օրինակով, աշխատանքային խանդավառությամբ, բոլշևիկյան կրքոտ խոսքով և կոնկրետ գործերով նրանք ժողովրդական մասսաներին վստահություն են ներշնչում կուսակցության պլանների հաջող իրականացման նկատմամբ, նրանց աշխատանքային նոր մեծագործությունների մոբիլիզացնում՝ ի փառս մեր սոցիալիստական հայրենիքի։

[1] Լ. Ի. Բրեժնև, *Սովետական Հայաստանի 50 տարին, «Հայաստան» հրատ., 1970 թ., էջ 63—64։*

«ВОПРОСЫ ИСТОРИИ КПСС», 1972, № 8.



Ս. Կ. ՊԱՊՅԱՆ

# ՍՄԿԿ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ԿՈՒՐՍԸ

**ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԾՐԱԳԻՐՆ ԻՐԱԿԱՆԱՑՎՈՒՄ Է։ ՍՄԿԿ ՓՈՐՁԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ։ ԳՈՅԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԿԵՆՍԱԿԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅՈՒՆ Է։ ԼԵՆԻՆՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿԸ։ ԵՎՐՈՊԱՅԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԳԼԽԱՎՈՐ ԽՆԴԻՐԸ։ ՍՈՎԵՏԱ-ՎԻԵՏՆԱՄԱԿԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆՆ ԱՆԽԱԽՏ Է։ ՄԵՐ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ՊԱՐՏՔԸ։**

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ կոմունիստական կուսակցությունը, սովետական պետությունը հետևողականորեն վարում են արտաքին քաղաքականության բնագավառում ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից մշակված լենինյան կուրսը։ «Մենք հայտարարում ենք,— ընդգծում էր Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— որ հետևողականորեն վարելով խաղաղության և ժողովուրդների բարեկամության քաղաքականություն, Սովետական Միությունն այսուհետև ևս վճռական պայքար կմղի իմպերիալիզմի դեմ, ուժգին հակահարված կհասցնի ագրեսորների մեքենայություններին և դիվերսիաներին»։*

*Մեր ժողովրդի խաղաղ կյանքը, որ ապահովված է կուսակցության հմուտ ղեկավարությամբ, հիմնովին տարբերվում է իմպերիալիստական տերություններում գոյություն ունեցող իրավիճակից։*

*Խաղաղություն ապահովելու համար, պարզ է, բավական չէ ձգտել միայն խաղաղության և վարել հմուտ արտաքին քաղաքականություն։ Դրա համար անհրաժեշտ են առաջադեմ բոլոր ուժերի հզորության անընդհատ աճն ու կատարելագործումը։ Սովետական Միության տնտեսական և քաղաքական հզորությունը, էկոնոմիկայի ու մշակույթի ասպարեզում ձեռք բերած վիթխարի նվաճումները նպաստում են խաղաղության պահպանմանը, ՍՍՀՄ-ի և սոցիալիստական երկրների ամբողջ համագործակցության դիրքերի հետագա ամրապնդմանը։ Իմպերիալիստները լավ են հասկանում միջազգային պրոլետարական համերաշխության ամբողջ ուժը։ Հենց դրա համար էլ սոցիալիզմի դեմ,*

հեղափոխական շարժման դեմ մղվող պայքարում նրանք հույսը դնում են նացիոնալիզմի վրա, ձգտելով այդ ճանապարհով տարանջատել, մասնատել կոմունիստական շարժումը, հեղափոխական հիմնական ջոկատները հակադրել միմյանց։

ՍՄԿԿ-ն և մարքսիստական-լենինյան մյուս կուսակցություններն ամբողջ աշխարհին հայտարարում են. այսօր կայուն խաղաղությունը ուտոպիա չէ, դա միանգամայն հասանելի նպատակ է։ Այժմ երկրագնդի վրա գոյություն ունեն հասարակական ու քաղաքական հզոր ուժեր, որոնք հանդես են գալիս ընդդեմ պատերազմի, հանուն լարվածության թուլացման և միջազգային լայն համագործակցության։

ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խաղաղության և ժողովուրդների անվտանգության պատմական ծրագիրն այժմ գործողության մեջ է։ Վերջին ժամանակաշրջանում աշխարհը վկա դարձավ դիվանագիտական այն մեծ իրադարձություններին, որ կատարվեցին Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների նախաձեռնությամբ։ Ամբողջ աշխարհում մեծ արձագանք գտավ սոցիալիստական մի շարք երկրների ղեկավարների հանդիպումը Ղրիմում։ Խաղաղասիրական սովետա-եգիպտական, սովետա-հնդկական, սովետա-բանգլադեշական պայմանագրերը, Սովետական Միության նախաձեռնությամբ սկսած Արևմտյան Բեռլինի հարցերի շուրջը բանակցությունների հաջող ավարտումն ու քառակողմանի համաձայնագրի ստորագրումը և վավերացումը մեծ ավանդ են խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման գործում։ Այդ ակցիաները վկայում են, որ սոցիալիստական պետությունների համագործակցությունը ժողովուրդների հուսալի պատվարն է իմպերիալիզմի դեմ։ Սոցիալիստական երկրների միասնության հետագա ամրապնդման գործում ծանրակշիռ ավանդ եղան ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի բարեկամական այցելությունները Հարավսլավիայի Սոցիալիստական Ֆեդերատիվ Հանրապետություն, Հունգարական Ժողովրդական Հանրապետություն, Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետություն և Գերմանական Դեմոկրատական Հանրապետություն։ Այդ ժամանակ տեղի ունեցած բանակցությունները կարևոր քայլ էին եղբայրական կուսակցությունների ու երկրների արտաքին քաղաքական գործունեության, նրանց լայն ու բազմակողմանի համագործակցության, ավելի ու ավելի սերտ կապերի պահպանման համար։

Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խաղաղության ծրագիրը, Սովետական Միության աջակցությամբ Միավորված ազգերի կազմակերպության գլխավոր ասամբլեայի 26-րդ նստաշրջանը քննարկեց զինաթափման համաշխարհային կոնֆերանսի հրավիրման հարցը՝ որպես ներկա էտապում ամենահրատապ և ժողովուրդների կենսական շահերից բխող հարց։ Սովետական կուսակցական-կառավարական պատվիրակության այցը Վիետնամի Դեմոկրատական Հանրապետություն՝ ընկ. Ն. Վ. Պոդգոռնու գլխավորությամբ, ընկ. Ա. Ն. Կոսիգինի պաշտոնական այցը Ալժիր և Մարոկկո, վերջին շրջանում Մոսկվայում Հարավսլավիայի Ֆեդերատիվ Հանրապետության պրեզիդենտ Իոսիֆ Բրոզ Տիտոյի, Կուբայի պրեմիեր-մինիստր Ֆիդել Կաստրոյի, Հնդկաստանի Հանրապետության պրեմիեր-մինիստր Ինդիրա Գանդիի, ԳՖՀ-ի կանցլեր Վ. Բրանդտի, Եմենի Ժողովրդական Դեմոկրատական Հանրապետության պատվիրակության՝ Ալի Նասեր Մուհամեդի գլխավորու-



թյամբ, Եգիպտոսի Արաբական Հանրապետության պրեզիդենտ Անվար Սադաթի, Բանգլադեշի պրեմիեր-մինիստր Մուջիբուր Ռահմանի, Պակիստանի պրեզիդենտ Բհուտտոյի և այլ երկրների ներկայացուցիչների հետ ունեցած հանդիպումները, հրապարակած փաստաթղթերը վկայում են, որ Սովետական Միությունը մեծ ջանքեր է գործադրում ժողովուրդների միջև բարեկամության և համագործակցության զարգացման համար։

Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս պետությունները զարգացող երկրների հուսալի բարեկամներն են իմպերիալիզմի դեմ մղվող նրանց պայքարում։ Լենինյան արտաքին քաղաքականության սկզբունքներին համապատասխան՝ ՍՄԿԿ XXIV համագումարն ընդգծեց, որ միջազգային ասպարեզում ՍՍՀՄ-ի կարևորագույն խնդիրներից մեկն է խորացնել և ընդլայնել բարեկամական հարաբերություններն ու արդյունավետ համագործակցությունը զարգացող երկրների հետ։ Տարբեր սիստեմներին պատկանող պետությունների միջև խաղաղ գոյակցության և բարեկամության փայլուն օրինակ են հանդիսանում սովետա-ֆրանսիական հարաբերությունները, որոնց հետագա ամրապնդմանը նպաստեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի բարեկամական այցը Ֆրանսիա։ Սովետա-ֆրանսիական համագործակցությունը վերաբերող նոր փաստաթղթերի ստորագրումը կարևոր իրադարձություն հանդիսացավ ամբողջ միջազգային կյանքում։

ՄԵՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ և սովետական ժողովուրդը գտնվում են պատմական մեծ իրադարձության՝ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախօրյակին։ Ամենուրեք տիրում է ստեղծարար աշխատանքի խանդավառ մթնոլորտ։ Ամբողջ մարդկությունը մեծ ուշադրությամբ և հետաքրքրությամբ հետևում է մեր երկրի կյանքին։ Իր գոյության մոտ 70 տարում ՍՄԿԿ-ն կուտակել է մեծ և բազմակողմանի փորձ հասարակական-քաղաքական և տնտեսական կյանքի բոլոր բնագավառներում։ Այժմ, մասսաների պատմական ստեղծագործության մասշտաբների ընդլայնման կապակցությամբ այդ փորձը հսկայական նշանակություն է ստանում։

Արդի պայմաններում կարևորագույն նշանակություն ունեն միջազգային հարաբերությունների բնագավառում մեր կուսակցության կուտակած փորձի ուսումնասիրությունը և օգտագործումը։ Կոմունիստական կուսակցության և սովետական պետության պատմությունը տալիս է արտաքին քաղաքականության մեջ ճկուն տակտիկան բոլշևիկյան խորագույն սկզբունքայնության հետ զուգակցելու լենինյան կիրառման հոյակապ օրինակներ։ Լենինյան սկզբունքներին հավատարիմ լինելու նոր, վառ ապացույց է հանդիսանում ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից ընդունված խաղաղության ծրագիրը, որի հետևողական իրականացումն արժանանում է ամբողջ առաջադեմ մարդկության համակրանքին։

ՍՄԿԿ-ն միշտ իր պարտքն է համարել և համարում է ակտիվորեն պայքարել սոցիալիստական երկրների ամրապնդման համար մարքսիզմ-լենինիզմի ճշմարիտ սկզբունքների վրա։ Ոչ ոքի չպարտադրելով սոցիալիզմի կառուցման իր երկարամյա կուտակած փորձը, մեր կուսակցությունը սիրահոժար այն հաղորդում է միջազգային կոմունիստական և բանվորական շարժման մյուս ջոկատներին։ ՍՄԿԿ XXIV համագումարի փաստաթղթերում նորից հատուկ ուժով ընդգծվեց, որ ինտերնացիոնալ պարտավորությունների կատա-

րումը եղել է և մնում է ՍՄԿԿ արտաքին քաղաքականության անխախտ սկզբունքը:

ՄԱՐԴԿՈՒԹՅՈՒՆԸ դարեր շարունակ նզովել է պատերազմները, որոնք առաջացրել են սոսկալի ավերածություններ: Իմպերիալիզմը պատերազմները հասցրեց նախկինում չտեսնված չափերի: Նրա ժամանակաշրջանում պատերազմի հարցը դարձավ աշխարհի բոլոր երկրների ամբողջ քաղաքականության անկյունաքարը, հարյուրավոր միլիոն մարդկանց կենաց ու մահու հարցը:

Խաղաղության պահպանման և ամրապնդման համար պայքարը դարձել է բոլոր խաղաղասեր ժողովուրդների առաջնահերթ գործը և վեր է ածվել մասսայական շարժման, որն ընդգրկել է բոլոր երկրների մարդկանց, անկախ նրանց ռասայական պատկանելությունից, քաղաքական համոզմունքներից, կրոնական հայացքներից: Նույնիսկ նրանք, ովքեր վերջերս գտնվում էին այն հայացքի ազդեցության տակ, թե իբր գոյակցության առաջարկությունը սոսկ Սովետական Միության «պրոպագանդիստական պրիոմ է», այժմ ընկալում են այդ առաջարկությունը, խորամուխ լինում դրա էության մեջ և ջանում կիրառել այն: Պատմությունը լիովին հերքում է այն կեղծ պնդումը, որ Սովետական Միությունը իբր թե չի ցանկանում հաստատել տարբեր սոցիալական սիստեմներ ունեցող երկրների միջև խաղաղ համագործակցություն:

Արևմուտքի շատ քաղաքական գործիչներ և գործարար շրջանների ներկայացուցիչներ ստիպված են վերանայելու իրենց հայացքները երկու սիստեմների խաղաղ գոյակցության պրոբլեմի նկատմամբ: Դրան որոշակիորեն նպաստում են միջազգային ասպարեզում ուժերի ռեալ հարաբերակցությունը, տնտեսական անմիջական կապերը:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆ ամբողջ կապիտալիստական աշխարհին հայտարարում է. եկեք լիովին զինաթափվենք, ոչնչացնենք բոլոր տեսակի զենքերը և չարտադրենք նորերը, մարդկանց չզբաղեցնենք զինվորական ծառայությամբ և չկատարենք հսկայական պատերազմական ծախսեր: Այդ միջոցները օգտագործենք առավել նպատակահարմար: Սովետական Միությունը միշտ էլ պաշտպանել է բոլոր երկրների միջև լայն տնտեսական կապերի հաստատման անհրաժեշտությունը: Ի հակակշիռ Հյուսիս-ատլանտյան բլոկի «Եկեք զինվենք» կոչի, Սովետական Միությունն առաջ է քաշում «Եկեք առևտուր անենք» կոչը: Այժմ մեր երկիրն առևտուր է անում ավելի քան 120 օտարերկրյա պետությունների հետ, տարեցտարի ավելացնելով իր արտաքին առևտրի ապրանքաշրջանառությունը: Մեր արտաքին առևտրի շրջանառությունը 1971 թ. կազմեց համարյա 24 միլիարդ ռուբլի (համաշխարհային գներով): Մեծ նշանակություն ունեն տարբեր սիստեմներին պատկանող երկրների պետական գործիչների հանդիպումները: Վերջին ժամանակվա փորձն ամբողջովին հաստատեց, որ պետական գործիչների անձնական շփումն ու կապերն առավել գործուն և խոստումնալի մեթոդ են հանդիսանում պետությունների միջև հարաբերությունները բարելավելու և միջազգային չկարգավորված հարցերը լուծելու համար: Այդ տեսակետից առանձնահատուկ նշանակություն ունեն ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռիչարդ Նիքսոնի Սովետական Միություն կատարած այցը և նրա բանակցությունները սովետական ղեկավարների հետ, որոնք տեղի ունեցան 1972 թվականի մայիսի 22-ից մինչև 30-ը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահու-



թյունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը քննության առան ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի հաղորդումը սովետա-ամերիկյան բարձր մակարդակի բանակցությունների արդյունքների մասին, ամբողջովին հավանություն տվին բանակցություններում Սովետական Միության պատվիրակության կատարած մեծ աշխատանքին: Մոսկվայում ընդունված «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների փոխհարաբերությունների հիմունքները» փաստաթուղթը միջազգային իրավական նախադրյալներ է ստեղծում այն բանի համար, որ փոխադարձ հետաքրքրություն ներկայացնող բոլոր բնագավառներում նրանց կապերն ու համագործակցությունը կառուցվեն կայուն, տևական հիմքի վրա, որևէ վնաս չպատճառելով երրորդ երկրներին:

ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև հակահրթիռային պաշտպանության սիստեմները
սահմանափակելու մասին պայմանագրի և ստրատեգիական հարձակողական
սպառազինությունները սահմանափակելու որոշ միջոցառումների մասին ժա-
մանակավոր համաձայնագրի կնքումը կարևորագույն միջոցառում է, որը
նպաստում է միջուկային պատերազմի սպառնալիքի թուլացմանը, սպառազի-
նությունների մրցավազքի զսպմանը և հեռանկար է բացում ընդհանուր զի-
նաթափման ուղիով առաջ գնալու համար: Այդ միջոցառումը համապատաս-
խանում է սովետական ու ամերիկյան ժողովուրդների և ամբողջ մարդկության
շահերին: Շրջապատող միջավայրի պահպանման, առողջապահության, տիե-
զերքի բնագավառում, գիտության ու տեխնիկայի տարբեր ճյուղերում հա-
մագործակցելու մասին սովետա-ամերիկյան համաձայնագրերը և մի շարք
այլ համաձայնագրեր համապատասխանում են ինչպես երկու պետություննե-
րի շահերին, այնպես էլ մարդկանց ամենաանմիջական կենսական պահանջ-
մունքներին, լիովին ծառայում են խաղաղ նպատակներին: Սովետական Միու-
թյունը հանդես է գալիս ԱՄՆ-ի հետ առևտրական, տնտեսական լայն կապերի
զարգացման օգտին, այն կարծիքին լինելով, որ այդ բնագավառում նույնպես
կարելի է գտնել փոխշահավետ լուծումներ: Սովետա-ամերիկյան բանակցու-
թյունների արդյունքները մեկ անգամ ևս ցույց տվեցին, որ արդի պայմաննե-
րում միջազգային վիճելի հարցերը չեն կարող լուծվել «ուժի դիրքից» վարվող
քաղաքականության մեթոդներով:

Խաղաղ գոյակցության համար կարևոր նշանակություն ունի միջազգային
գիտատեխնիկական, կուլտուրական և սպորտային կապերի զարգացումը:
Միայն ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրության գծով 1971 թ. Սովետական Միու-
թյուն են այցելել արտասահմանյան երկրների մոտ 15 հազար ներկայացու-
ցիչներ: Այդ նույն ժամանակ սովետական կուլտուրայի և արվեստի ավելի
քան 16 հազար ներկայացուցիչներ եղել են 120 երկրներում: Հետզհետե ավելի
են ամրապնդվում սովետական սպորտսմենների միջազգային կապերը: 1971
թվականին ավելի հաճախակի են դարձել հանդիպումները գիտության, կուլ-
տուրայի, սպորտի ասպարեզներում մեր հայրենիքի և արտասահմանյան եր-
կրների միջև: Հենց դրան են ուղղված հայտնի համաձայնագրերը Սովետա-
կան Միության և ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի, ԳՖՀ-ի, Ճապո-
նիայի, Կանադայի, Հնդկաստանի, Ֆինլանդիայի, Եգիպտոսի Արաբական
Հանրապետության և այլ բազմաթիվ երկրների միջև: Լուրջ նշանակություն
ունի նաև միջազգային տուրիզմը, որը տարեցտարի զարգանում է, դառնալով

ժողովուրդների համագործակցության ակտիվ հնարավորություններից մեկը։

Ընթանալով Լենինի ուղիով, Սովետական Միությունը դարձել է բոլոր ժողովուրդների անկախության կայուն և հուսալի հենարանը։ Նա սոցիալիստական պետություններին օգնում է պաշտպանելու իրենց ազատությունը և աշխատավորների դեմոկրատական նվաճումներն ագրեսորների ոտնձգություններից։ Մեր երկիրը տնտեսական, դիվանագիտական, բարոյական և այլ տեսակի անշահախնդիր օգնություն է ցույց տալիս հերոսական Վիետնամին, ինչպես նաև գաղութային կախվածությունից վերջերս ազատագրված մյուս ժողովուրդներին։ Ինչպես ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականության բնագավառում Սովետական Միությունը հետևում է բոլոր ազգերի իրավահավասարության և ինքնորոշման իրավունքի հարգման լենինյան գաղափարներին։

ԵՎՐՈՊԱՅԻ ՄԱՅՐՑԱՄԱՔԸ վերջին ժամանակներում ռազմական ճգնաժամերի անմիջական օջախ չի հանդիսանում։ Միջազգային իրադրությունը մեր օրերին թունավորում են ամենից առաջ այն կոնֆլիկտները, որոնք բռնկվել են Եվրոպայից դուրս՝ ԱՄՆ-ի պատերազմը Հարավ-Արևելյան Ասիայում, Իսրայելի ագրեսիան Մերձավոր Արևելքում։ Խաղաղության առկայությունը Եվրոպայում մայրցամաքի խաղաղասեր ուժերի անվիճելի ծառայությունն է, դա արդյունք է Սովետական Միության և սոցիալիստական մյուս պետությունների կողմից՝ հանուն խաղաղության և անվտանգության մղվող պայքարի։ Կոմունիստական և բանվորական կուսակցությունների ղեկավարությամբ խաղաղության պաշտպանության օգտին ակտիվորեն հանդես են գալիս Եվրոպայի բանվոր դասակարգը, ինչպես նաև դեմոկրատական, առաջադիմական մյուս ուժերը։ Սակայն մեծ սխալ ու մոլորություն կլիներ, եթե մենք համարեինք, որ Եվրոպան երկրագնդի վրա մի ինչ-որ անդորրության և հանգստի կղզի է, որտեղ բացակայում են սուր կոնֆլիկտները և լարվածությունը։ Եվրոպայի մայրցամաքում դեռևս կան ոչ քիչ ուժեր, որոնք խոչընդոտում են լարվածության մեղմացմանը։ Եվ վերջնականապես չի էլ հանգել այդ լարվածության օջախը։ Չի կարելի մոռանալ, որ Եվրոպան իրենից ներկայացնում է մի կետ, որտեղ անմիջականորեն շփվում և մերձավոր հարևաններ են հանդիսանում իմպերիալիստական ճամբարը և սոցիալիստական համագործակցությունը, ՆԱՏՕ-ն և Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը։

Ապահովել Եվրոպայի մայրցամաքում կայուն խաղաղություն և անվտանգություն, վերջնականապես փակել պատերազմի ճանապարհը՝ սա է բոլոր ժողովուրդների միահամուռ պահանջը։ Հենց այդ նպատակին է ուղղված սոցիալիստական պետությունների ամբողջ գործունեությունը։ Այդ կարևոր խնդրի իրականացման համար մեծ գործ կատարեց Վարշավայի պայմանագրի մասնակից-պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունը, որը վերջերս տեղի ունեցավ Պրագայում։ Խորհրդակցության կողմից ընդունվեց կարևորագույն փաստաթուղթ՝ «Դեկլարացիա Եվրոպայում խաղաղության, անվտանգության ու համագործակցության մասին», որին ջերմ հավանություն են տալիս խաղաղության բոլոր կողմնակիցները, բարի կամքի բոլոր մարդիկ։

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ԳՖՀ պառլամենտը վերջերս վավերացրին Սովետական Միության և Արևմտյան Գերմանիայի միջև 1970 թվականի օգոստոսի 12-ին ստորագրված պայմանագիրը, որի ուժի մեջ



մտնելու պրոցեսի ավարտումը առաջադեմ հասարակայնությունը համարում է մեր կուսակցության Կենտկոմի հետևողական գործունեության օրինաչափ արդյունքը։ ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի միջև պայմանագիրը վերջ է տալիս սովետաարևմտագերմանական հարաբերություններում եղած բարդությունների տևական ժամանակաշրջանին, որոնք ԳՖՀ-ի կառավարող շրջանների քաղաքականության հետևանք էին։ Նա անհրաժեշտ քաղաքական և իրավական հիմք է ստեղծում ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի բարիդրացիական հարաբերությունների և փոխշահավետ համագործակցության հաստատման համար, ծառայում է Եվրոպայի մայրցամաքում լարվածության թուլացմանը և խաղաղության ամրապնդմանը։ Գոհունակությամբ կարելի է նշել, որ Սովետական Միության և եղբայրական սոցիալիստական երկրների նախաձեռնությամբ ձեռնարկված կաբևոր քայլերը, որոնց նպատակն է ամրապնդել Եվրոպայի անվտանգությունը և զարգացնել համագործակցությունը համաեվրոպական հիման վրա, բերում են ռեալ պտուղներ։ Եվրոպական գործերի զարգացման վրա կոչված են դրական ազդեցություն ունենալու նաև Լեհաստանի ու ԳՖՀ-ի միջև, ինչպես և Արևմտյան Բեռլինին վերաբերող հարցերի շուրջը քառակողմ համաձայնագրերը։

Լարվածության թուլացման և Եվրոպայի խաղաղության ամրապնդման օգտին հետևողականորեն հանդես եկող սոցիալիստական երկրները լի են վճռականությամբ՝ այսուհետև ևս ակտիվորեն գործելու այդ միտումով, իրագործելով ամենասերտ համագործակցություն մյուս շահագրգռված պետությունների հետ։ Սոցիալիստական երկրների նախաձեռնիչ քայլերը արժանանում են եվրոպական լայն հասարակայնության աջակցությանը, որի ներկայացուցիչները հունիսի 2—5-ը Բրյուսելում հրավիրեցին Եվրոպայի անվտանգության ու համագործակցության օգտին հանդես եկող հասարակական ուժերի ասամբլեա։ Այդ բոլոր դրական քայլերի շնորհիվ Եվրոպայի մայրցամաքի իրադրությունը զգալիորեն լավացավ։ Հասկանալի է, որ Եվրոպայում դրական պրոցեսները կարող էին ավելի հեռուն և ավելի խորն ընթանալ, եթե դրան չխոչընդոտեին նրանք, ովքեր դեռևս դատում են ռազմական բլոկների և մյուս իմպերիալիստական խմբավորումների կատեգորիաներով, ովքեր հույսը դնում են լարվածության պահպանման վրա, շարունակում սպառազինությունների մրցավազքը։

Մենք համոզված ենք, որ ներկայումս Եվրոպայի մայրցամաքում ուժերի տեղաբաշխումը հնարավորություն է տալիս հաղթահարելու ռեակցիոն շրջանների դիմադրությունը։ Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս պետությունները, խորապես վերլուծելով Եվրոպայում տիրող դրությունը, այն համոզմանը եկան, որ համաեվրոպական խորհրդակցությունը կարող է հրավիրվել 1972 թվականին։ Այդ խորհրդակցության շուտափույթ հրավիրման և նրա աշխատանքի հաջողության համար անհրաժեշտ նախապատրաստություն անցկացնելու օգտին արտահայտվում են ոչ միայն Եվրոպայի սոցիալիստական երկրները, ոչ միայն բոլոր չեզոք պետությունները, այլ նաև Ֆրանսիան, Իտալիան, Դանիան, Նորվեգիան և ՆԱՏՕ-ի մասնակից ուրիշ երկրներ։ Սոցիալիստական և մի շարք ուրիշ երկրներ պաշտպանում են Ֆինլանդիայի կառավարության առաջարկությունը Հելսինկիում Եվրոպայի բոլոր շահագրգռված պետությունների, ինչպես նաև ԱՄՆ-ի և Կանադայի մասնակցությամբ համակողմանի կոնսուլտացիաներ անցկացնելու մասին ու կոչ անում կոնսուլտացիաներն սկսել ամենամոտ ժամանակներս։ Պրագայի խորհրդակցության աշ-

խատանքի կարևոր արդյունքներից մեկը Եվրոպայի անվտանգության հիմնա-
կան սկզբունքների մշակումն է։
Անհրաժեշտ է, որպեսզի մայրցամաքի քաղաքական կյանքում ընդհանու-
րի կողմից ճանաչվեն և գործնականորեն իրականացվեն հետևյալ հիմնական
սկզբունքները. սահմանների անխախտելիությունը, վիճելի պրոբլեմների լուծ-
ման համար ուժ գործադրելուց հրաժարվելը, սոցիալիստական և կապիտա-
լիստական երկրների պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների
պրակտիկ արմատավորումը, բարիդրացիական հարաբերությունների և հա-
մագործակցության, ինչպես նաև փոխշահավետ համակողմանի կապերի հաս-
տատումը, զինաթափման պրոբլեմի լուծմանը նպաստելը և ՄԱԿ-ին աջակցելը։
Այդ սկզբունքները կարող էին դրվել մայրցամաքի պետությունների հարաբե-
րությունների հիմքում և դրանով իսկ դառնալ միջազգային-իրավական նորմա։
ԻՐԱԿԱՆԱՑՆԵԼՈՎ ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից ընդունած խաղա-
ղության ծրագիրը, մեր կուսակցության Կենտկոմը և սովետական կառավա-
րությունը ակտիվ գործունեություն են ծավալում սոցիալիստական երկրների
միասնության և եղբայրական համագործակցության հետագա ամրապնդման,
Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային-ազա-
տագրական պայքարին օժանդակելու, խաղաղության և ընդհանուր անվտան-
գության նպատակով։ Սովետական Միության՝ արտաքին քաղաքական վերջերս
կատարած կարևոր քայլերից մեկը հանդիսացավ սովետական կուսակցական-
կառավարական պատվիրակության ՎԴՀ կատարած այցը, որի արդյունքները,
ինչպես նաև Հանոյում ստորագրված սովետա-վիետնամական Հայտարարու-
թյունը շարունակում են մնալ միջազգային հասարակայնության ուշադրու-
թյան կենտրոնում։ Շատ երկրների մամուլը նշում է Սովետական Միության
կողմից վիետնամական ժողովրդի պայքարին ցույց տրվող մեծ ու անկեղծ
աջակցությունը, նրան համակողմանիորեն օգնելու վճռականությունը։ Անշե-
ղորեն աճում է Վիետնամի Դեմոկրատական Հանրապետության միջազգային
հեղինակությունը, ամրապնդվում են նրա արտասահմանյան կապերը։ Վիետ-
նամի Դեմոկրատական Հանրապետությունը ճանաչվել է մոտ 35 պետություն-
ների կողմից։ Նա տնտեսական կապեր է հաստատել 70 պետությունների հետ,
ունի դիվանագիտական, ինչպես նաև առևտրական ներկայացուցչություններ
52 երկրներում։ Հանրապետության ձայնը հնչում է միջազգային բազմաթիվ
կոնֆերանսներում և խորհրդակցություններում։
Ամերիկյան իմպերիալիստները ամեն կերպ ձգտում են սվիններով ամ-
րապնդել սայգոնյան փթած ռեժիմը և օգտագործել Հարավային Վիետնամը,
որը վերածվել է ԱՄՆ-ի նոր գաղութի և ռազմական բազայի, Վիետնամի Դե-
մոկրատական Հանրապետության դեմ ագրեսիայի և Հնդկաչինում ազգային-
ազատագրական շարժումը խեղդելու համար։
Բախվելով Հնդկաչինի երկրների ժողովուրդների հակաիմպերիալիստա-
կան պայքարի վերելքին, ԱՄՆ-ը սկսեց է՛լ ավելի համառորեն վարել պատե-
րազմի «վիետնամացման» քաղաքականությունը, օգտագործելով դրա համար
հնդկաչինցիներին հնդկաչինցիների, ասիացիներին՝ ասիացիների դեմ կռվե-
լու համար։ Վաշինգտոնը ձգձգում, սաստկացնում է ագրեսիվ պատերազմը
Վիետնամում, Լաոսում ու Կամբոջայում, միաժամանակ շարունակելով պա-
տերազմական գործողությունները ՎԴՀ-ի դեմ։
Հանդես գալով XXIV համագումարում, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի



գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը հայտարարեց. «Վիետնամի Դեմոկրա-
տական Հանրապետությունը կարող է համոզված լինել, որ թե՛ զինված պայ-
քարում, թե՛ խաղաղ աշխատանքում ինքը կարող է այսուհետև էլ ակնկալել
Սովետական Միության եղբայրական աջակցությունը»։ Լենինյան կուսակցու-
թյան համագումարի բարձր ամբիոնից ասված այս խոսքերում արտահայտ-
ված է մեր հաստատ քաղաքականությունը։ Մենք անշեղորեն հետևել ենք ու
կհետևենք այդ կուրսին։
Սովետական ժողովուրդը, ինչպես նաև առաջադեմ ամբողջ մարդկությու-
նը, խոր զայրույթով դատապարտում է ամերիկյան ագրեսորներին և պաշտ-
պանում է հանուն ազատության և անկախության մարտնչող ժողովուրդների
արդարացի պայքարը։ Մեր երկիրն օգնում է Վիետնամի Դեմոկրատական
Հանրապետությանը ագրեսիայի դեմ մղվող պայքարում և անհրաժեշտության
դեպքում ավելի կուժեղացնի այդ օգնությունը։ «Ամերիկացիներ, հեռացեք
Վիետնամից»,— ահա այդ նշանաբանի տակ ամբողջ աշխարհում աճում և
ավելի մեծ ծավալ է ստանում շարժումն ի պաշտպանություն Վիետնամի ժո-
ղովրդի արդարացի պայքարի։
Օգոստոսի 7-ի իր առաջնորդող հոդվածում «Պրավդան» նշեց, որ արդի
միջազգային կյանքի քաղաքական կարևոր իրադարձություններից մեկը սո-
ցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցություն-
ների ղեկավարների՝ հուլիսի 31-ին Ղրիմում կայացած բարեկամական հան-
դիպումն էր։ Այդ «հանդիպման ժամանակ քննարկվեցին համաշխարհային
քաղաքականության կարևորագույն հարցերը։ Մեծ ուշադրություն նվիրվեց
Եվրոպայի իրադրությանը։ Ընդգծվեց, որ սոցիալիստական երկրների քաղա-
քականության հետ են վճռականորեն կապված Եվրոպայում ստեղծված սահ-
մանների անխախտելիության, պետությունների տերիտորիալ ամբողջակա-
նության հավաստումը և միջազգային լարվածության մեղմացման ամբողջ
պրոցեսը, որը հետզհետե ավելի խոր բնույթ է կրում, ընդգրկում միջազգային
կյանքի նորանոր ոլորտներ, նպաստում սուվերենության, հավասարության,
ներքին գործերին չմիջամտելու, փոխշահավետության սկզբունքների հաստատ-
մանը միջազգային հարաբերություններում»։
Համաշխարհային կոմունիստական շարժման մեջ առաջավոր ջոկատի
պատվավոր առաքելությունը, իր մեծ ինտերնացիոնալ պարտքն է կատարում
Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը։ Մեր հայրենիքը
միշտ էլ եղել է, կա և կմնա որպես հուսալի և հաստատ հենարան, որպես հա-
վատի աղբյուր բոլոր ժողովուրդների համար հանուն լուսավոր, խաղաղ ապա-
գայի նրանց պայքարում։

---

Լ. Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ՀՍՍՀ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ,
պետպլանի նախագահ

# ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԳԼԽԱՎՈՐ ԽՆԴԻՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Կոմունիստական հասարակության կառուցման ճանապարհին մեր կուսակցության XXIV համագումարը կարևոր ուղենիշ էր սովետական ժողովրդի համար։ Համագումարը մշակեց առաջիկա ժամանակաշրջանի ներքին և արտաքին քաղաքականության գիտականորեն հիմնավորված կուրս, տվեց ժամանակակից էտապի մարքս-լենինյան վերլուծությունը և նշեց կոմունիստական շինարարության հետագա զարգացման ուղիները։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներն արտացոլում են մեր կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականությունը։ Նոր հնգամյա պլանի ցուցանիշները բխում են ՍՄԿԿ XXIV համագումարի որոշած գլխավոր խնդրից՝ «Ապահովել ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելք սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության և աշխատանքի արտադրողականության աճն արագացնելու հիման վրա»։

XXIV համագումարի դիրեկտիվների համաձայն կազմվեց հնգամյա պլանը, որը հավանության արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1971 թ.) պլենումում և հաստատվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի ութերորդ գումարման երրորդ նստաշրջանում։

Հնգամյա պլանում նախատեսված է կյանքի բոլոր կողմերն ընդգրկող սոցիալական լայն ծրագիր։ Նախատեսվում է սպառման ապրանքների արտադրության աճի հետ միասին ծանր արդյունաբերության հետագա զարգացում, որը հանրային արտադրությունն անշեղորեն ընդլայնելու և երկրի պաշտպանունակությունն ապահովելու հիմքն է. դա հնարավորություն կընձեռի իրագործելու ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինումը, զգալիորեն բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունները զինելու ժամանակակից բարձր արտա-



արագացնել
դրողականություն ունեցող սարքավորումով։ Նախատեսված է
գիտատեխնիկական պրոգրեսը և իրագործել պետական միասնական տեխնի-
կական քաղաքականություն, որպես հանրային արտադրության աճի և նրա
արդյունավետության բարձր տեմպի հիմնական միջոց։ Այդ կապակցությամբ
գիտության ֆինանսավորումը և գիտական կազմակերպությունների արտա-
դրական բազայի ամրապնդումն այս հնգամյակում, անցյալ հնգամյակի հա-
մեմատությամբ, կավելանա 60 տոկոսով։

Երկու սիստեմների տնտեսական մրցության ներկա էտապում աշխատան-
քի արտադրողականության հարցերը հանդիսանում են գլխավոր լծակը։
Սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինի ցուցումը,
թե աշխատանքի արտադրողականությունը, վերջին հաշվով, ամենակարևորը,
ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար, ո՛չ միայն պահ-
պանում է իր հրատապությունը, այլև առանձնահատուկ նշանակություն
է ստանում այն պայմաններում, երբ տնտեսական մրցության ծանրության
կենտրոնը փոխադրվում է գիտա-տեխնիկական պրոգրեսի և աշխատանքի ար-
տադրողականությունը բարձրացնելու ոլորտը։

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում նախատեսված է շարունակել
սոցիալիստական ազգերի մերձեցման, ՍՍՀՄ ամրապնդման լենինյան ազգա-
յին քաղաքականությունը՝ հօգուտ բոլոր ժողովուրդների և հանրապետու-
թյունների։

Նոր հնգամյակում նախատեսված է ավելի քան 500 մլրդ ռուբլի կապի-
տալ ներդրում կամ 42 տոկոսով ավելի, քան անցյալ հնգամյակում։ Պետք է
նշել, որ մեր երկիրը նյութական արտադրության ոլորտում ավելի շատ միջոց-
ներ է ներդնում, քան որևէ կապիտալիստական երկիր։ Այդ կապակցությամբ
կապիտալ ներդրումների արդյունավետության հարցերը շատ կարևոր նշանա-
կություն ունեն ընթացիկ հնգամյակում։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվները նախատեսում են բնակչու-
թյան դրամական եկամուտների և հանրային ֆոնդերի հաշվին սպասարկման
ծավալի զգալի աճ։ Երկրում ազգային եկամուտը կավելանա 39 տոկոսով։
Կկառուցվեն բազմաթիվ բնակարաններ, դպրոցներ, մանկական նախադպրո-
ցական հաստատություններ, հիվանդանոցներ, բուժարաններ, կուլտուրայի
օբյեկտներ և այլ միջոցառումներ կիրագործվեն ժողովրդի կուլտուրական ու
հոգևոր մակարդակը բարձրացնելու համար։

Իններորդ հնգամյակում գերազանցող աճով կզարգանա սպառման ապ-
րանքների արտադրությունը, 49 տոկոսով ավելի շատ ժողովրդական սպառ-
ման ապրանքներ կարտադրվեն, քան անցյալ հնգամյակում։ Կփոփոխվեն ազ-
գային եկամտի կուտակման և սպառման ֆոնդի հարաբերակցությունները։
Անցյալ հնգամյակում կուտակման ֆոնդի աճի տեմպերը գերազանցում էր
սպառման ֆոնդի աճի տեմպին, իսկ այս հնգամյակում վերջինս զգալիորեն
բարձր կլինի կուտակման տեմպից։ Ազգային եկամտի 80 տոկոսը կօգտա-
գործվի բնակչության կարիքների համար։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված է համամաս-
նությունների և ճյուղային կառուցվածքի հետագա բարելավում, արդյունաբե-
րության այն ճյուղերի զարգացման գերազանցող աճ, որոնք որոշում են տեխ-
նիկական պրոգրեսը, ինչպես, օրինակ, մեքենաշինությունը, էլեկտրաէներ-
գետիկան, քիմիան և այլն։ Դրանց տեսակարար կշիռը ընդհանուր արդյունա-

բերական արտադրության մեջ, 1970 թ. 32 տոկոսի դիմաց 1975 թ. կավելանա 36 տոկոսով։ Նավթի և գազի հանույթն ավելացնելու հաշվին կկատարելագործվի վառելանյութի բալանսը։ Պրոգրեսիվ տեղաշարժեր տեղի կունենան ծանր արդյունաբերության ճյուղերում։

Հնգամյա պլանում մեծ ուշադրություն է հատկացված արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխմանը և տերիտորիալ համամասնությունների կատարելագործմանը։

Ընթացիկ հնգամյակը նմանապես կարևոր էտապ է ժողովրդական տնտեսության ղեկավարումը զարգացնելու, պլանավորումը և կառավարումը կատարելագործելու բնագավառում։

Իններորդ հնգամյակի գլխավոր խնդրի իրագործման համար Հայկական ՍՍՀ-ում նախատեսված են հանրային արտադրության բարձր տեմպ և համամասնական զարգացում ժողովրդական տնտեսության հատկապես այնպիսի ճյուղերում, ինչպես գյուղատնտեսությունը, թեթև, սննդի արդյունաբերությունը և մյուս ճյուղերը, որոնցով պայմանավորված են ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը։ Միաժամանակ հզոր թափով կզարգանան ծանր արդյունաբերության ճյուղերը։

Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում տված իր զեկուցման մեջ նշեց. «Ծանր ինդուստրիայի զարգացման արագ տեմպերն իրենց նշանակությունը լրիվին պահպանում են նաև արդի պայմաններում... Նրա աշխատանքից է կախված ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտների տեխնիկական զինվածության մակարդակը, աշխատանքի ավելի բարձր արտադրողականության համար նյութական և տեխնիկական միջոցների ապահովումը»։

Հնգամյա պլանում նախատեսված են ծանր արդյունաբերության ճյուղերի զարգացման բարձր տեմպ, ինչպես նաև գիտատեխնիկական պրոգրեսի արագացման հիման վրա հանրային արտադրության արդյունավետության բարձրացման խոշոր միջոցառումներ։

Ժողովրդի բարեկեցությունը զգալիորեն բարձրացնելու համար սոցիալ-տնտեսական միջոցառումների բազմակողմանի կոմպլեքսն իրականացնելու նպատակով ավելացվում է սպառմանը հատկացվող ազգային եկամտի, իսկ արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալում՝ ժողովրդական սպառման ապրանքների բաժինը. նկատելիորեն ընդլայնվում է բնակչության սպասարկման ոլորտը։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվները լրիվին իրագործելու կարևոր նախադրյալը ութերորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարումն է, որը բազա ստեղծեց զարգացած սոցիալիստական էկոնոմիկայի հետագա հզոր վերելքի, ժողովրդա-տնտեսական նոր, խոշոր խնդիրների լուծման համար։

Հայկական ՍՍՀ-ում 1966—1970 թթ. ազգային եկամուտն աճեց 1,58, իսկ արդյունաբերական արտադրանքի ծավալը՝ մոտ 1,8 անգամ։ Ստեղծվեց էներգետիկ հզոր բազա, էլեկտրակայաններում գործարկվեցին 682 հազար կվտ նոր էներգետիկ կարողություններ, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը հասավ 6,1 մլրդ կվտ-ժամի։

Նույն ժամանակամիջոցում մեքենաշինության արտադրանքն աճեց 2,1, քիմիական արդյունաբերությանը՝ 1,5, գունավոր մետալուրգիայինը՝ 1,2, իսկ սպառման ապրանքների արտադրությունը՝ 1,64 անգամ։ Արտադրամիջոցների



արտադրության աճի համեմատությամբ ապահովվեց սպառման ապրանքների արտադրության աճի գերազանցող տեմպը։ «Բ» խմբի սպառման առարկաների աճի տարեկան միջին տեմպը կազմեց 12,9, իսկ արտադրամիջոցներինը՝ 11 տոկոս։

ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվների հաջող կատարման գործում մեծ դեր խաղաց տնտեսական բարենորոգումը։ Հանրապետությունում, ութերորդ հնգամյակում, հիմնականում ավարտվեց արդյունաբերական ձեռնարկությունների փոխադրումը պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին։ Այժմ արտադրանքի և շահույթի 97 տոկոսը տալիս են այդ ձեռնարկությունները։ Անցած հնգամյակի տարիներին, 1961—1965 թթ. համեմատությամբ, 57 տոկոսով ավելացան կապիտալ ներդրումները։ Զգալիորեն զարգացան գյուղատնտեսությունը, տրանսպորտը և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերը։

ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման նոր, իններորդ հնգամյա պլանը, հանդիսանալով համամիութենական պլանի բաղկացուցիչ մասը, ամբողջովին բխում է ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներից, որի համաձայն արդյունաբերական արտադրանքի աճը Հայաստանում նախատեսված է 60—63 տոկոսով։ Պլանը կազմելիս, արդյունաբերական արտադրանքի աճի հնարավորությունները ճշգրտելիս աճը որոշվեց 1,64 անգամ,— երբ արդյունաբերական արտադրության համամիութենականը նախատեսված է 1,47 անգամ։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության տարեկան միջին ծավալը 1971—1975 թթ., 1966—1970 թթ. համեմատությամբ, կաճի 32, իսկ ազգային եկամուտը կավելանա 46 տոկոսով։ Բարձր տեմպ է նախատեսվում աշխատանքի արտադրողականության համար։ Արդյունաբերական արտադրանքի աճի 70 տոկոսը, գյուղատնտեսական արտադրանքի, ինչպես նաև կապիտալ շինարարության շինարարական-մոնտաժային աշխատանքների ամբողջ աճը ապահովվելու է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Այդ լուրջ խնդրի իրագործման համար պետք է լուծել արտադրապրոցեսների ավտոմատացման և մեքենայացման հարցերը։ Հատկապես տրանսպորտային և օժանդակ աշխատանքներում, որտեղ բարձր է ձեռքով աշխատող բանվորների թիվը, պետք է մեքենայացնել ֆիզիկական և ցածրորակ ծանր աշխատանքը։ Հնգամյակի ընթացքում հիմնական ֆոնդերը կավելանան 54 տոկոսով, այդ թվում՝ արդյունաբերության մեջ 60, իսկ գյուղատնտեսության մեջ կկրկնապատկվեն, 30 տոկոսով կաճի ֆոնդայնությունը և էներգազինվածությունը։

Ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի համաձայն անհրաժեշտ է, առաջին հերթին, ստեղծել համապատասխան էներգետիկ բազա։ Այդ նպատակով կկառուցվեն և կգործարկվեն էներգետիկ խոշոր կարողություններ։ Կավարտվի ատոմային էլեկտրակայանի շինարարությունը՝ 815 հազար կվտ կարողությամբ։ Հրազդանի հիդրոէլեկտրակայանի կարողությունը կհասցվի 800 հազար կվտ, կգործարկվի Որոտանի կասկադի Շամբի հիդրոէլեկտրակայանը՝ 171 հազար կվտ կարողությամբ, Կիրովականի ջերմաէլեկտրակայանը կընդլայնվի 50 հազար կվտ։ Հնգամյակի ընթացքում կգործարկվեն 1836 հազար կվտ գեներացնող կարողություններ, որը մի քանի անգամ ավելի է, քան նախընթաց հինգ տարիների ընթացքում գործարկվածը։ Կկառուցվի 1,5 հազար կմ հաղորդման բարձրավոլտ գիծ և ենթակայաններում կգործարկվեն 1720 հազար կվտ տրանսֆորմատորային կարողություններ։

1971 թ. մեր հանրապետությունում էլեկտրաէներգիայի թողարկումը կավելանա 80 տոկոսով և կկազմի 11 մլրդ կվտ-ժամ, որ փոքր-ինչ ավելի է, քան 1931 թ. ամբողջ երկրում արտադրվածը։ Էներգետիկ շինարարության կարևորագույն կառույցներից մեկը՝ Արփա գետի ջրերը Սևանա լիճ տանող շինությունն է։ 1974 թ. այդ շինարարության ավարտմամբ Սևանա լճի մակարդակը կկայունանա։ Հնգամյակի ընթացքում էներգետիկ շինարարության մեջ կներդրվի 480 մլն ռուբլի։

Հանրապետության արդյունաբերության ավանդական ճյուղերից մեկը՝ գունավոր մետալուրգիան, նույնպես կզարգանա զգալի տեմպով, և հնգամյակի վերջում այդ ճյուղում տեղի կունենան կառուցվածքային լուրջ փոփոխություններ։ Կգործարկվեն և արտադրանք կտան Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը (կավահող, նատրիումի և կալցիումի մետասիլիկատներ և այլն) և Զոդի ոսկեհանքային կոմբինատը՝ Արարատի ոսկեզտող ֆաբրիկայով. ալյումինի գործարանում կկազմակերպվի պրոֆիլային գլանվածքի արտադրություն։ Կավելանա Քաջարանի կոմբինատի կարողությունը և այլն։

Զոդի կոմբինատի հանքաքարի փոխադրումն ապահովելու համար կկառուցվի Սևանից մինչև Զոդ 121 կմ երկաթուղի, դա նույնպես արմատապես կփոխի Սևանի ավազանի շրջանների էկոնոմիկան։ Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շինարարության մեջ հնգամյակի ընթացքում կյուրացվի մոտ 100 մլն ռուբլու կապիտալ ներդրում. գրեթե նույնքան կյուրացվի նաև Քաջարանի և Ղափանի կոմբինատներում։ Գունավոր մետալուրգիայում հնգամյակի ընթացքում պլանով կներդրվի ավելի քան 310 մլն ռուբլի, ըստ որում, այդ միջոցները հիմնականում կկենտրոնացվեն խոշոր կառույցներում։

Քիմիական արդյունաբերության մեջ կյուրացվեն և կթողարկվեն երկրի համար կարևոր նշանակություն ունեցող արտադրանքի նոր տեսակներ, ինչպես, օրինակ, ցիանաթթու, միզանյութային մելամին, ացետատային թել սիգարեթի ֆիլտրերի համար և այլն։ Հանքային պարարտանյութերի արտադրությունը կավելանա 1,7 անգամ։ Կմեծանան սինթետիկ ձյութերի և պլաստմասսաների, քիմիական թելերի, ռետինե կոշիկի, սինթետիկ կորունդի, ռետինե տեխնիկական առարկաների, քիմիական ռեակտիվների, կենցաղային քիմիայի և այլ առարկաների արտադրության կարողությունները։ Քիմիական արտադրանքի արտադրության ծավալը հնգամյակում կաճի 43 տոկոսով։ Քիմիական արդյունաբերության մեջ կկատարվի ավելի քան 258 մլն ռուբլու կապիտալ ներդրում։ Ավելի ևս կզարգանա բուժարդյունաբերությունը, լիզինի ու միկրոբիոլոգիական պրեպարատների գործարանների թողարկմամբ կստեղծվի միկրոբիոլոգիական նոր ճյուղ։

Հնգամյակում առավել ևս կզարգանա Հայաստանի արդյունաբերության հիմնական ճյուղերից մեկը՝ մեքենաշինությունը, որը կաճի ավելի քան 1,9 անգամ. դրա արտադրանքի ծավալը կկազմի 1,2 մլրդ ռուբլի, իսկ տեսակարար կշիռը 1970 թ. 23 տոկոսից կհասնի 27-ի։ Այդ ճյուղը հանրապետության ընդհանուր արդյունաբերական արտադրության մեջ առաջատարը կդառնա։

Տեղի կունենան կառուցվածքային կարևոր տեղաշարժեր։ Կաճի ռադիո և էլեկտրոնային արդյունաբերության, սարքաշինության տեսակարար կշիռը։ Կկազմակերպվի նոր, ավելի բարդ, արտադրական բարձր կուլտուրա պահանջող, ավելի քիչ մետաղ պարունակող և առավել աշխատատար առարկաների թողարկումը։ Կընդլայնվեն և կվերակառուցվեն գործող ձեռնարկությունները





և կկառուցվի վեց նոր ձեռնարկություն, ինչպես ապակեղենինը՝ Արթիկում, դարբնոցա-մամլակային ավտոմատներինը՝ Լենինականում, փորձագիտական գործիքներինը՝ Արտաշատում և այլն։

Մեքենաշինությունը զգալի չափով կզարգանա տեխնիկական վերազինման և հերթայնության ավելացման հաշվին։ Ներկայումս հանրապետությունում գործում է միութենական տասնմեկ մինիստրությունների մոտ 80 ձեռնարկություն։ Ընթացիկ հնգամյակում կգործադրվեն այնպիսի մինիստրությունների ձեռնարկություններ, ինչպես նավաշինական, ավիացիոն և գազի արդյունաբերության։

Մեծ աճ է նախատեսված ավտոմեքենաների, ավտոբեռնիչների, տեխնոլոգիական սարքերի, ադամանդյա գործիքների, էլեկտրական խոշոր մեքենաների արտադրության բնագավառում. կյուրացվեն էլեկտրաշարժիչների, գեներատորների, տրանսֆորմատորների նոր սերիաներ և այլն։ Մեքենաշինության մեջ կներդրվի ավելի քան 280 մլն ռուբլու կապիտալ։ Բացի դրանից, մոտ 75 մլն ռուբլի նախատեսված է մեքենաշինության աշխատողների բնակարանների կառուցման համար։

Խոշոր վերակառուցում կկատարվի ավտոբեռնիչների և Լենինականի միկրոէլեկտրաշարժիչների գործարաններում։ Ըստ էության, դրանք կդառնան նոր գործարաններ։ Գրեթե կկրկնապատկվի Չարենցավանի ցենտրոլիտի կարողությունը։ Հանրապետության շրջաններում կստեղծվեն գործող ձեռնարկությունների 20—22 ֆիլիալ ու արտադրամաս։

Կապիտալ շինարարության անընդհատ աճը պահանջում է ավելացնել շինանյութերի արտադրությունը, ինչպես նաև յուրացնել և թողարկել նոր տեսակի շինանյութեր։ Հնգամյա պլանով նախատեսվում է շինարարության օբյեկտներն ամբողջովին ապահովել տեղական շինանյութերով և յուրացնել ու ընդլայնել պեռլիտների, հրաբխային շլակի և այլ իներտ, թեթև լիցքերի, երեսպատման նյութերի հանույթն ու վերամշակումը և այլն։ Շինարարական ինդուստրիայի և շինանյութերի արդյունաբերությունը զարգացնելու նպատակով կապիտալ շինարարության համար նախատեսված է ավելի քան 280 մլն ռուբլի։

Նախատեսված է մեծ չափով զարգացնել սպառման ապրանքներ արտադրող ճյուղերը։ Հնգամյակում թեթև արդյունաբերության արտադրանքի ծավալը կաճի ավելի քան 54 տոկոսով և կկազմի մոտ 840 մլն ռուբլի։ Նախատեսված ծավալը կապահովվի գոյություն ունեցող կարողություններն ավելի արդյունավետ օգտագործելու, մի շարք ձեռնարկություններ տեխնիկապես վերազինելու և վերակառուցելու, ինչպես նաև նոր ձեռնարկություններ կառուցելու հաշվին։

Բոլոր տեսակի գործվածքների արտադրությունը կավելանա 25,6 մլն քմ, տրիկոտաժեղենինը՝ 20,5 մլն հատով, կաշվե կոշիկինը՝ 2,23 մլն զույգով։ Թեթև արդյունաբերության զարգացմանը կտրվի ավելի քան 100 մլն ռուբլի, որից մոտ 30 մլն կհատկացվի տեխնիկական վերազինմանը։ Նոր ձեռնարկություններում, որոնք կկառուցվեն Արարատում, Երևանում, Մասիսում, Մարտունիում և այլ վայրերում, կթողարկվեն կաշվեղեն, տեքստիլ արդուզարդի առարկաներ, մանկական խաղալիքներ։ Կյուրացվի և կավելացվի սրբիչի խավոտ գործվածքի, չգունաթափվող նախշազարդ գործվածքների արտադրությունը։

Շատ միջոցառումներ կձեռնարկվեն արտադրանքի որակը բարելավելու և բնակչության վճարունակ պահանջարկն ապահովելու համար։ Արտադրանքի աճի ավելի քան 76 տոկոսը նախատեսված է ստանալ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու հաշվին։

Սպառման ապրանքներ արտադրող մյուս կարևորագույն ճյուղը սննդարդյունաբերությունն է, որի զարգացումը հիմնականում պայմանավորված է գյուղատնտեսական հումքով։ 1975 թ. սննդարդյունաբերության ճյուղերը կտան 920 մլն ռուբլու արտադրանք։ Դա մոտ 40 տոկոսով ավելի է, քան 1970 թ.։ Գինեգործական արդյունաբերության արտադրանքը կավելանա 20, պահածոներինը՝ 66 տոկոսով, գարեջրինը և կերակրի աղինը՝ 2,5, հանքային ջրերինը և շամպայնինը՝ 4, հրուշակեղենինը, խորդենու յուղինը՝ 1,9 անգամ և այլն։ Կավարտվի բուլկեղենի և հրուշակեղենի ֆաբրիկայի շինարարությունը Երևանում, որը կապահովի թխվածքեղենի և հրուշակեղենի արտադրության ավելացումը և դրանց որակի բարելավումը։ Կավարտվի հրուշակեղենի նոր ֆաբրիկայի շինարարությունը Լենինականում, շահագործման կհանձնվեն գինու և կոնյակի սպիրտի մի քանի խոշոր մառան, կակաոյի հատիկների և շոկոլադեղենի արտադրամասեր Երևանի հրուշակեղենի-մակարոնի կոմբինատում. դա հնարավորություն կընձեռի զգալիորեն բարելավելու և ընդլայնելու թողարկվող հրուշակեղենի տեսականին ու որակը։ Կշահագործվի տարայիպիտակի կոմբինատը, որն իր արտադրանքով կապահովի սննդամթերքների փաթեթումն ու արտաքին ձևավորումը։

Մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության արտադրանքը կավելանա մոտ 40, մսի արտադրությունը՝ 55,2, կաթնեղենինը՝ 59,5 տոկոսով։ Հնգամյակում պանրի նոր գործարաններ կկառուցվեն հեռավոր շրջաններում, կվերակառուցվեն արդեն գործողները, կմեքենայացվեն և կավտոմատացվեն արտադրական պրոցեսները։ Սննդարդյունաբերության ճյուղերում, ամբողջությամբ վերցված, կներդրվի 187 մլն ռուբլի, կամ 42 տոկոսով ավելի, քան անցյալ հնգամյակում։

Զգալի քանակությամբ սպառման ապրանքներ կարտադրեն տեղական արդյունաբերության ձեռնարկությունները և հանրապետական ենթակայության մի շարք կազմակերպություններ։ Հանրապետական և տեղական ենթակայության մինիստրությունների ու գերատեսչությունների արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալը հնգամյակում կավելանա 2,15 անգամ։ Տեղական արդյունաբերությանն ընթացիկ հնգամյակում 80 տոկոսով ավելի կապիտալ ներդրում կհատկացվի, քան նախընթաց հնգամյակում։

Ամբողջությամբ վերցված, մասսայական սպառման ապրանքներ արտադրող արդյունաբերության ճյուղերի զարգացման համար նախատեսվում է 48 տոկոսով ավելի կապիտալ ներդրում, քան անցյալ հնգամյակում։

Կուլտուր-կենցաղային սպասարկման և տնտեսական գործածության ապրանքների թողարկումը հնգամյակում կավելանա 2,4 անգամ։ 1975 թ. 2,5 անգամ ավելի կենցաղային սառնարան կարտադրվի, քան 1970-ին։ Կարտադրվեն ամեն տեսակի ժամացույցներ՝ 1,5, դաշնամուր՝ ավելի քան 2, մետաղյա ամանեղեն՝ 2,7 անգամ ավելի։

Պլանով նախատեսված է 1975 թ. բամբակեղեն գործվածքների թողարկումը հասցնել 93 մլն քմ, բրդեղենինը՝ 10,1, մետաքսեղենինը՝ 17 մլն քմ, տրիկոտաժեղենինը՝ ավելի քան 80 մլն հատի, կաշվե կոշիկինը՝ մինչև 12,5 մլն զույգի։



Սակայն, պետք է նշել, որ վերջին ժամանակներս բնակչությունն ավելի ու ավելի մեծ պահանջներ է ներկայացնում թողարկվող ապրանքների որակին, և այդ կապակցությամբ առևտրական կազմակերպություններն առավել մեծ պահանջներ են ներկայացնում թողարկվող արտադրանքի որակին ու տեսականուն։ Մի շարք ապրանքներ չեն վաճառվում և մնում են առևտրական ցանցում կամ արտադրությունում. դա, առաջին հերթին, վերաբերում է հագուստեղենին, կոշիկին, կահույքին, գուլպաներին և այլն։ Արդյունաբերությունը պետք է վերակառուցվի և կարողանա բավարարել գնորդների պահանջարկը։ Այդ երևույթը միանգամայն բնական է և ավելի պետք է ներգործի առևտրի ու արտադրության միջև եղած փոխհարաբերության վրա։ Այն առաջ է եկել ապրանքների արտադրության քանակական աճի և բնակչության բարեկեցության բարձրացման շնորհիվ, բնակչություն, որը պահանջում է բարձրորակ ապրանքներ։ Անհրաժեշտ է ձեռնարկությունների վերակառուցմամբ և տեխնիկական պրոգրեսի արմատավորմամբ կատարելագործել տեխնոլոգիական պրոցեսները, բարելավել ապրանքների մշակումը, ընդլայնել տեսականին և ձեռք առնել մի շարք այլ միջոցներ ու ապահովել բնակչության աճող պահանջմունքները։ Այդ նպատակով կապիտալ ներդրումների զգալի մասը հատկացվում է տեխնիկական վերազինմանը։

Հնգամյակի ընթացքում նախատեսված է ծխախոտի արտադրությունն ավելացնել 31,2, շաքարի ճակնդեղինը՝ 30, խորդենունը՝ 72, բանջարեղենինը՝ 33, սեխ-ձմերուկինը՝ 65, խաղողինը՝ 15, մրգերինը՝ 30, մսինը՝ 35, կաթինը՝ 27, ձվինը՝ 55, հացահատիկինը՝ 13 տոկոսով և այլն։ Գյուղատնտեսության զարգացման համար հնգամյակում նախատեսված է հատկացնել 872 մլն ռուբլի. դա 84 տոկոսով ավելի է, քան անցյալ հնգամյակում։ Ոռոգելի հողատարածությունը կավելանա 50 հազար հեկտարով։ Լրացուցիչ ջուր կտրվի 130 հազար հեկտար արոտավայրերի։

Ի տարբերություն մյուս հնգամյակների, այս հնգամյակում անցում կկատարվի անասնապահական արտադրանքի արդյունաբերական արտադրությանը։ Կկառուցվեն խոշոր եղջերավոր անասունների մատղաշի աճի ու կերակրման կոմպլեքսներ՝ 10 հազար գլխի, խոզերի՝ 98,4 հազարի, ինչպես նաև թռչնաբուծական ֆաբրիկաներ՝ 790 հազար ածան հավի և 6,25 մլն ճուտի համար։ Կոմպլեքսների և թռչնաբուծական ֆաբրիկաների հաշվին կստացվի 12 հազար տոննա միս, 7,8 հազար տոննա թռչնեղեն (կենդանի քաշով) և ավելի քան 146 մլն ձու։

Նախատեսված է ջերմոցների, մրգի, բանջարեղենի մառանների շինարարություն. դա հնարավորություն կընձեռի ձմռանը բանջարեղեն ու միրգ դուրս բերել շուկա։

Գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակարդակը զգալիորեն բարձրացնելու համար հանրապետության գյուղատնտեսությունը կստանա 7700 տրակտոր, 1000 հացահատիկային կոմբայն, 6800 բեռնատար ավտոմոբիլ, տարբեր գործածության բազմաթիվ հողափոր և գյուղատնտեսական մեքենաներ։ 52 տոկոսով կավելանա հանքային պարարտանյութերի մատակարարումը։ Խտացրած կերի արտադրությունը կավելանա 67 տոկոսով, իսկ Սպիտակի, Սևանի ալրաղաց կոմբինատներում այն կավելանա խտացրած կերի արտադրամասերի գործարկման շնորհիվ։

Հնգամյակում ավելի ևս կզարգանան տրանսպորտն ու կապը։ Կկառուց-

վեն ու կվերակառուցվեն 332 կմ նոր ավտոխճուղիներ՝ կատարելագործված ծածկով։ Սկսված է Հրազդան—Իջևան երկաթուղու կառուցումը, որը կավարտվի հաջորդ հնգամյակում։ Քաղաքային և գյուղական հեռախոսակայանների կարողությունը կավելանա ավելի քան 113 հազար համարով։ Կավարտվեն Երևան—Ջանգեզուր ռադիո-ռելեային, Ջովաշեն—Ազիզբեկով—Եղեգնաձոր նոր գծերի շինարարությունները։ Կավարտվի Երևանի հեռուստատեսային կենտրոնի, Լենինականի ռետրանսլյացիոն կայանի վերակառուցումը։ Դա հնարավորություն կընձեռի 1975 թ. հեռուստացուցային հաղորդումներով ընդգրկել հանրապետության գրեթե ամբողջ տերիտորիան։

Կապիտալ մեծ ներդրումներ են նախատեսված կոմունալ տնտեսության համար։ Կկառուցվեն նոր ջրմուղներ, կոյուղիներ, մաքրման կառույցներ։ Բնակչության մեկ շնչին հասնող ջրի օրական միջին սպառումը 1970 թ. 250 լիտրից 1975 թ. կհասնի մինչև 340-ի։

Առավել կարևոր հարցերից մեկը, որը զգալի չափով կլուծի տրանսպորտային պրոբլեմը Երևանում, տրամվայի ցանցի վերակառուցումն է 1972 թվականից, տրամվայի գնացքները քաղաքի կենտրոնով կանցնեն թունելներով, որոնք արագընթաց էլեկտրատրանսպորտի համար կառուցվելու են մետրոպոլիտենի չափսերով։

Կանցկացվի 358 կմ գազուղի, կգազիֆիկացվեն 190 հազար բնակարաններ, այդ թվում՝ 75 հազարը գյուղական վայրերում։ Այդ միջոցառումները հնարավորություն կընձեռեն քաղաքային բնակարանային ֆոնդի գազիֆիկացիան հասցնել 90 տոկոսի։

Հնգամյակում ժողովրդի նյութական բարեկեցության մակարդակի և կուլտուրայի բարձրացման լայն ծրագիր է նախատեսված։ ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանում Ա. Ն. Կոսիգինի զեկուցման մեջ, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներին համապատասխան, շարադրվեցին նախատեսված միջոցառումները և մատնանշվեցին նվազագույն աշխատավարձի, միջին վարձատրություն ստացող բանվորների ու ծառայողների դրույքների և ռոճիկների, թոշակների և նպաստների մակարդակը բարձրացնելու, մինչև 90 ռուբլի ամսական աշխատավարձ ստացողների հարկը դադարեցնելու և նվազեցնելու, բժիշկների, ուսուցիչների, մանկական նախադպրոցական դաստիարակների, սովորողների թոշակները, գիշերային ժամերին կատարվող աշխատանքի լրացուցիչ վարձատրությունն ավելացնելու, պետական ներքին փոխառությունները մարելու ժամկետները և այլն։

Այս միջոցառումների շնորհիվ կբարձրանա բնակչության յուրաքանչյուր հոգուն հասնող իրական եկամուտը։ Հայկական ՍՍՀ-ում մեկ շնչին ընկնող իրական եկամուտը հնգամյակում կավելանա 35, իսկ սպառման հանրային ֆոնդերը՝ 47 տոկոսով։

Նախատեսված է մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը հասցնել 2200 մլն ռուբլու, այսինքն՝ ավելացնել ավելի քան 75 տոկոսով։ Ապրանքաշրջանառության այսպիսի աճը հնարավորություն կընձեռի վերացնելու հանրապետության ետ մնալը միութենական միջին մակարդակից։ Ապրանքաշրջանառության այդպիսի ծավալ ապահովելու համար նախատեսված է ընդլայնել առևտրի և հանրային սննդի ձեռնարկությունների ցանցը, պահեստները, սառնարանները և կատարել այլ միջոցառումներ։



Ընթացիկ հնգամյակում զգալիորեն կավելանա կենցաղսպասարկման ընդգրկումն ու ծավալը։

Բնակչության բուժսպասարկումը բարելավելու նպատակով կառուցվում են նոր հիվանդանոցներ ու բուժարաններ, դեղատներ, սանատորիաներ, պանսիոնատներ և առողջապահական այլ հաստատություններ։

Այս հնգամյակում հանրապետությունում ավարտվում է անցումը ընդհանուր միջնակարգ կրթության։ Միայն պետական միջոցների հաշվին կկառուցվեն դպրոցական շենքեր՝ 162 հազար աշակերտի համար՝ անցյալ հնգամյակի 144 հազարի, մանկական նախադպրոցական հաստատություններ՝ 42,5 հազար տեղով, 21,2 հազարի դիմաց։

Որակյալ բանվորական կադրերի նախապատրաստումը բարելավելու նպատակով, նյութական արտադրության ճյուղերի միջոցների հաշվին կկառուցվի 23 պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարան։ Պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարաններում ընդհանուր կոնտինգենտը հնգամյակի վերջին կկազմի 35,6 հազար մարդ, որոնցից միջնակարգ կրթություն կստանան 13,3 հազարը։

Բարձրագույն ուսումնական հաստատություններում ուսանողների թիվը կհասնի 350, իսկ միջնակարգ մասնագիտական հաստատություններում՝ 58 հազարի։ Կավելացվի ընդունելությունն այն ֆակուլտետներում, որոնք ինժեներական կադրեր են պատրաստում տեխնիկական պրոգրեսը որոշող ճյուղերի համար։

Կավելանա գրադարանների, ակումբների և կինո-թատրոնների ցանցը։ Կուլտուրայի օբյեկտների շինարարության համար հնգամյակում կհատկացվի մոտ 54 մլն ռուբլի, 60 տոկոսով ավելի, քան անցյալ հնգամյակում։

Այս հնգամյակում մեծ միջոցառումներ են նախատեսված գիտության և տեխնիկայի նվաճումներն արտադրության մեջ արմատավորելու համար։ Ժամանակակից գիտության հրատապ պրոբլեմները կմշակվեն գիտությունների ակադեմիայի գիտական բաժանմունքներում, գիտա-հետազոտական ճյուղային ինստիտուտներում, հանրապետության բուհերում։

* * *

Հնգամյակի առաջին տարվա՝ 1971 թ. և 1972 թ. առաջին կիսամյակի արդյունքները ցույց են տալիս, որ հաջողությամբ են կատարվում հնգամյա պլանի առաջադրանքները։ Հանրապետության ժողովրդական տնտեսության ղեկավարների և բոլոր աշխատավորների խնդիրն է՝ հաշվի առնել ծրագրի իրագործման պրոցեսում առանձին ձեռնարկություններում ծագող դժվարությունները ու հարցերը, ժամանակին միջոցներ ձեռնարկել և ընթանալ հնգամյակի առաջադրանքները գերակատարելու ուղիով։



Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԾԱՂԿՈՒՄՆ ՈՒ ՄԵՐՁԵՑՈՒՄԸ

Մարդկության պատմությունից հայտնի է, որ բոլոր ժամանակներում ժողովուրդները գտնվել են տարբեր բնույթի կապերի մեջ: Նման իրողությունը բխել է կյանքի պահանջներից, ստեղծված սոցիալ-տնտեսական հարաբերություններից: Դժվար է գտնել նախորդ պատմության գեթ մի շրջան, որ ժողովուրդները գտնվեին բացարձակ մեկուսացման պայմաններում և չառնչվեին արտաքին աշխարհի հետ:

Ժողովուրդների, պետությունների միջև բազմապիսի կապերը նոր բնույթ ստացան կապիտալիստական հարաբերությունների հաստատման ժամանակաշրջանում, երբ միջպետական, ազգամիջյան կապերը դուրս եկան նեղ շըրջագծից, ընդգրկելով ողջ հողագունդը: Սակայն կապիտալիզմի, մասնավորապես իմպերիալիզմի գերիշխման շրջանում, ազգերի զարգացումն առավել անհամաչափ ընթացավ, որը որոշակի դրոշմ թողեց ազգամիջյան հարաբերությունների վրա: Այդ սոցիալ-պատմական պրոցեսում ազգերի առաջընթացը միակերպ չէր, տեղի ունեցավ դերերի փոփոխում, և ստացվեց այնպես, որ մարդկության վաղ քաղաքակրթության շրջանում մեծ ավանդ ներդրած ժողովուրդները հետագայում իրենց ակտիվ դերը զիջեցին կապիտալիզմի պայմաններում թատերաբեմ բարձրացած ազգերին: Բուրժուական հասարակությունը կիրառեց իր սկզբունքները, չափանիշները, որոնք, սակայն, խորացրին սոցիալական և ազգային անտագոնիզմն ու անհավասարությունը:

Չնայած հաստատված իրավիճակին, ազգերն ու ժողովուրդները արժեքներ են փոխանակել, գտնվել են տարբեր տիպի հարաբերությունների մեջ: Այստեղ, անշուշտ, պատշաճ տեղ են գրավել մշակութային կապերը, որոնք ժողովուրդները կամրջել են իրար, նպաստել հոգևոր կարողությունների հարստացմանը: Այնուհանդերձ, այստեղ ժողովուրդների փոխներազդեցությունը համապարփակ տարածում չի ստացել: Կարևոր է շեշտել և այն փաստը, որ սոցիալիզմին նախորդող և ոչ մի հասարակարգ պայմաններ չի ստեղծել ազգի բոլոր սոցիալական խմբերի առաջընթացի համար: Այսպես, դարասկզբին ցարական Ռուսաստանի բնակչության 72 տոկոսը անգրագետ էր, պաշտոնական տվյալներով այժմ աշխարհում անգրագետների թիվը հասնում է 800 միլիոնի: Բնական է, խավարը աշխատավոր զանգվածներին հեռու է պահել հարազատ և այլ ազգի ժողովուրդների հոգևոր մշակույթից, դարաշրջանի առաջընթացից:

Այն պահին, երբ Սովետական Ռուսաստանը սոցիալիստական շինարարության առաջին քայլերն էր անում, երկրի ազգային շրջանները զարգացման տարբեր աստիճանների վրա էին գտնվում: Նրանք իրարից զգալի տարբերվում էին պատմականորեն ստեղծված ազգային ավանդույթներով, բարքերով, ավելին՝ սոցիալ-տնտեսական հարաբերությունների բնույթով ու մակարդակով:

Սովետական ժողովուրդները, իրենց ուղին սկսելով կուլտուրայի զարգացման տարբեր աստիճաններից, նոր հասարակարգի կառուցման ընթացքում աստիճանաբար հաղթահարեցին տնտեսության բազմակացութաձևությունը և ստեղծեցին ընդհանուր տնտեսական բազիս, որը միասնական սոցիալիստական կուլտուրայի զարգացման հիմնական պայմանն էր: Կոմունիստական գաղափարախոսությունը, տոգորված պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, կարևոր գործոններից էր, որն ապահովեց ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների մշակույթների արագ ու համակողմանի զարգացումը, բազմազգ սովետական կուլտուրայի ձևավորումը:

Միայն բանվոր դասակարգը, վերցնելով իշխանությունն իր ձեռքը, ոչընչացնելով սոցիալական ու ազգային կեղեքումը, ազգային և ռասսայական խտրականության վերացումը, ժողովուրդներին հնարավորություն ընձեռեց բարեկամական համագործակցության հիման վրա բուռն կերպով զարգացնելու կուլտուրայի ու գիտության բոլոր ճյուղերը, հարստացնելու ազգային առաջավոր ավանդույթները: Ահա թե ինչու սովետական արվեստում ազգայինի ու ինտերնացիոնալիստականի, ազգային գեղարվեստական մշակույթների ծաղկման ու մերձեցման մասին հարկ է խոսել ոչ թե վերացականորեն, այլ կոնկրետ, պարզ պատկերացում ունենալով ազգայինի ու ինտերնացիոնալիստականի սոցիալական էության, նրանց փոխազդեցության սոցիալական հիմքի մասին:

Բավական չէ սովետական արվեստում տեսնել միայն ազգային գույների բազմերանգությունը: Անհրաժեշտ է զգալ ու ըմբռնել այդ ներկապնակի սոցիալիստական էությունը, որը բովանդակում է ՍՍՀՄ ժողովուրդների հեղափոխական ավանդույթները: Նախահոկտեմբերյան շրջանում գոյություն ունեին սոցիալիստական գեղարվեստական կուլտուրայի սոսկ առանձին տարրեր, սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ մեզանում գեղարվեստական մշակույթը դարձավ բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային:

Սովետական ազգային մշակույթների բովանդակության ընդհանրությունը հիմնվում է նրանց ընդհանուր տնտեսական բազայի, միասնական գաղափարախոսության վրա, որոնք արտահայտում են մեր երկրի ազգերի ու ժողովուրդների արմատական շահերը, հասարակական իդեալները:

Ազգային մշակույթների մերձեցումը և փոխհարստացումը տեղի են ունենում որոշակի սոցիալական պայմաններում: Արդեն կապիտալիզմի օրոք տեղական և ազգային սահմանափակության հաղթահարումով ժողովուրդների միջև հաստատվեցին համակողմանի կապեր: Սակայն մասնավոր սեփականատիրության ծնած նացիոնալիզմն ու շովինիզմը արգելակում էին ազգերի ու ժողովուրդների մշակույթների մերձեցման պրոգրեսիվ տենդենցի զարգացումն ու խորացումը: Ճնշված ազգերի հետ մշակութային կապերը բուրժուազիան

օգտագործում էր որպես միջոց բռնի ասիմիլյացիայի և նրանց կուլտուրաների համահարթման համար։ Մշակույթների նկատմամբ տածած նման վերաբերմունքը հարուցում էր ազգային սահմանափակության միտում, սեփականը «մաքուր» վիճակում պահպանելու ձգտում։ Իրականում տեղական բուրժուազիան, ֆեոդալները, կղերականները մշակույթը «անաղարտ» պահելու նշանաբանով, ամեն կերպ կառչում էին հետադիմական կուլտուրայի սյուներին, որով և ակնհայտ էր դառնում կապիտալիզմի ջլատիչ դերը իսկական ազգային մշակույթների զարգացման ու փոխհարստացման գործում։

Կապիտալիզմի ստեղծած բազմաթիվ խոչընդոտներն ազգային մշակույթների մերձեցման ուղղությամբ հաղթահարվում են միայն սոցիալիստական հասարակարգի կառուցման ընթացքում։ Կուլտուրական մերձեցումը խորանում և ուժեղանում է սոցիալիստական հարաբերությունների զարգացման պրոցեսում։ Սոցիալիզմը լայն հնարավորություններ և ամենաբարենպաստ պայմաններ ստեղծեց մայրենի լեզվով համընդհանուր կրթության, գիտության, գրականության ու արվեստի, ազգային մշակույթների զարգացման համար, աննախընթաց աճեց ազգային մտավորականությունը։

Սովետական ազգերի մշակույթը բնորոշվում է էկոնոմիկայի ու գաղափարախոսության միասնականությամբ, իսկ արվեստում՝ իրականությունն արտացոլելու գեղարվեստական ճանաչման մեթոդի ընդհանրությամբ։ Սոցիալիզմի օրոք մարդկանց գիտակցության մեջ հաղթահարվում են անցյալի մնացուկները, ամրապնդվում սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, զարգանում մշակույթի ինտերնացիոնալիստական հիմքերը։ Տեղի են ունենում ազգերի ու ազգային մշակույթների ծաղկում ու մերձեցում, փոխազդեցություն ու փոխհարստացում։ Սոցիալիզմին հատուկ ազգերի ու ազգային մշակույթների զարգացման տենդենցները ներդաշնակորեն զուգորդվում են։

Սրանից մեկ տասնամյակ առաջ գրական շրջաններում գոյություն ուներ տեսակետ, թե ազգերի ծաղկումը սոցիալիստական հասարակության կարևոր օրինաչափություններից է, մինչ նրանց համագործակցությունը և մերձեցումը՝ հիմնական տենդենց։ Իրականում ազգերի մերձեցումն օրինաչափություն է, և ոչ սոսկ տենդենց։ Անհրաժեշտ է ընդգծել, որ սոցիալիզմի պայմաններում ազգերը ծաղկում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա։ Ուստի, նրանց ծաղկումն ու մերձեցումը միասնական պրոցեսի փոխադարձորեն շաղկապված կողմերն են։

Հայտնի է, որ սոցիալիստական հասարակարգում չկան հակադիր մշակույթներ։ Սոցիալիզմի պայմաններում ազգերը ձերբազատված են դասակարգային անտագոնիզմից, և բարեկամ դասակարգերի միջև պահպանված որոշ տարբերությունները կոմունիզմի կառուցման պրոցեսում աստիճանաբար անէանում են։ Գնալով ամրապնդվում է ազգերի սոցիալական միատարրությունը, հասարակության սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնությունը։

Մեզանում միասնական սոցիալական հիմքի վրա զարգանում են բոլոր ժողովուրդների արվեստներն իրենց ազգային ինքնատիպությամբ։ Ճիշտ չեն նրանք, ովքեր պնդում են, թե բոլոր ազգերի համար ընդհանուր կուլտուրայի ստեղծումը, ի վերջո նշանակում է ազգայինի տարրալուծումն ընդհանուրի մեջ։ Կոմունիզմի կառուցման պրոցեսում ազգային հանրությունները և նրանց մշակույթները լի են կենդանի ու հարուստ հնարներով։ Միևնույն ժամանակ



հարկ է նկատել, որ սոցիալիզմի դարաշրջանում ազգային հանրությունները դադարում են զարգացման միակ ձևը լինելուց։ Այստեղ միաժամանակ աճում ու ամրապնդվում է մարդկանց պատմական նոր, ինտերնացիոնալիստական հանրություն՝ սովետական ժողովուրդը։ Վերջինս կազմավորվեց արտադրության միջոցների հանրային սեփականության բազայի վրա, տնտեսական, սոցիալ-քաղաքական ու կուլտուրական կյանքի միասնության, մարքս-լենինյան գաղափարախոսության, բանվոր դասակարգի շահերի ու կոմունիստական իդեալների բազայի վրա,— ասված է կուսակցության Կենտկոմի՝ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին որոշման մեջ։

Սովետական մարդու բարոյական կերպարին բնորոշ են՝ նվիրվածությունը կոմունիզմի գործին, սոցիալիստական հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը, աշխատանքային ու հասարակական-քաղաքական բարձր ակտիվությունը, անհաշտությունը շահագործման ու ճնշման, ազգային ու ռասսայական նախապաշարմունքների նկատմամբ, դասակարգային համերաշխություն բոլոր երկրների աշխատավորության հետ։ Զարգացած սոցիալիստական հասարակարգում նյութական ու հոգևոր անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծված յուրաքանչյուր սովետական մարդու ստեղծագործական հնարավորությունների հետագա աճի, անհատի համակողմանի զարգացման համար։

Ահա թե ինչու այժմ արդեն բավական չէ խոսել ՍՍՀՄ-ում գեղարվեստական մշակույթների միայն փոխադարձ կապի, փոխազդեցության մասին։ Անհրաժեշտ է խոսել սոցիալիստական գեղարվեստական կուլտուրայի զարգացման ու հարստացման նոր, ավելի բարձր աստիճանի վերաբերյալ։

ՍՍՀՄ ժողովուրդների բնույթով սոցիալիստական կուլտուրաների գաղափարա-ստեղծագործական մերձեցման ու ծաղկման պրոցեսը տեղի է ունենում յուրաքանչյուր ժողովրդի, հասարակության, ինտերնացիոնալիստական հանրության սոցիալ-քաղաքական միասնության հիման վրա։ Դա է արդի էտապում սովետական բազմազգ արվեստի զարգացման բնորոշ հատկանիշը։

Սովետական ազգերի ու ժողովուրդների համար ինտերնացիոնալ գեղարվեստական մշակույթը տրամաբանական սխեմա չէ, այլ իրական փաստ։ Յուրաքանչյուր ժողովուրդ, պատշաճը ներդնելով համամիութենական մշակութային գանձարանում, հարստանում է նոր, համընդհանուր արժեքներով։ Իրոք, գեղարվեստական ո՛ր փորձի վրա պետք է հենվեին երիտասարդ գրականություն ունեցող ազգերի գրողները։ Չէ՛ որ միայն բանավոր գեղարվեստական ստեղծագործությամբ, ֆոլկլորով անհնարին էր ստեղծել գեղագիտական մտածողության այնպիսի մակարդակ, ինչպիսին այսօր նրանք ձեռք են բերել։ Ակնհայտ է, որ մեծ Հոկտեմբերից հետո քաղաքակրթության ասպարեզ եկած ազգերի արվեստագետները ստեղծագործական պրոցեսում ելնում են ինչպես սեփական ժողովրդի ավանդույթներից, այնպես և ողջ սովետական հարուստ մշակույթից։ Վերջինս արվեստի ազգային ձևերի, տեսակների, ժանրերի, կոլեկտիվ և անհատական գեղարվեստական ստեղծագործման անսպառ աղբյուր է։

Այժմ մեր երկրում ամեն մի տաղանդավոր արվեստագետի ստեղծագործության մոտիվներում ձգտում կա լումա ունենալ ընդհանուր սովետական մշակույթում։ Նման միտումը նպաստում է ունակությունների ծաղկմանը, խթանում գրողի, կոմպոզիտորի, գեղանկարչի և մյուս արվեստագետների հնարանքների դրսևորմանը։ Եթե արվեստագետը այդպիսի նպատակ չի հետապնդում, պարփակվում է լոկ ազգային տարերքի շրջանակներում, նրա գոր-

ծերը լայն արձագանք չեն ստանում։ Անհրաժեշտ է երևույթները դիտել ին-
տերնացիոնալ փորձի տեսանկյունից։ Այլ կերպ ասած, ամեն մի համամիու-
թենական ճանաչում ստացած ստեղծագործություն ազգային է, իսկ ոչ բոլոր
թենական ճանաչում ստացած ստեղծագործություն ազգային է, իսկ ոչ բոլոր
ազգային գործերն են գտնում համամիութենական արձագանք։ Մեծ գաղա-
փարներ ու հույզեր մարմնավորող ստեղծագործությունները, արտահայտելով
հարազատ ժողովրդի նվիրական ձգտումները, նպաստում են ողջ սովետական
հասարակության զարգացմանը։

Հասկանալի է, որ առանց կոնկրետ ազգային գեղարվեստական մշակույթ-
ների ուսումնասիրության անհնար է ըմբռնել միասնական սոցիալիստական
կուլտուրան։ Այն չի կարելի դիտել որպես վերազգային երևույթ, անկախ
ազգային արվեստներից։ Ուրեմն, սովետական գեղարվեստական մշակույթի
պատմությունն անհրաժեշտաբար ենթադրում է ազգային արվեստների, նը-
րանց զարգացման օրինաչափությունների ուսումնասիրություն։ Սովետական
մարդկանց ինտերնացիոնալ հոգևոր հանրությունն ընդլայնել է այն օրենքների
գործողության ոլորտները, որոնք դրսևորվում են ազգային հանրության մեջ։

Սովետական ինտերնացիոնալ գեղարվեստական մշակույթը, լինելով
բազմազգ, ոչ թե ազգային առանձին կուլտուրաների կոնգլոմերատ է կամ մե-
խանիկական գումար, այլ ամբողջական սոցիալ-հոգևոր օրգանիզմ։ Վերջինս
գործում է համաձայն ուրույն օրենքների, որոնք բնորոշ են միայն ինտերնա-
ցիոնալ հանրությանը։ Այդ օրենքներից է ՍՍՀՄ ժողովուրդների գեղարվեստա-
կան մշակույթների բազմակողմանի համագործակցումը և մերձեցումը։
կան մշակույթների բազմակողմանի համագործակցումը և մերձեցումը։

Այս օրինաչափությունը չի կարելի հանգեցնել նախկինում ստեղծված
սովորական մշակութային առնչություններին կամ հարևան ժողովուրդների
միջև հաստատված հոգևոր կապերին։ Նոր տիպի այս օրինաչափությունը
բնորոշ է սոցիալիստական ազգերի մշակույթին, որն արտահայտում է ժողո-
վուրդների հոգեհարազատությունը, նրանց միասնականությունը։ ՍՍՀՄ ժո-
ղովուրդների ընդհանուր գեղարվեստական մշակույթի ձևավորման պրոցեսն
ընթանում է միասնական ստեղծագործական մեթոդի՝ սոցիալիստական ռեա-
լիզմի հունով։

Հայտնի է, որ կապիտալիզմից և նախակապիտալիստական հարաբերու-
թյուններից դեպի սոցիալիզմ անցման շրջանում այդ օրենքը դրսևորվում էր
որպես տենդենց։ Անցման ժամանակաշրջանում յուրաքանչյուր ազգի մշա-
կույթի սոցիալիստական տարրերի և մյուս կողմից բուրժուական ու նախա-
կապիտալիստական տարրերի միջև տեղի ուներ սուր ու լարված պայքար։
Բացի այդ, դեպի միասնական սոցիալիստական կուլտուրան ՍՍՀՄ ժողո-
վուրդներն ընթացել են ունենալով գեղագիտական տարբեր մակարդակներ,
որը բացատրվում է նախահոկտեմբերյան շրջանում նրանց անհամաչափ զար-
գացմամբ։

Անցման ժամանակաշրջանում ազգային մշակույթների փոխազդեցության
պրոցեսում գլխավորը զարգացած ժողովուրդների օգնությունն էր ետ մնա-
ցածներին։ Այդ պայմաններում գործում էր ազգային գեղարվեստական մշա-
կույթների մակարդակների հավասարեցման օրենքը։ Բնական է, որ այդ պրո-
ցեսը տեղի էր ունենում ոչ թե զարգացած ազգային արվեստների գեղագիտա-
կան որակի իջեցման հաշվին, այլ թերզարգացած ազգային մշակույթները
հարստանում էին առավել հասուն ազգային գեղարվեստական արժեքներով։
Այդ պրոցեսը չպետք է պարզունակ մեկնաբանել, թե որոշ ազգեր տալիս են,



մյուսները՝ վերցնում։ Բավական է խորամուխ լինել սովետական ժողովուրդ-
ների գեղարվեստական մշակույթների ժամանակակից նվաճումների մեջ, որ-
պեսզի հասկանալի դառնա այդ փոխազդեցությունների երկկողմանի բնույթը։
պեսզի հասկանալի դառնա այդ փոխազդեցությունների երկկողմանի բնույթը։

Առաջին շրջանում տեղի ուներ ոչ թե ույժերի, թեմաների և այլ մի-
ջոցների փոխանակում, այլ կազմավորվում էր միասնական, սոցիալիստական
մշակույթը, բուռն զարգանում էին սոցիալական կապերը, որոնք արվեստի
առջև դնում էին նոր, առավել բարդ խնդիրներ, թեմաներ, պրոբլեմներ։ Բա-
րեկամական փոխգործողության, ստեղծագործական օգնության հիման վրա
ազգային գեղարվեստական մշակույթներում ի հայտ եկան ու բացահայտվե-
ցին նոր հնարավորություններ ու երևույթներ, որոնք, բացառելով իրենց դարն
ապրած ավանդույթները, սոցիալիստական աշխարհըմբռնման շնորհիվ հա-
սան ստեղծագործական նոր բարձունքների։

Սակայն անցման շրջանում հիմնականը քաղաքակրթության առաջընթա-
ցից ետ մնացած ժողովուրդների մշակույթների առաջմղումն էր և այնտեղ
եղած առաջավոր, դեմոկրատական միտումների խթանումը, որոնք համընկ-
նում էին սոցիալիստական իրականության չափանիշներին, նոր մարդու պա-
հանջմունքներին։

Կոմունիստական շինարարության արդի փուլում շարունակվում է ժողո-
վուրդների գեղարվեստական զարգացման մակարդակների հավասարեցման
պրոցեսը։ Երիտասարդ գիր ու գրականություն ունեցող ժողովուրդները պատ-
մական կարճ ժամանակամիջոցում անցան գեղարվեստական զարգացման հա-
րուստ ուղի և նշանակալից ավանդ ունեն մեր երկրի հոգևոր մշակույթի գան-
ձարանում։

Առաջ ՍՍՀՄ ժողովուրդների արվեստում ազգային առանձնահատկություն-
ներն ավելի ցցուն էին արտահայտվում։ Դա բխում է կյանքի պայմաններից,
հասարակական, գեղագիտական զարգացման մակարդակից, մշակված հոգե-
բանությունից, ժառանգած ավանդույթներից։
բանությունից, ժառանգած ավանդույթներից։

Այժմ պատկերը ուրիշ է։ Միատիպ, բովանդակությամբ սոցիալիստական
մշակույթների համագործակցումը տեղի է ունենում միանման հիմքի վրա,
երբ հիմնականում ավարտված է ազգային գեղարվեստական արժեքների մա-
կարդակների հավասարեցումը։ Արդ ակնհայտ են դարձել Սովետական Միու-
թյան ժողովուրդների միասնական ընտանիքին բնորոշ ընդհանուր գծերը ոչ
միայն առօրյա կյանքում, այլև նրանց գիտակցության, հոգեկան խառնվածքի,
գեղարվեստական մշակույթի մեջ։ Ավելի բովանդակալից են դարձել բոլոր ազ-
գությունների մարդկանց զգացումները, հարստացել նրանց բանաստեղծական
երևակայությունը, իրականության էական կողմերի ճանաչման միջոցները,
կատարելագործվել գեղարվեստական արտահայտման ձևերը։ Այն ժողովուրդ-
ները, որոնք Հոկտեմբերից առաջ օժտված էին բանահյուսության պարզունակ
ձևերով, ներկայումս, օրինակ, գրականության մեջ կիրառում են հոգեբանա-
կան վերլուծության բազում տարբերակները։ Գեղագիտական նման առաջըն-
թացը, անշուշտ, ընդլայնել է նրանց ինքնաճանաչման հնարավորությունները։
Սակայն կուտակված փորձը միաժամանակ բարդացրել է իրականության ար-
տացոլման հնարներն ու միջոցները։

Գեղագիտական նոր արտահայտչաձևերի առաջացումը պայմանավորվում
է ժողովրդի սոցիալ-պատմական և ազգային կյանքի հատկանիշներով, իր
դրոշմը դնելով նրա էսթետիկական ընկալման վրա։ Ազգային առանձնահատ-

կությունները դրսևորվում են կերպարների և պատկերացումների յուրօրինա-
կության մեջ, կազմելով գեղարվեստական ստեղծագործության հուզական են-
թատեքստի տարրերը, որոնք ազգային հանրության կողմից սովորական ու
շատ հարազատ են ընկալվում: Միևնույն ժամանակ այդ կերպարներն ու
պատկերացումները, գեղարվեստական մտածողության ձևերն ու հնարները ժո-
ղովուրդները իրարից չեն անջատում, քանի որ նրանք արտահայտում են ար-
վեստի սոցիալիստական բովանդակությունը, ուր մարմնավորված են ինտեր-
նացիոնալիզմի գաղափարներով տոգորված խոհեր ու հույզեր, որոնք հաս-
տատուն տեղ են գտել ազգային կեցության ու գիտակցության մեջ:

Կյանքը, սոցիալական ու գեղարվեստական զարգացման պատմական օրի-
նաչափությունները պահանջում են առավել ուշադրություն նվիրել սովետա-
կան ժողովուրդների մշակույթների ինտերնացիոնալ հիմքին, համակողմանի
ամրապնդել սովետական մարդկանց հոգևոր հանրությունը: ՍՍՀՄ ժողովուրդ-
ների փորձը հաստատում է, որ ազգային գեղարվեստական մշակույթների
ծաղկումը հանգեցնում է նրանց ինտերնացիոնալ միասնության ամրապնդման:
Մեզանում շատ գեղարվեստական երևույթներ առաջացել են ոչ թե մի ժողո-
վրդի կողմից մյուսի արժեքների յուրացմամբ, այլ սովետական բոլոր ժողո-
վուրդների կոլեկտիվ փորձի հիման վրա: Ակնհայտ է, որ միասնական ինտեր-
նացիոնալ փորձը առավել նշանակալից ու հարուստ է, քան ցանկացած տեղա-
կան, ազգային փորձը: Անհրաժեշտ է տեսնել այդ տենդենցների ներքին փո-
խադարձ կապը, ոչ միայն պատմական տվյալ էտապում, այլև դրանց ինտեր-
նացիոնալ միասնության հարաճուն նշանակությունը ՍՍՀՄ ժողովուրդների
կյանքում: Հոգևոր կյանքում ինտերնացիոնալիստականի ու ազգայինի զար-
գացման օրենքները դիալեկտիկական միասնություն են և ոչ թե մեխանիկա-
կան նույնություն: Իհարկե, սխալ կլիներ ազգային հանրության և վերջինիս
գեղարվեստական մշակույթի վրա ինքնաբերաբար տարածել ՍՍՀՄ ժողո-
վուրդների ինտերնացիոնալ հանրության և ինտերնացիոնալ մշակույթի օրի-
նաչափությունները:

Սովետական ինտերնացիոնալ մշակույթը, քննադատաբար յուրացնելով
համաշխարհային-պատմական գեղարվեստական փորձը, համաշխարհային
արվեստի զարգացման բոլոր փուլերի փորձը, զարգանում է սեփական, սո-
ցիալիստական հիմքի վրա: Ինչպես արդեն նշվեց, ՍՍՀՄ շատ ժողովուրդների
արվեստները չեն անցնում այն փուլերը, որոնք բնորոշ են մարդկության գե-
ղարվեստական զարգացմանը: Չեն անցնում, որովհետև հնարավորություն
ունեն հենվելու ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների ընդհանուր, ինտերնացիոնալ գե-
ղարվեստական մշակույթի վրա: Սակայն դրանով նրանց ազգային առանձ-
նահատկությունը չի աղքատանում, ընդհակառակը հարստանում է: ՍՍՀՄ ժո-
ղովուրդների արվեստները հոգեպես ավելի են հարստանում, բազմակերպ են
դառնում դրանց ազգային գույներն ու ձևերը:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիմքի վրա ազգային արվեստների
ստեղծագործական համագործակցումը բարենպաստ պայմաններ է ստեղծում
դրանց արագ զարգացման համար: Մի բան, որ անցյալում հարյուրամյակներ
էր պահանջում, սոցիալիզմի օրոք սովետական ժողովուրդները անցան մի քա-
նի տասնամյակների ընթացքում:

Սովետական բազմազգ ժողովուրդը սոցիալ-տնտեսական առաջընթացի
հետ մեկտեղ, անժխտելի նվաճումներ է ձեռք բերել մշակույթի բնագավառում:



Երևանական թվականներին ստեղծվեցին թուրքմենական, չուվաշական, յա-
կուտական վեպերը, հիսունական թվականներին երևան եկան կիրգիզների,
բաշկիրների, Հյուսիսային Կովկասի, Դաղստանի ժողովուրդների վեպերը:
Հայտնի է, որ գեղարվեստական արձակը ժողովուրդների գեղարվեստական
հասունության կարևոր փուլ է, վերջինիս նախորդում են հռետորական, հրա-
պարակախոսական կամ հռետորական-բարոյախոսական և նկարագրական
ստեղծագործությունները, հետո առաջանում է պոեմը (հաճախ պատմա-բա-
նահյուսական մոտիվներով), ապա ծնվում են ազգային պիեսը, դրաման:
Արձակի, առանձնապես վեպի ծագումը,— նկատել է անվանի գրականագետ
Կ. Զելինսկին,— տեղի է ունեցել ամենից ուշ (տե՛ս Проблемы реализма в
мировой литературе, М., 1959, стр. 134): Տվյալ հետևության մեջ ուշա-
դրություն է նվիրվում գեղարվեստական մշակույթի զարգացման ընդհանուր
տենդենցին, օրինաչափությանը, որը չի բացառում տարբեր ժողովուրդների
մոտ գեղարվեստական ձևերի առաջացման այլ կարգ:

Սոցիալիստական իրականության պայմաններում ազգային գեղարվես-
տական մշակույթների մերձեցումը և փոխգործողությունը զգալի կրճատում
կամ ի չիք են դարձնում դրանց պատմա-գեղագիտական զարգացման փուլերի
միջև եղած տարբերությունը: Գեղարվեստական մշակույթների արագ զարգա-
ցումը դրսևորվում է ոչ միայն տեմպերի, ժամանակների «խտացման» մեջ:
Այն արտահայտվում է նաև նրանում, որ գեղարվեստական մշակույթները
սոցիալիստական հիմքի վրա հնարավորություն ունեն խուսափելու դասակար-
գային սուբյեկտիվիզմի, ֆորմալիզմի և այլ օտարածին տարրերից, ինչպես և
«բնական» խոչընդոտներից, որոնք երևում են արվեստի առաջընթացի ոչ ուղ-
ղագիծ հունում:

Կեսդարյա փորձը լիիրավ հավաստում է, որ գոյություն ունեն ՍՍՀՄ ժո-
ղովուրդների սոցիալիստական ռեալիզմի արվեստի ընդհանուր ավանդույթ-
ներ, որոնք մարմնավորում են սովետական ժողովուրդների միասնական գե-
ղարվեստական փորձը և հարուստ են յուրաքանչյուր ժողովրդի ազգային
ավանդույթներից: Ավելին, սովետական գեղարվեստական մշակույթն իր
մեջ չի տարրալուծում, այլ յուրացնում, ստեղծագործաբար վերամշակում է աշ-
խարհի բոլոր ժողովուրդների գեղարվեստական փորձը, այն բոլորը, ինչ
համընկնում է սոցիալական ու գեղագիտական առաջընթացին:

Սովետական գեղարվեստական մշակույթը միասնական է սոցիալիստա-
կան նպատակներով, իրականության արտացոլման գաղափարա-ստեղծագոր-
ծական սկզբունքներով՝ գեղարվեստական մեթոդով: Սոցիալիստական ռեա-
լիզմը, խորապես կապված լինելով ազգային մշակույթների արմատների հետ,
իր բնույթով, անշուշտ, ինտերնացիոնալ երևույթ է, իրականության գաղա-
փարագեղարվեստական ճանաչման ու բացատրման նոր տիպ: Այդ մեթոդի
տեսական անկյունաքարը մարքս-լենինյան աշխարհայացքն է, որի մեկնակե-
տից են գեղարվեստորեն արժեքավորվում իրական կյանքը, մարդկային հա-
րաբերությունները:

Սովետական մարդկանց գեղագիտական պահանջմունքները, իդեալը,
ընդհանուր են մեր երկրի բոլոր ժողովուրդների համար: Սոցիալ-տնտեսական
ու գաղափարա-մշակութային ոլորտներում միատարրության հաստատումը,
սովետական ժողովուրդների կյանքում արմատավորեցին ընդհանուր գեղա-
գիտական չափանիշներ: Այստեղ, իհարկե, չպետք է անտեսել այն ժառանգա-

*կան կապը, ինքնատիպ արժեքները, որոնք բնորոշ են յուրաքանչյուր ազգին։ Գեղարվեստական ստեղծագործության ժամանակակից ավանդույթները հենվում են անցյալի այն արժեքների վրա, որոնք արձագանքում են արդիականության ոգուն, համահնչուն են ժամանակի կենսաթրթիռ խնդիրներին։ Սովետական կարգերի օրոք առաջացած գեղարվեստական նոր ավանդույթները անխզելիորեն կապված են հասարակական կյանքում տեղի ունեցած խոր փոփոխությունների հետ։*

*Մեր երկրում բովանդակությամբ ինտերնացիոնալիստական, սոցիալիստական գեղարվեստական մշակույթը հենվում է մարդկության նախորդ սերունդների ստեղծած արժեքների վրա։ Այն յուրացնում է ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ժողովուրդների նվաճումները, առաջադիմական գեղարվեստական փորձը, որոնք օգնում են կյանքում ամրապնդելու սոցիալիստական ու կոմունիստական սկզբունքներ։ Անհրաժեշտ է տեսնել ոչ միայն սոցիալիստական գեղարվեստական մշակույթի ընդհանուր օրենքները, այլև դրանց դրսևորումները տարբեր ազգային մշակույթներում։ Ինտերնացիոնալ հանրության ընդհանուր օրենքները, բեկվելով ազգային առանձնահատուկի միջով, վերածվում են ազգային գեղարվեստական մշակույթի ներքին օրենքների։ Այդ բարդ կապակցությունների հյուսվածքում միախառնվում է անցյալի ու ներկայի, ազգայինի ու ինտերնացիոնալիստականի փորձը։*

*Նման փոխգործողությունը ոչ թե ակնթարթային պահ է, այլ տևական պրոցես։ Այստեղ պետք է վեր հանել վերջինիս փուլերը, սպեցիֆիկ ձևերը, մինչև ի հայտ չգա այն նորը, որը նախկինում չի եղել ոչ ազգային, ոչ ինտերնացիոնալ մշակույթում և արձագանքում է ժամանակակից կյանքի ու գեղարվեստական զարգացման պահանջներին։ Ի վերջո, այդ նորը ազգային մշակույթներում նոր բնույթ է ստանում, ուր արդեն դժվար է փնտրել անցյալի փորձի հետքերը։ Այստեղ անցյալի փորձը գոյություն ունի արդեն փոխակերպված ձևում և հանդես է գալիս ոչ թե հեշտ նշմարելի արտաքին հատկանիշ, այլ պահպանվում է երևույթի խորքում։ Դառնալով ազգի պատկանելիությունը, այդ նորը ծավալվում է, հանդես գալով, որպես գեղարվեստական մշակույթի զարգացման հզոր ազդակ և իր հերթին ներգործում է ինտերնացիոնալ փորձի, ՍՍՀՄ ժողովուրդների, համայն մարդկության գեղարվեստական զարգացման վրա։*

*ՍՍՀՄ ժողովուրդների ազգային գեղարվեստական մշակույթը, ազատագրվելով աղքատիկ ձևերից, գեղագիտական զարգացման պրոցեսում հասել է պրոֆեսիոնալ բարձր կատարելության։ Ստեղծագործական որոնումների ընթացքում ի հայտ են գալիս ազգային և ինտերնացիոնալիստական գծեր, որոնք գեղարվեստական արժեքները հարստացնում են նոր հատկանիշներով։*

*ՍՍՀՄ ժողովուրդների արվեստում որոշակի ոճական ընդհանրությունը, սովետական ազգերի ու ժողովուրդների ներքին կապը, նրանց ձգտումը յուրացնելու միասնական ընտանիքի գեղարվեստական մշակույթը, զարգացած սոցիալիստական հասարակարգի օրինաչափություններից են։*

---

Մ. Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

# ԱՐԴԻ ԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԻՄՔԸ

Նեոգաղութատիրության վերաբերյալ վերջին տասը տարում կուտակված նյութը հիմք է տալիս պնդելու մեր դարաշրջանի այդ երևույթի էական տարբերությունները նրա նախորդ ձևից՝ իմպերիալիզմի գաղութային սիստեմից, որն ընդգրկել էր գաղութատիրական քաղաքականության ոլորտները: Բայց այդ տարբերությունները չեն բացառում գաղութակալության ձևերի մի որոշ հաջորդականություն, առանձնապես տնտեսական ոլորտում, որտեղ կախյալ վիճակի խոր կապերը, ինչպես նաև իմպերիալիզմի տնտեսական շատ դիրքեր պահպանվել են գաղութային ռեժիմների վերացումից հետո:

Հենց այդ պատճառով տնտեսական գործոնն այսօր վճռական դեր է խաղում նեոգաղութատիրական հարաբերություններում: Չունենալով քաղաքական ճնշման բավարար միջոցներ, նեոգաղութատիրությունը շարժման մեջ է դնում տնտեսական լծակները: Կորցնելով քաղաքական տիրապետության էական հիմքերը, նա ամենակատաղի դիմադրություն է ցույց տալիս տնտեսական ոլորտում, որի հետ են կապված իմպերիալիզմի հույսերը՝ փրկել կապիտալիստական տնտեսական սիստեմը նոր կորուստներից: Այսպիսով, նեոգաղութատիրության նյութական հիմքերի ուսումնասիրությունը կօգնի ավելի խոր ըմբռնելու նրա էությունը, առանձնահատկությունները ու զարգացման տենդենցները, ինչպես նաև զարգացող երկրների ժողովուրդների հակաիմպերիալիստական շարժման բովանդակությունը:

Ինչպես տիրապետող, այնպես էլ ստրկացված ժողովուրդների արտադրեղանակը պայմանավորել է նաև շահագործման եղանակը: Ինչպես նկատել է Կ. Մարքսը, զարգացած բուրային սպեկուլյացիա ունեցող ազգը չի կարող կողոպտըվել այնպիսի եղանակով, ինչպես խաշնարած ազգը (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 12, стр. 723—724): Գաղութատիրական քաղաքականության մեջ իրենց արտահայտությունն են գտել նաև տարբեր ձևերով իշխող դասակարգերի շահերը, ստրկատիրական հասարակության, ֆեոդալիզմի, կապիտալիզմի սոցիալ-տնտեսական բնույթը: Ինչ վերաբերում է նեոգաղութարարությանը, ապա նրա նյութական հիմքերը իմպերիալիզմի տնտեսական հարաբերությունների բաղկացուցիչ օրգանական մասն են, համապատասխանորեն արտահայտում են նրա տնտեսական հարաբերությունների զարգացման հիմնական տենդենցները՝ պետական մոնոպոլիստական տենդենցների ուժեղացումն իմպերիալիզմի զարգացման մեջ, նրա ընդհանուր ճգնաժամի խորացումը, երկու սիստեմների տնտեսական մրցությունը, կապիտալի արտահանումը և այլն:

Նեոգաղութարարության նյութական հիմքերը բաղկացած են հետևյալ երկու կողմերից. ա) երիտասարդ երկրների տնտեսական հետամնացությունը, թույլ զարգացածությունը. բ) դրանց տնտեսական կախվածությունն իմպերիալիզմի բարձր զարգացած էկոնոմիկայից:

Այժմ համառոտակի պարզաբանենք այդ երկու կողմերը:

Հետամնացությունը սոցիալ-տնտեսական երևույթ է, որն արտահայտում է արտադրաուժերի թույլ զարգացածությունը, բնակչության մեկ շնչին ընկնող ազգային եկամտի ցածր մակարդակը և այլն, բայց իրականում անմիջականորեն պայմանավորված է հետամնաց արտադրահարաբերություններով, որոնք ազգային էկոնոմիկայի զարգացումը տանում են դեպի լճացում, այսինքն՝ զրկում են տեխնիկա-տնտեսական հետամնացությունը վերացնելու հնարավորություն ընձեռող գործոններից ու պայմաններից:

Երիտասարդ զարգացող երկրների տնտեսական կառուցվածքի առանձնահատկությունն այն

է, որ այստեղ առկա է կայուն, այլ ոչ թե ժամանակավոր, անցողիկ սոցիալ-տնտեսական բազմակացութաձևություն, և բուն կացութաձևերն իրենց դարն ապրած արտադրաեղանակների մնացորդներ չեն, այլ գոյակցող խոշոր և ուժեղ կացութաձևեր, որոնք պատկանում են սկզբունքորեն տարբեր սոցիալ-տնտեսական տիպերի:

Այս երկրներում գերիշխում են օտարերկրյա (սովորաբար մոնոպոլիստական), տեղական մասնավոր, կապիտալիստական ձեռնարկությունների ստորին (մինչև ֆաբրիկային և դրանց նման) ձևերը (տե՛ս А. Н. Левковский. Третий мир в современном мире, М., 1970, стр. 12): Սակայն ընդհանուր տնտեսական կառուցվածքում կապիտալիստական կացութաձևի գրաված տեղը պայմանավորված է կոնկրետ երկրի զարգացման մակարդակով: Կապիտալիստական հարաբերությունները էական տեղ են գրավում Լատինական Ամերիկայի և Ասիայի ու Աֆրիկայի մի շարք երկրներում: Իսկ Ասիայի և Աֆրիկայի երկրների մեծ մասում դեռևս գոյություն ունեն կիսաֆեոդալական կամ նախնադարյան-համայնական հարաբերություններ: Սակայն դրանք դրսևորվում են խիստ վերափոխված ձևով: Զուտ ֆեոդալական ու նախնադարյան-համայնական ձևի հարաբերություններ արդեն ոչ մի տեղ գոյություն չունեն, դրանք ներծծվում են կապիտալիստական հարաբերությունների մեջ և ձևափոխվում են դրանց ազդեցությամբ: Տիրապետող խավերն ու դասակարգերը յուրացնում են շահագործման կապիտալիստական մեթոդները, դրանք զուգորդելով տրադիցիոն մեթոդներին (տե՛ս Политическая экономика современного монополистического капитализма, 2, М., 1970, стр. 235): Տեղի է ունենում ֆեոդալական և տոհմա-ցեղային վերնախավի վերասերում կամ կատարյալ քայքայում (հատկապես Աֆրիկայում), կամ բուրժուականացում (Ասիայում և Լատինական Ամերիկայում):

Բազմակացութաձևության հետ են կապված դասակարգային բարդ կառուցվածքը և զանազան տիպի ավանդութային անջրպետներ՝ ազգային, ռասայական, կրոնական և կաստայական մեկուսի խմբերը: Ընդ որում, ավանդույթային ինստիտուտներն ու հարաբերությունները կենսունակ են և զգալիորեն նպաստում են բազմակացութաձևության հարատևմանը, նրա մասերի մեկուսացածությանը: Զարգացող երկրներում, սովետական գիտնականների հաշվարկումներով, գործունակ բնակչության 30 տոկոսը (200 *մլն* մարդ) աշխատում է վարձով: Նրանց 46 տոկոսը գյուղատնտեսական բանվորներ են, 26-ը զբաղված են արդյունաբերության մեջ, շինարարությունում, տրանսպորտում և 28-ը՝ սպասարկման և առևտրի ոլորտներում (տե՛ս «Мировая экономика и международные отношения», 1969, № 2, стр. 155): Այս փաստը վկայում է, որ բազմակացութաձևությունը հիմնականում դրսևորվում է ագրարային հարաբերություններում, որոնք, միակողմանի նյութային կառուցվածք ունենալով հանդերձ, ամբողջությամբ վերցրած, բնորոշվում են աշխատանքի ցածր արտադրողականությամբ, բնակչության մեկ շնչին ընկնող ազգային եկամտի ցածր մակարդակով, հարաբերական վերաբնակեցմամբ, բնակչության մեծամասնության աղքատությամբ ու անգրագիտությամբ: Այդ հարաբերությունների հետ են կապված արտադրամիջոցների, աշխատանքի պրոցեսի պրիմիտիվությունը և այլն:

Հետամնացությունն էլ հենց կանխորոշում է երիտասարդ երկրների կախյալ վիճակը իմպերիալիզմի բարձր զարգացած էկոնոմիկայից, իսկ այդ հանգամանքը, վերջին հաշվով, իմպերիալիստական երկրների համար հիմք է ծառայում ո՛չ միայն նյութականացնելու, այլև կոնսերվացնելու այդ հետամնացությունը:

Կախյալ վիճակը երկակի ասպեկտ ունի՝ ա) ներքին, որն ընդգրկում է առանձին ազգային պետությունների ներքին տնտեսական հարաբերությունները. բ) միջազգային, որն ընդգրկում է կապիտալիստական տնտեսության ամբողջ սիստեմի, համաշխարհային շուկայի շրջանակներում գոյություն ունեցող հարաբերությունները: Կախյալ վիճակի հետևանքով երիտասարդ ազգային պետությունները համաշխարհային կապիտալիստական տնտեսության մեջ խաղում են «համաշխարհային գյուղի» դեր, իսկ իմպերիալիստական տերությունները պահպանում են մենաշնորհը էկոնոմիկայի վճռական բնագավառներում, ռազմական գործում, քաղաքականության մեջ: Այդ պատճառով մոնոպոլիստական կապիտալն իր ձեռքում է պահում անհավասար հարաբերությունների միջազգային մեխանիզմը արտադրության մեջ, առևտրում, հանդես է գալիս որպես տեղական բանվորական ուժի «սովորական» շահագործող: Բայց «սովորական» կապիտալի այդ դերում ևս նա գործում է որպես միջազգային կապիտալի մի մասը, շահույթի համար տեղում օգտվելով ո՛չ միայն արդեն ստեղծված անհավասար հարաբերություններից, այլև ակտիվ աջակցում է այդ դրության պահպանմանը: Նա կարող է, օրինակ, խիստ ճնշում գործադրել ազգային կառավարությունների վրա, կաշառել չինովնիկներին, կազմալուծել ներտնտեսական կյանքը և այլն:

Անհրաժեշտ է ընդգծել, որ տվյալ դեպքում խոսքը վերաբերում է ո՛չ թե ամեն մի տնտեսական կախվածության (օրինակ, Կանադան՝ ԱՄՆ-ից), այլ նրա գաղութային բովանդակությանը: Այդ առանձնահատկությունը կարելի է



բացահայտել՝ վերլուծելով համաշխարհային կապիտալիստական տնտեսությունը որպես մի ամբողջություն, որի ընդերքում գործում են որոշակի տնտեսական հարաբերություններ:

Ներկապիտալիստական տնտեսական հարաբերությունների նյութական հիմքը աշխատանքի միջազգային բաժանումն է, ինչպես արտադրության մեջ, այնպես էլ բաշխման, փոխանակության և սպառման բնագավառներում: Զարգացած կապիտալիստական երկրներում կենտրոնացած են հիմնական արտադրամիջոցները, որակյալ բանվորական ուժի զգալի մասը: Թույլ զարգացած երկրների արտադրության վճռական դիրքերը պատկանում են օտարերկրյա կապիտալին:

Կապիտալիստական զարգացած երկրներն իրենց ձեռքում են պահում ինչպես արտադրության, այնպես էլ բաշխման մենաշնորհը: Երիտասարդ երկրների արտադրա-տնտեսական միակողմանի կառուցվածքը, նրանց տնտեսության մոնո-կուլտուրային մասնագիտացումը համաշխարհային շուկայում, նրանց համար ստեղծում է կախյալ վիճակ:

Վերջին ժամանակներս մոնոպոլիստական ընկերությունները թույլ զարգացած երկրների էժան բանվորական ուժի շահագործումից տարեկան ստանում են 4—6 *մլրդ* դոլար շահույթ: Միջազգային շուկայում ոչ համարժեքային փոխանակության հետևանքով թույլ զարգացած երկրները տարեկան կորցնում են մոտավորապես 13—15 *մլրդ* դոլար: Ա. Արզումանյանի հաշվարկումներով, երկակի շահագործման հետևանքով 60-ական թվականների սկզբին երիտասարդ երկրների ընդհանուր կորուստները կազմել են տարեկան 17—20 *մլրդ* դոլար (տե՛ս «Правда», 17 դեկտեմբերի 1961 թ.):

Այսպիսով, երիտասարդ երկրների հետամնացության և կախյալ վիճակի ընդհանուր պայմանները միակցվում են համաշխարհային կապիտալիստական տնտեսության մեջ և կազմում փոխպայմանավորվածության մի արատավոր շրջան: Ըստ որում, երկու կատեգորիայի երկրների զարգացած մակարդակներում դրսևորվում է ճեղքվածքի մեծացման վտանգավոր տենդենց: 1960—1966 թթ. իմպերիալիստական երկրներում բնակչության մեկ շնչի հաշվով ազգային արտադրանքն աճել է՝ միջինը, 292, իսկ Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրներում՝ 12 դոլար (տե՛ս «Мировая экономика и международные отношения», 1968, № 10, стр. 41): 1969 թ. զարգացած կապիտալիստական երկրներում բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի տարեկան աճը կազմել է 5,2 տոկոս, իսկ զարգացած երկրներում՝ 2 տոկոսից մի քիչ ավելի: Այսօր Ասիան և Աֆրիկան բնակչության մեկ շնչին ընկնող արտադրության մակարդակով ԱՄՆ-ին զիջում են 30—33 անգամ, իսկ մի շարք երկրների՝ ավելի շատ: Բնակչության մեկ շնչին ընկնող ազգային եկամուտը ԱՄՆ-ում, օրինակ, կազմում է 3303 դոլար, Հնդկաստանում՝ 77, Ինդոնեզիայում՝ 91, Պակիստանում՝ 108 դոլար (տե՛ս նույն տեղը, № 11, 1970 թ., էջ 156):

Զարգացման նման տեմպերի դեպքում երիտասարդ երկրների տնտեսական կարողությունը զարգացած կապիտալիստական երկրների մակարդակին հավասարեցնելու նպատակով կպահանջվի 400 տարի: Այդ խնդիրը 50 տարվա ընթացքում լուծելու համար անհրաժեշտ է ազգային եկամտի տարեկան 7,5 տոկոսի աճ (տե՛ս Վ. Մ. Կոլոնտայ, նշված երկը, էջ 88): Սակայն համաշխարհային կապիտալիստական տնտեսության պայմանները բացառում են աճի այդպիսի տեմպեր:

Հետամնացության և կախյալ վիճակը երիտասարդ երկրների հասարակական կյանքի կենտրոնական պրոբլեմն է: Տնտեսական և քաղաքական մի շարք նկատառումներով դրա վրա իրենց ուշադրությունն են սևեռում նաև նեոգաղութարարության ստրատեգները: Գիտատեխնիկական արդի հեղափոխության պայմաններում երիտասարդ երկրների համակողմանի ետ մնալը, սոցիալական դանդաղ վերափոխությունները նվազեցնում են նրանց տնտեսական դերն ու նշանակությունը աշխատանքի համաշխարհային բաժանման և առևտրի մեջ: Այդ երկրների տնտեսական նշանակության բարձրացումը կախյալ վիճակում մնաց դրանց տնտեսական ու սոցիալական կառուցվածքի արդիականացումից: Այսպես, առանձին ձեռնարկություններում արտադրության նորմալ ընթացքը, աշխատանքի արտադրողականության աճը, շուկայի ընդլայնումը, և, ամբողջությամբ վերցրած, ընդլայնած վերարտադրության բարձր տեմպերն ապահովելու խնդիրը բախվեցին բարձրորակ բանվորական ուժի կազմավորման անընդունակության հետ: Տնտեսական և վարչա-քաղաքական միջոցներով ավանդույթային կացութաձևերից բանվորական ուժ ներգրավելը ցանկալի արդյունք չի տալիս, որովհետև այդ եղանակով հավաքագրված բանվորը թե՛ հոգեբանորեն, թե՛ տնտեսապես, թե՛ հարազատական կապերով շաղկապված է մինչկապիտալիստական կացութաձևին և նա չի ընդունում աշխատանքի կարգապահությունը ձեռնարկությունում, իր համար խորթ միջավայրում տևական աշխատանքի ու որակավորում ստանալու անհրաժեշտությունը: Աշխատանքային կարգապահության ենթարկվելը նա համարում է ժամանակավոր և հարկադրական, դրամական

միջոցներ կուտակելու հնարավորությունը դիտում որպես պայման՝ արտադրությունից հեռանալու և իր սովորական միջավայրն ու կացութաձևը վերադառնալու համար (տե՛ս մանրամասն Третий мир. Стратегия развития и управления экономикой, М., 1971, стр. 11—13): Ավանդույթային հասարակական կապերի հետ շաղկապված նման պրոբլեմները շատ են:

Չի կարելի, իհարկե, չափազանցնել նեոգաղութարարության շահագրգռվածությունը «երրորդ աշխարհի» սոցիալ-տնտեսական կառուցվածքի արդիականացման հարցում: Տնտեսական դրդապատճառները, որ նեոգաղութարարության էքսպանսիայի երբեմնի էական խթաններն էին, երկրորդ պլանն են մղվում: Նեոգաղութարարության էությունը դժվար կլինի բացահայտել, եթե աչքաթող անենք, որ նա պատրաստ է նույնիսկ հրաժարվել որոշ տնտեսական շահերից, հանուն այն բանի, որ երիտասարդ երկրները մնան կապիտալիստական տնտեսության սիստեմում և այն պաշտպանեն նոր կորուստներից ու ցնցումներից: Երիտասարդ երկրների առջև ոչ կապիտալիստական ուղիով զարգանալու իրական հեռանկարը փակելու համար, մի ուղի, որն ունակ է իսկապես ցնցել ու ցնցում է ամբողջ կապիտալիստական սիստեմը, նեոգաղութարարությունը ձգտում է հնարավորին չափ ավելի լիակատար քաղաքական վերահսկողություն սահմանել այդ երկրների կառավարությունների նկատմամբ, մասնակցել դրանց քաղաքականության, առաջին հերթին, տնտեսական քաղաքականության ձևավորմանը, այլապես հնարավոր չէ դրանց կապիտալիստական կարգեր պարտադրել, ոչ էլ պահել մոնոպոլիաների՝ այսօր դեռևս ուժեղ, տնտեսական դիրքերը այդ երկրներում: Առանց հաստատուն սոցիալական դաշինք կնքելու նոր ուժերի, առանձնապես քաղաքական կյանքի թատերաբեմ բարձրացող ռեֆորմիստորեն տրամադրված ազգային բուրժուազիայի շրջաններից ելած ուժերի հետ հնարավոր չէ իրականացնել գաղութատիրական այդ նոր ստրատեգիան: Հետամնաց սոցիալ-տնտեսական կացութաձևեր ներկայացնող ուժերը, որոնք մի ժամանակ գաղութատիրական ռեժիմի սոցիալական բազան էին կազմում, ընդհակառակը, արգելակում են այդ ուղին:

«Երրորդ աշխարհի» հեղափոխական և հայրենասիրական ուժերը կողմնակից են ոչ կապիտալիստական զարգացման ուղիներով քաղաքական ու սոցիալ-տնտեսական կառուցվածքների արմատական վերակառուցմանը: Նեոգաղութատիրությունը, անխուսափելի համարելով արդիականացման պրոցեսը, այնուամենայնիվ, ձգտում է հեղափոխական ուժին փոխարինել ռեֆորմիստական այլ ընտրանքով:

Արդիականության նեոգաղութատիրական այդ պլանները ո՛չ միայն չեն խաթարում իմպերիալիստական տիրապետության նյութական հիմքերը, այլև հակառակը, այդ տիրապետությունը երկարաձգելու առավել արդյունավետ միջոց են: Առաջին, խոսքը վերաբերում է երիտասարդ երկրների որոշ առաջխաղացմանը՝ թույլ զարգացած կապիտալիզմի ուղիով և համաշխարհային կապիտալիստական տնտեսության շրջանակներում: Երկրորդ, արդիականացումը չի շոշափում օտարերկրյա կապիտալի դիրքերը, երիտասարդ երկրների տնտեսական նշանակությունը չի փոփոխում աշխատանքի համաշխարհային կապիտալիստական բաժանման մեջ, առևտրում, բաշխման ոլորտում, իսկ անխախտելի է պահում հետամնացության կախյալ վիճակի վերարտադրության մեխանիզմը: Դրսից ղեկավարվող արդիականացումը, որը կախված է օտարերկրյա «օգնությունից» ու ֆինանսական ներարկումից, կարող է ժողովուրդների մեջ պատրանքներ սերմանել, թե առանց քաղաքական ցնցումների ու արմատական վերափոխությունների առաջխաղացում հնարավոր է:

Հենց դրա վրա էլ հույս է դնում նեոգաղութատիրական քաղաքական և սոցիալ-տնտեսական ստրատեգիան: Վերջինս ենթադրում է երկարաձիգ, տանջալի էվոլյուցիա՝ առանց պարզ ու հուսալի հեռանկարների:

Ռեֆորմիստական-համաձայնողական միջոցներով ազգային-ազատագրական հեղափոխությունները խեղդելու նեոգաղութատիրական պլանները սպասվող արդյունքը չեն տալիս: Թեև նեոգաղութարարները ամեն կերպ ձգնում են ռազմական ուժով ճնշել ազգային-ազատագրական պայքարը (Հնդկաչին, Մերձավոր Արևելք), պաշտպանել մարիոնետային ռեժիմները, սակայն գլխավոր կետում՝ ազգային բուրժուազիայի լայն շրջանների հետ հաշտություն ձեռք բերելու հարցում, նրանք անհաջողության են մատնվում: Այսօր նեոգաղութատիրության հետ համագործակցում են ազգային բուրժուազիայի՝ օտարերկրյա կապիտալի հետ սերտորեն կապված, մի նեղ խումբ, ինչպես նաև գաղութային իշխանությունների տրադիցիոն, երբեմնի հենարանը ծառայած ուժերը: Նեոգաղութատիրության դեմ հանդես են գալիս ինչպես աշխատավորները, հայրենասիրական միջին խավերը, այնպես էլ ազգային բուրժուազիայի լայն շրջաններ, որոնք չեն ցանկանում ազգային շուկան զիջել օտարերկրյա կապիտալին, բավարարվել նրա «կրտսեր խաղընկերոջ» դերով:

Զարգացման ոչ կապիտալիստական ուղու վրա կանգնած երկրները ստանում են ՍՍՀՄ, սոցիալիստական համագործակցության երկրների լայն աջակցությունը:



# ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 50-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԻԱՎՈՐԻՉ ՇԱՐԺՈՒՄԸ ԵՎ ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ

Ս. Վ. ԽԱՐՄԱՆԴԱՐՅԱՆ

*ՍՍՀՄ կազմավորման համար ժողովուրդների միավորիչ շարժման քաղաքական հիմքը հանդիսացան Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, սովետական իշխանության ստեղծումը, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունը։ Բանվորա-գյուղացիական սովետական իշխանության հաղթանակը, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը հենց այն բազան էին, որի վրա միասնական պետական դաշինքում կարելի էր հաստատել ժողովուրդների եղբայրական համագործակցությունը։ Հոկտեմբերյան հեղափոխությունը ո՛չ միայն ոչնչացրեց ազգային ճնշումը և հող ստեղծեց ժողովուրդների ազատ ու կամավոր միավորման համար, այլև իր զարգացման ընթացքում մշակեց այդ միավորման ձևերը, նախանշեց այն հիմնական գծերը, որոնցով պետք է կառուցվեր միասնական սովետական պետությունը։*

*Սովետական հանրապետությունների ժողովուրդների միավորիչ շարժումն ուներ պատմական արմատներ։ Երկու հակասական տենդենցները ազգային շարժման մեջ (տնտեսական, կուլտուրական մերձեցումը և ձգտումը դեպի ազգային մեկուսացածություն) իմպերիալիզմի ժամանակաշրջանում, բնականաբար, կային և գործում էին Ռուսաստանում։ Ռուս ժողովուրդը, դարերի ընթացքում ստեղծելով իր ազգային պետությունը, դրա հետ մեկտեղ Ուկրաինայի, Ռումինիայի, Հարավսլավիայի, Բուլղարիայի, Հունաստանի, Անդրկովկասի, Միջին Ասիայի, Հեռավոր Արևելքի ժողովուրդներին ազատագրեց բռնակալական լծից՝ թուրքական փաշաների, պարսկական խաների, միջինասիական էմիրների, չինական բողդիխանների և այլոց կողմից ստրկացվելու վտանգից ու ֆիզիկական բնաջնջման սպառնալիքից։ Ուկրաինայի վերամիավորումը Ռուսաստանին, Անդրկովկասի, Միջին Ասիայի, Սիբիրի, Հեռավոր Արևելքի ժողովուրդների միացումը համեմատաբար քաղաքակրթված ռուսական պետությանը և նրանց հաղորդակից դառնալը ռուս մեծ ժողովրդի մշակույթին ու ռուս պրոլետարիատի հեղափոխական շարժմանը, նոր ուղիներ բացեցին նրանց զարգացման համար։ «Ռուսաստանը,— գրում էր Ֆ. Էնգելսը,— իրոք առաջադիմական*

դեր է կատարում Արևելքի նկատմամբ» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., изд. II, т. 27, стр. 241)։

Ազգային ծայրամասերը Ռուսաստանին միանալու պատմական առաջադիմականությունը պսակվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով, որը ազգային ծայրամասերի ժողովուրդներին բերեց լիակատար սոցիալական ու ազգային ազատագրություն։ Դրանով իսկ Ռուսաստանում ազգային շարժման երկու հակասական տենդենցներից առավել կենսունակ ու հաղթող դուրս եկավ ժողովուրդների միավորիչ տենդենցը, որը վերաճեց ժողովուրդների որակապես միանգամայն նոր միավորիչ շարժման՝ հանուն ՍՍՀՄ կազմավորման։

Կոմունիստական կուսակցության ծրագրային դրույթները ազգային հարցի վերաբերյալ սկսեցին կենսագործվել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության առաջին իսկ օրից։ Այդ նպատակին էր ծառայում կոմունիստական կուսակցության և սովետական իշխանության լենինյան ազգային քաղաքականությունը[1]։ Ռուսաստանի կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության միջոցառումները ազգային քաղաքականության բնագավառում կոչված էին ստեղծելու ժողովուրդների իսկական հեղափոխական միասնություն՝ Հոկտեմբերի նվաճումները ամրապնդելու և ընդլայնելու համար։ Դրանք հսկայական նշանակություն ունեցան ամբողջ երկրով մեկ սովետական իշխանության հաղթարշավի պրոցեսում, նախկին ցարական Ռուսաստանի ազգային ծայրամասերում սովետական իշխանության հաղթանակի համար։ Այդ միջոցառումների հետ անխզելիորեն կապված են սովետական ժողովուրդների միավորիչ շարժման ծագումն ու զարգացումը։

Սովետական առաջին՝ ՌՍՖՍՀ 1918 թ. սահմանադրությունն արտացոլում էր սովետական իշխանության, լենինյան ազգային քաղաքականության նվաճումները։ Սահմանադրության I գլխի 2-րդ հոդվածը հռչակում էր ազատ ազգերի ազատ դաշինքը սովետական ազգային հանրապետությունների ֆեդերացիայում, իսկ V գլխի 11-րդ հոդվածը ՌՍՖՍՀ ժողովուրդներին վերապահում էր ինքնավարություններ ստեղծելու իրավունք (տե՛ս История Советской Конституции (в документах), стр. 143, 145)։ ՌՍՖՍՀ-ը, որպես առաջին սովետական ֆեդերատիվ հանրապետություն, հանդես էր գալիս իբրև համախմբող ուժ միավորիչ շարժման մեջ՝ հանուն բազմազգ սովետական պետության կազմավորման։ Սովետական բոլոր հանրապետությունները որպես իրենց սահմանադրությունների հիմք և նախատիպ վերցնում էին սովետական առաջին սահմանադրությունը՝ ՌՍՖՍՀ սահմանադրությունը։

Կոմունիստական կուսակցությունը և նրա առաջնորդ Վ. Ի. Լենինը ազգային հարցում միշտ էլ պայքար են մղել մեծապետական շովինիզմի և տեղական նացիոնալիզմի դեմ։ Ընդսմին, Վ. Ի. Լենինը գտնում էր, որ նախկին ճնշող ազգի կոմունիստների պարտքն է՝ պայքարել ամենից առաջ մեծապետական շովինիզմի դրսևորումների դեմ և ընդգծել ժողովուրդների ազատ անջատման իրավունքը՝ ընդհուպ մինչև սեփական անկախ պետության կազմավորումը, իսկ նախկին ճնշված ազգի կոմունիստների պարտքն է՝ հանդես գալ տե-

1 Տե՛ս Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան, ԺԿՍ դիմումը Ռուսաստանի ու Արևելքի բոլոր մուսուլման աշխատավորներին, ժողովրդական Ուկրաինական հանրապետության, Ֆինլանդիայի պետական անջատման, հայ ժողովրդի ինքնորոշման իրավունքի, Լեհաստանի պետական անկախության ճանաչումը և Սովետական Ռուսաստանի ԺԿՍ մյուս միջոցառումները։



ղական նացիոնալիզմի դրսևորումների դեմ և, ընդգծելով ժողովուրդների ինքնորոշման իրավունքը, ձգտել ոչ թե անջատման, այլ ժողովուրդների ազատ, կամավոր միավորման։ Այդ ինտերնացիոնալ սկզբունքների կենսագործումը կոմունիստական կուսակցության կողմից հզոր խթան հանդիսացավ ժողովուրդների միավորիչ շարժման զարգացման համար՝ հանուն ՍՍՀՄ կազմավորման։

Բոլոր ազգությունների աշխատավորական զանգվածները, ոգեշնչված կենտրոնական Ռուսաստանում Մեծ Հոկտեմբերի հաղթանակից, Լենինի կուսակցության ղեկավարությամբ սովետական իշխանություն էին հաստատում իրենց տերիտորիաներում։ Իմպերիալիստների ռազմական ինտերվենցիայի պայմաններում սուր պայքար ծավալվեց հեղափոխական և հակահեղափոխական ուժերի միջև, որը վերածվեց երկարատև քաղաքացիական պատերազմի։ Նախկին տիրապետող դասակարգերի, բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունների և օտարերկրյա ինտերվենտների հակասովետական կոալիցիան սպիտակ տեռորի օգնությամբ երկիրը գցեց քաղաքացիական պատերազմի հորձանուտը։ Ընդսմին, շատ բնորոշ է, որ եթե Հոկտեմբերյան հեղափոխությունից առաջ բուրժուա-նացիոնալիստական հակահեղափոխական կուսակցությունները կողմնակից էին «միասնական ու անբաժան» բուրժուական Ռուսաստանին և միայն ինքնավարության էին ձգտում, ապա սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո նրանք, իրենց դասակարգային շահերից ելնելով, ընթացան քաղաքական և ազգային սեպարատիզմի ուղիով, դարձան Սովետական Ռուսաստանից ազգային ծայրամասերի քաղաքական անջատման և նախկին ռուսական կայսրությունը առանձին ազգային բուրժուական սահմանամերձ պետությունների մասնատելու մոլի կողմնակիցներ։ Ուկրաինայի Կենտրոնական Ռադայի, Դիրեկտորիայի, Բելոռուսական Ռադայի, Լիտվայի Տարիբայի, ինչպես նաև Լատվիայի, Էստոնիայի, անդրկովկասյան կոմիսարիատի և սեյմի, այնուհետև մենշևիկյան Վրաստանի, մուսավաթական Ադրբեջանի, դաշնակցական Հայաստանի, Մոլդավիայի Սֆատուլ-Ցերիայի, Բաշկիրական ազգային խորհրդի (Շուրո), թաթարական Շիլի-Շուրոյի, Թուրքեստանում Կոկանդի ավտոնոմիայի բուրժուա-նացիոնալիստական կառավարությունները և Ղրիմի, Դաղստանի, Դոնի, Կուբանի, Սիբիրի և այլ վայրերի մյուս մարզային հակահեղափոխական նացիոնալիստական «կառավարությունները» միավորվեցին հակասովետական պայքարի և աշխատավորներին ազգային հատկանիշով միմյանցից անջատելու պլատֆորմում։

Ժողովուրդների միավորիչ շարժումը, որը ծագեց Հոկտեմբերյան հեղափոխությունից անմիջապես հետո, ակնառու արտահայտությունը գտավ Սովետական Ռուսաստանի և Ուկրաինայի միջև եղբայրական հարաբերություններ հաստատելու մեջ։ 1917 թ. դեկտեմբերի 1-ին (25-ին) Սովետների համաուկրաինական I համագումարը Ուկրաինան հռչակեց սովետական հանրապետություն։ Սովետական իշխանություն հաստատվեց նաև Բելոռուսիայի մեծ մասում, ինչպես նաև Էստոնիայի ու Լատվիայի մի մասում, որը օկուպացված չէր կայզերական Գերմանիայի զորքերի կողմից։ Հաստատելով սովետների իշխանություն, ազգային հանրապետությունների աշխատավորները իրենց առաջին իսկ ակտերում արտահայտվում էին Սովետական Ռուսաստանի հետ ֆեդերատիվ կապի օգտին։ Այդպիսի որոշում ընդունեց նաև Սովետների հա-

մատվրաինական I համագումարը[1]: Սակայն, ավստրո-գերմանական բանակը
1918 թ. փետրվար-ապրիլին օկուպացրեց Ուկրաինան, Ղրիմը, Բելոռուսիան,
ամբողջ Մերձբալթիկան և այդ երկրներում իշխանության գլուխ կանգնեցրեց
իր մարիոնետներին: 1918 թ. հունվարին, Բրեստի բանակցությունների դժվա-
րին օրերին, Վ. Ի. Լենինը գրում էր. «Մեր սոցիալիստական հանրապետությու-
նը արել է այն ամենը, ինչ կարողացել է, և շարունակում է անել՝ Ֆինլանդիա-
յի, Ուկրաինայի և այլ երկրների ինքնորոշման իրավունքը կենսագործելու հա-
մար» (Երկեր, հ. 26, էջ 547):

Հոկտեմբերյան հեղափոխությունից անմիջապես հետո, նոյեմբերի 2-ին
(15-ին), սովետական իշխանություն հաստատվեց նաև Անդրկովկասի պրոլե-
տարական կենտրոնում՝ Բաքվում: 1918 թ. գարնանը Բաքվի կոմունան ակտիվ
գործունեություն ծավալեց ամբողջ Անդրկովկասում սովետական իշխանության
հաղթանակի համար: Մարտի վերջին հեղափոխական ապստամբություն բռըն-
կեց Վրաստանում (Աբխազիայում). սովետական իշխանությունը այստեղ
գոյություն ունեցավ 40 օր: Հայաստանի հյուսիսային շրջաններում ապրիլի
վերջին—մայիսին նույնպես հաստատվել էր սովետական իշխանություն: Բայց
հակահեղափոխական անդրկովկասյան սեյմը, սովետական իշխանության
լիակատար հաղթանակը կանխելու և թուրք-գերմանական զավթիչների կամքը
կատարելու համար, չարաշահելով Բրեստի պայմանագիրը, հակառակ Անդր-
կովկասի ժողովուրդների կամքի, ապրիլի 22-ին հայտարարեց, որ Անդրկով-
կասը անջատվում է Սովետական Ռուսաստանից: Թուրքական և գերմանական
զորքերը օկուպացրին Անդրկովկասը: Սովետական իշխանության միջնաբերդը
Անդրկովկասում՝ Բաքվի կոմունան, ընկավ հակահեղափոխության և ինտեր-
վենտների թվական տեսակետից գերակշիռ ուժերի դեմ մղված անհավասար
պայքարում: Սեպտեմբերի 15-ին, խախտելով Բրեստի պայմանագիրը, թուր-
քական զորքերը զավթեցին Բաքուն: Ի պատասխան դրան, սեպտեմբերի 20-ին
Սովետական Ռուսաստանը հայտարարեց, որ թուրքական կառավարության
գործողությունները փաստորեն ի չիք են դարձնում Բրեստի պայմանագրի այն
հոդվածներն ու պայմանները, որոնք վերաբերում են սուլթանական Թուր-
քիային (տե՛ս Документы внешней политики СССР, т. I, М., 1957,
стр. 492):

Մենշևիկյան Վրաստանի, մուսավաթական Ադրբեջանի, դաշնակցական
Հայաստանի բուրժուա-նացիոնալիստական կառավարությունները գերմանա-
թուրքական, իսկ ապա՝ անգլո-ֆրանս-ամերիկյան իմպերիալիստների դրածո-
ներն էին և պահվում էին նրանց սվիններով, լուրջ հենարան չունենալով երկրի
ներսում: Մենշևիկների, դաշնակների, մուսավաթականների իշխանությունը
նացիոնալիստական բուրժուազիայի հակաժողովրդական դիկտատուրա էր՝
ուժեղացած օտարերկրյա ինտերվենտների զորքերով: Այսպիսով, զինված ին-
տերվենցիան և քաղաքացիական պատերազմը, բուրժուական նացիոնալիստ-
ների դավաճանական, հակաժողովրդական քաղաքականությունը գլխավոր,
վճռական գործոնները հանդիսացան, որոնց պատճառով ձգձգվեց սովետա-
կան իշխանության հաղթանակը Անդրկովկասում:

Առաջին համաշխարհային պատերազմում Գերմանիայի կապիտուլյա-
ցիայից հետո ՌՍՖՍՀ Կենտգործկոմը 1918 թ. նոյեմբերի 13-ին չեղյալ հայ-
տարարեց Բրեստ-Լիտովսկի պայմանագիրը և կոչով դիմեց Ռուսաստանի ժո-
ղովուրդներին, որտեղ նշվում էր, որ այդ բանի հաշտությունը ոչնչացված է,





Ռուսաստանի օկուպացված բոլոր մարզերը պետք է մաքրվեն, լրիվ չափով
ճանաչվում է ժողովուրդների ինքնորոշման իրավունքը: «Ողջունելով գերմա-
նական իմպերիալիզմի լծից ազատագրված բոլոր մարզերի բնակչությանը,
— նշված է կոչում,— ՌՍՖՍՀ այդ մարզերի աշխատավորական զանգվածնե-
րին դաշինքի կոչ է անում Ռուսաստանի բանվորների ու գյուղացիների հետ
և խոստանում լիակատար և մինչև վերջ աջակցել նրանց՝ իրենց հողերում բան-
վորների ու գյուղացիների սոցիալիստական իշխանություն հաստատելու հա-
մար նրանց մղած պայքարում» (История Советской Конституции (в до-
кументах), стр. 167):

Սովետական իշխանությունը վերականգնվեց Ուկրաինայում, Բելոռուսիա-
յում, այն հաղթանակեց Մերձբալթիկայում: 1918 թ. դեկտեմբերի 25-ին
ՌՍՖՍՀ Կենտգործկոմն ընդունեց որոշում Էստլանդիայի, Լատվիայի և Լիտվա-
յի սովետական հանրապետությունների անկախությունը ճանաչելու մասին
(տե՛ս նույն տեղը, էջ 176—177): 1919 թ. հունվարի 1-ին հռչակվեց Բելոռու-
սական ՍՍՀ-ն: Հունվարի 26-ին Սովետական Ուկրաինայի բանվորա-գյուղա-
ցիական ժամանակավոր կառավարությունը հանդես եկավ դեկլարացիայով,
որտեղ ընդգծվում էր. «Առաջին հերթին մենք բարձրաձայն մեր համերաշխու-
թյունն ենք հայտնում Ռուսաստանյան Սովետական Ֆեդերատիվ Հանրապե-
տության հետ... Սովետական Ռուսաստանի թշնամիներին մենք հայտարարում
ենք որպես Սովետական Ուկրաինայի թշնամիներ: Մենք ունենք միատեսակ
քաղաքական, տնտեսական ու ռազմական խնդիրներ» (նույն տեղը, էջ 182):
Դեկլարացիան նշում է, որ Ուկրաինայի ու Ռուսաստանի սովետական հանրա-
պետությունների միավորումը կանխորոշված է սոցիալիստական ֆեդերա-
ցիայի սկզբունքներով: Բելոռուսիայի Սովետների I համագումարը 1919 թ.
փետրվարի 3-ին որոշեց. «Բանակցություններ սկսել Ռուսաստանյան Սովե-
տական Հանրապետության հետ՝ ֆեդերատիվ կապ հաստատելու վերաբերյալ,
և բոլոր անկախ սովետական հանրապետություններին կոչ արեց հետևել Սո-
վետական Բելոռուսիայի օրինակին (տե՛ս նույն տեղը, էջ 185—186): Փետըր-
վարի 5-ին հրապարակվեց ՌՍՖՍՀ Կենտգործկոմի որոշումը Բելոռուսական
ՍՍՀ անկախությունը ճանաչելու մասին:

Քաղաքացիական պատերազմի դժվարին պայմաններում սովետական
հանրապետությունները պարտավոր էին կենտրոնացնել իրենց ռազմական
ջանքերը գլխավոր ռազմաճակատներում, միավորելով զինվորական հրամա-
նատարությունը, տնտեսական ռեսուրսները, երկաթուղիները, ֆինանսները և
այլն: Այդ բանը իրականացվեց Սովետական Ուկրաինայի նախաձեռնությամբ
(Ուկրաինայի Կենտգործկոմի 1919 թ. մայիսի 18-ի որոշումից հետո), որը
պաշտպանեցին Լատվիայի, Լիտվայի և Բելոռուսիայի սովետական հանրապե-
տությունները: 1919 թ. մայիսին Վ. Ի. Լենինը մշակեց «Ռազմական միասնու-
թյան մասին Կենտկոմի դիրեկտիվի նախագիծը», որն ընդունվեց կուսակցու-
թյան Կենտկոմի կողմից և հիմք ծառայեց սովետական հանրապետություննե-
րի ռազմա-քաղաքական դաշինքի համար: ՌՍՖՍՀ Կենտգործկոմը 1919 թ.
հունիսի 1-ին դեկրետավորեց ՌՍՖՍՀ, Ուկրաինայի, Լատվիայի, Լիտվայի և
Բելոռուսիայի ռազմա-քաղաքական դաշինքը (տե՛ս նույն տեղը, էջ 207—208):
Դրան հաջորդեցին երկկողմանի համաձայնագրերը ՌՍՖՍՀ և սովետական
հանրապետությունների միջև ռազմա-քաղաքական դաշինքի մասին՝ ներքին

1 Տե՛ս История Советской Конституции (в документах), стр. 87:

հակահեղափոխության և օտարերկրյա ինտերվենցիայի միացյալ ուժերի դեմ մղվող ընդհանուր պայքարում։

1919 թ. հակահեղափոխության ուժերը Մերձբալթիկայում գերակշռություն ստացան, և Էստոնիայի, Լատվիայի, Լիտվայի բուրժուական նացիոնալիստները Անտանտի ինտերվենտների և Յուդենիչի սպիտակգվարդիական բանակի օգնությամբ այստեղ հաստատեցին բուրժուազիայի դիկտատուրա, որը գոյություն ունեցավ մինչև 1940 թվականը։

Քաղաքացիական պատերազմը, որպես դասակարգային պայքարի ամենասուր ձև, ազգային հանրապետություններում տեղի էր ունենում թե՛ քաղաքականության և թե գաղափարախոսության բնագավառում՝ բուրժուա-նացիոնալիստական հակահեղափոխության խիստ ակտիվացման պայմաններում։ Անհրաժեշտ էր այդ հակահեղափոխությունը ջախջախել ո՛չ միայն ռազմական տեսակետից, այլև մերկացնել նրա հակաժողովրդական, բուրժուա-նացիոնալիստական էությունը, ամբողջապես մեկուսացնել այն ժողովրդական զանգվածներից։

Քաղաքացիական պատերազմի կրակի մեջ, ազգային սովետական հանրապետությունների կազմավորման հետ ձևավորվեցին նաև այդ հանրապետությունների կոմունիստական կուսակցությունները՝ որպես միասնական ՌԿ(բ)Կ մարտական ջոկատներ։ Դա նպաստեց աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխության և ժողովուրդների միավորիչ շարժման ուժեղացմանը։ Թուրքեստանի կոմունիստական կազմակերպությունների I համագումարը 1918 թ. հունիսին որոշում ընդունեց Թուրքեստանի կոմկուսակցություն ստեղծելու մասին։ 1918 թ. հուլիսին ստեղծվեց Ուկրաինայի կոմկուսակցությունը, հոկտեմբերին՝ Լիտվայի և Բելոռուսիայի, այնուհետև, 1919 թ. մարտին, Բելոռուսիայի կոմկուսակցությունը առանձնացավ որպես ինքնուրույն կազմակերպություն, 1920 թ. փետրվարին ստեղծվեց Ադրբեջանի կոմկուսակցությունը, մայիսին՝ Վրաստանի, հունիսին՝ Հայաստանի կոմկուսակցությունը։ Սովետական իշխանության վերջնական հաղթանակի համար մղված պայքարը ազգային հանրապետություններում ուներ իր առանձնահատկությունները, բայց այդ հաղթանակն ապահովող գլխավոր գործոնն այն էր, որ բոլոր հանրապետություններն էլ ռազմա-քաղաքական սերտ դաշինք էին հաստատել ՌՍՖՍՀ-ի հետ։

Քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում ձեռք բերված հաղթանակների շնորհիվ վերականգնվում էր սովետական իշխանությունն ազգային հանրապետություններում, լենինյան ազգային քաղաքականության համապատասխան ստեղծվում էին նորանոր սովետական հանրապետություններ ու մարզեր։ ՌՍՖՍՀ ֆեդերատիվ կարգի ձևավորման պրոցեսը սերտորեն կապված էր ազգային կազմավորումների գոյացման, ժողովուրդների միավորիչ շարժման հետ։

1920—1922 թթ. սովետական հանրապետությունների միավորիչ շարժումը ի տարբերություն քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանի ռազմա-քաղաքական դաշինքի, ընդունեց նոր ձև։ Քաղաքացիական պատերազմը հաջողությամբ ավարտելուց հետո անկախ սովետական հանրապետությունների ֆեդերատիվ կապերն ամրապնդվեցին մի շարք պայմանագրերով, հաշվի առնելով քաղաքական ու տնտեսական բնույթի նոր խնդիրները։ ՌՍՖՍՀ-ն, իր շուրջը միավորելով անկախ սովետական հանրապետությունները և նրանց ցույց տալով ռազմա-քաղաքական, դիվանագիտական, տնտեսական ու կուլ-



տուրական օգնություն, ամրապնդում և զարգացնում էր եղբայրական կապերը սովետական հանրապետությունների բոլոր ժողովուրդների միջև։

1922 թ. ստեղծվեց անդրկովկասյան սովետական հանրապետությունների ֆեդերացիան՝ որպես ամբողջ Անդրկովկասի ազգային համերաշխության և տնտեսական վերածննդի հաստատություն։ Դեռևս Կովկասի կոմունիստներին ուղղած 1921 թ. ապրիլի 14-ի նամակում Վ. Ի. Լենինը նշում էր. «Ջերմագին ողջունելով Կովկասի սովետական հանրապետությունները, ես հույս ունեմ, որ նրանց սերտ դաշինքը կստեղծի ազգային համերաշխության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (Երկեր, հ. 32, էջ 402)։

Անդրկովկասյան ֆեդերացիան այն ժամանակաշրջանում երկրամասում ազգային համերաշխությունն ապահովելու, ժողովուրդների համագործակցություն ստեղծելու լավագույն պետական քաղաքական ձևն էր՝ նրանց տնտեսությունն ու կուլտուրան բարձրացնելու նպատակով. Նրա ստեղծումը նշանակում էր ինտերնացիոնալիզմի հաղթանակը նացիոնալիզմի նկատմամբ։ Անդրկովկասյան ֆեդերացիայի ստեղծման համար մղված պայքարը սերտորեն կապված էր միասնական սովետական պետության կազմավորման համար ծավալված միավորիչ շարժման հետ։ Անդրկովկասյան ֆեդերացիան, որպես սովետական դաշնակցային ազգային-պետական կազմավորում ստեղծելու առաջին փորձ, նշանակալի դեր կատարեց ՍՍՀ Միության կազմավորումը նախապատրաստելու գործում. Նրա նշանակությունը դուրս եկավ Անդրկովկասի շրջանակներից, ստացավ ընդհանուր միութենական և դրանով իսկ միջազգային նշանակություն։

Միջազգային ու ներքին բարդ պայմաններում սովետական հանրապետությունները, ՌՍՖՍՀ գլխավորությամբ, 1922 թ. սկզբին թևակոխեցին միավորիչ շարժման հաջորդ փուլը՝ դիվանագիտական միավորման, դիվանագիտական դաշինքի փուլը։ 1922 թ. ՌՍՖՍՀ և սովետական հանրապետությունների դիվանագիտական շատ ակցիաներ կապված էին Ջենովայի, Հաագայի, Լոզանի միջազգային կոնֆերանսների հետ։ Սովետական հանրապետություններն իրենց ռազմա-քաղաքական դաշինքը համալրեցին դիվանագիտական դաշինքով, որը նրանց հնարավորություն ընձեռեց ընդդիմանալու իմպերիալիստական պետությունների նոր ճնշմանը, որոնք փորձում էին դիվանագիտական ճանապարհով սովետական հանրապետություններին կապիտուլյացիայի ենթարկել։

ՍՍՀՄ կազմավորման համար ծավալված միավորիչ շարժման շարժառիթներից մեկը ժողովուրդների ձգտումն էր՝ լրիվ չափով ծավալելու սոցիալիստական շինարարությունը բոլոր սովետական հանրապետություններում, ապահովելով պատմական խնդրի՝ ժողովուրդների փաստական անհավասարության վերացման և սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման խնդրի լուծումը։

Խաղաղ սոցիալիստական շինարարության պրոցեսը, դրա արագացման խնդիրը բոլոր ժողովուրդներին կանգնեցրին սովետական հանրապետությունների հետագա մերձեցման, ավելի սերտ միավորման անհրաժեշտության առջև։ Պայմանագրային հիմունքներով ստեղծված ֆեդերացիան ընդհանուր տնտեսական պլանավորում չէր նախատեսում։ Մինչդեռ սովետական բոլոր հանրապետությունների ընդհանուր ջանքերով միայն կարելի էր կառուցել սոցիալիզմի նյութա-տեխնիկական բազան, ընդսմին սահմանելով նոր ուղիներ՝

արտադրության ավելի սերտ ու փոխշահավետ մասնագիտացման և աշխատանքի բաժանման համար։ Պայմանագրերն ու տնտեսական համաձայնագրերը հանրապետությունների միջև այլևս բավարար չէին. միավորիչ շարժումը վերաճեց պայմանագրային հարաբերություններից։ Սովետական հանրապետությունների պետական-քաղաքական միավորումը դարձավ օրակարգի հարց։ Այսպիսով, 1922 թ. սովետական հանրապետությունների ժողովուրդների միավորիչ շարժումը թևակոխեց կոնկրետ քաղաքական ու տնտեսական միավորման, բազմազգ սովետական պետության ստեղծման փուլը։

ՍՍՀՄ կազմավորման հիմքը միասնական եղբայրական ինտերնացիոնալ պետության համար ծավալված իսկական ժողովրդական շարժումն էր, որը գլխավորում և ուղղություն էր տալիս կոմունիստական կուսակցությունը։ Կուսակցության համար պարզ էր միասնական սովետական պետության կազմավորման հասունացած անհրաժեշտությունը (ՌՍՖՍՀ փորձը, սովետական հանրապետությունների պայմանագրային հարաբերությունների անբավարարությունը, Անդրկովկասյան ֆեդերացիայի ստեղծումը և այլն), և նա իր քաղաքականությամբ ժողովրդական զանգվածներին մոտեցնում էր այդ խնդրի լուծմանը։ Սակայն, փորձի բացակայության պատճառով դժվար էր նոր ֆեդերացիայի շրջանակներում անմիջապես գտնել սովետական անկախ հանրապետությունների փոխհարաբերություններին համապատասխան պետական-իրավական ձև, ուստի հաճախ շփոթում էին անկախության, ֆեդերացիայի, ավտոնոմիայի և այլ հասկացությունները, մի բան, որ բնորոշ էր այն ժամանակի համար։ Վ. Ի. Լենինի հանճարը գտավ բազմազգ սովետական պետության միակ ճիշտ՝ ընդհանուր պետական ձևը։

Այդ բարդ պայմաններում Վ. Ի. Լենինը հայտնագործեց սովետական հանրապետությունների ազգային-պետական հարաբերությունների միանգամայն նոր ձև՝ ֆեդերատիվ սովետական սոցիալիստական պետության ձևը, որը ամբողջապես համապատասխանում էր նրանց ազգային սուվերենությունը պահպանելու խնդիրներին, ապահովում դաշինքի իրավահավասարությունն ու կամավորությունը։

ՍՍՀՄ կազմավորման լենինյան գաղափարը նախատեսում էր իրավահավասար և սուվերեն հանրապետությունների կամավոր դաշինք՝ հետևողական սովետական դեմոկրատիզմի սկզբունքներով։ Սովետական կարգի պայմաններում հանրապետությունների ինքնուրույնությունն ու նրանց սերտ միավորումը իրավահավասար սկզբունքներով չէին հակասում միմյանց։ Ուստի, Լենինը վճռականորեն մերժում էր ինքնուրույնության բուրժուա-նացիոնալիստական ըմբռնումը՝ ազգային-պետական մեկուսացումը, սեպարատիզմը, տեղայնությունը, և գտնում էր, որ սովետական հանրապետությունների միավորումը միասնական միութենական պետության մեջ լիովին կպահպանի նրանց պետական սուվերենությունը և կապահովի ժողովուրդների փաստական անհավասարության հաղթահարումը՝ շնորհիվ նախկինում ճնշված ժողովուրդների էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման ավելի բարձր տեմպերի։ Լենինը դեմ էր ՌՍՖՍՀ օրգանների ֆունկցիաները մեխանիկորեն սովետական հանրապետություններին հաղորդելուն և առաջարկում էր ստեղծել իշխանության ընդհանուր-ֆեդերալ օրգաններ, ժողկոմատներ և այլն։

Վ. Ի. Լենինը, որպես հանճարեղ տեսաբան և ՍՍՀՄ ստեղծող, ամփոփեց



սովետական հանրապետությունների ազգային-պետական շինարարության հնգամյա փորձը, տվեց ՍՍՀ Միության՝ սովետական ֆեդերացիայի նոր, բարձրագույն տիպի գաղափարը։

1922 թ. հոկտեմբերից մինչև դեկտեմբեր սովետական հանրապետությունների ժողովուրդների միավորիչ շարժումն ընդունեց ամենից ավելի լայն բնույթ։ Կոմունիստական կուսակցությունն օգնեց աշխատավորական զանգվածներին՝ ըմբռնելու նոր ձևի սովետական ֆեդերացիա՝ միութենական օրենսդիր ու գործադիր օրգաններով միասնական միութենական պետություն, ստեղծելու նպատակահարմարությունն ու անհրաժեշտությունը։ Կուսակցական և անկուսակցական կոնֆերանսները, տեղական սովետների համագումարները, աշխատավորների ժողովներն ու միտինգները սովետական հանրապետություններում գումարվում էին ՌԿ(բ)Կ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումի որոշումները կատարելու նշանաբանով, ամենուրեք նշվում էր անկախ սովետական հանրապետությունների պետական միավորում ստեղծելու անհրաժեշտությունը։ Իրավահավասար և սուվերեն հանրապետությունների կամավոր միավորման հիման վրա միութենական, ֆեդերատիվ պետություն ստեղծելու լենինյան գաղափարը արժանացավ համաժողովրդական հավանության։

1922 թ. դեկտեմբերի 13-ին Սովետների համաուկրաինական VII համագումարն ընդունեց Դեկլարացիա, իսկ Սովետների Անդրկովկասյան I համագումարը՝ որոշում ՍՍՀ Միություն կազմելու մասին։ Դեկտեմբերի 18-ին սովետների համառուսական IV համագումարը նույնպես ընդունեց որոշում ՍՍՀՄ կազմելու մասին։ Դեկտեմբերի 27-ին սովետների համառուսաստանյան X համագումարը գտավ, որ ժամանակն է կազմել սովետական հանրապետությունների պետական միավորում։ 1922 թ. դեկտեմբերի 30-ին Մոսկվայում կայացավ ՍՍՀՄ սովետների I համագումարը, որը հաստատեց ՍՍՀՄ կազմավորման մասին Դեկլարացիան և Պայմանագիրը, ընտրեց ՍՍՀ Միության Կենտգործկոմ։ Կենտգործկոմի նստաշրջանն ընտրեց Կենտգործկոմի նախագահություն և լենինյան ցուցումի համաձայն՝ Կենտգործկոմի չորս նախագահներ ՌՍՖՍՀ-ից, Ուկրաինայից, Բելոռուսիայից, Անդրկովկասյան ֆեդերացիայից, որոնք պետք է նախագահեին հերթականությամբ։ ՍՍՀՄ Կենտգործկոմը կազմեց նաև ՍՍՀՄ կառավարություն՝ Ժողովրդական Կոմիսարների Սովետ Վ. Ի. Լենինի նախագահությամբ։

ՍՍՀ Միության անցած կեսդարյա հերոսական ուղու արդյունքները համոզիչ ապացուցում են, որ լենինյան կուսակցության կոմունիստական գաղափարախոսության և քաղաքականության հետևողական կենսագործմամբ միայն նախկինում ճնշված ժողովուրդներն ստեղծեցին ազգային սովետական պետականություն և ընթացան քաղաքական, տնտեսական և կուլտուրական բարգավաճման ուղիով։ ՍՍՀՄ կազմավորումն ունեցավ համաշխարհային-պատմական մեծագույն նշանակություն, դրանով նոր դարագլուխ բացվեց մարդկության պատմության տարեգրության մեջ, ՍՍՀՄ-ը վիթխարի հեռանկարներ ընձեռեց սովետական հանրապետությունների արագ զարգացման ու ծաղկման համար։ Աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետությունը հանդիսացավ կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը։

---

# ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՓԱՅԼՈՒՆ ԱՐԴՅՈՒՆՔԸ

Վ. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ

Դարեր շարունակ անցյալի առաջադեմ մտածողները երազել են ժողո-
վուրդների ազատության ու եղբայրության մասին, սակայն մեծ Հոկտեմբերի
բոցերում ծնված սովետների երկրում միայն այդ լուսավոր երազանքը իրա-
կանություն դարձավ, գտավ իր կենդանի մարմնավորումը։ Մարդկության
պատմության մեջ առաջին անգամ արդարացիորեն լուծվեց ազգային հարցը,
շահագործումից ազատագրված ազգերի ու ազգությունների միջև հաստատվե-
ցին ներդաշնակ փոխհարաբերություններ։ «Դասակարգային և ազգային
ճնշման, ազգային երկպառակության և մեկուսացման հին աշխարհին,— աս-
ված է Սովետական Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաս-
տության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— կոմունիստական կուսակ-
ցությունը, բանվոր դասակարգը հակադրեցին աշխատավորների միասնու-
թյան նոր աշխարհը, ուր տեղ չկա մարդու կողմից մարդու, մի ազգի կողմից
մյուսի ամենաչնչին ճնշման համար, որևէ ազգային առանձնաշնորհման հա-
մար»։

Թոթափելով սոցիալական և ազգային հարստահարման կապանքները,
մեր երկրի ժողովուրդները թևակոխեցին հասարակական զարգացման սոցիա-
լիստական ուղին, դրանով իսկ նպաստավոր պայմաններ ստեղծվեցին նրանց
ազատ ու անկաշկանդ զարգացման, պետական կամավոր միավորման հա-
մար։ Սովետական իշխանությունն իր առաջին իսկ փաստաթղթերում հռչակեց
մեծ առաջնորդի մշակած ազգային քաղաքականության սկզբունքները, այն է՝
ժողովուրդների հավասարություն ու սուվերենություն, ազատ ինքնորոշման
իրավունք՝ ընդհուպ մինչև անջատում և ինքնուրույն պետությունների կազ-
մավորում, բոլոր և ամեն կարգի ազգային և ազգային-կրոնական առանձնա-
շնորհումների վերացում, ազգային փոքրամասնությունների և էթնիկական
խմբերի ազատ զարգացում, ազգերի ու ազգությունների քաղաքական, ռազ-
մական ու տնտեսական սերտ դաշինք, նրանց համախմբում սոցիալիզմի
համար մղվող պայքարում։

Ազգային հարցի վերաբերյալ լենինյան այս սկզբունքներն էլ դրվեցին



սովետական ժողովուրդների համախմբման, նրանց եղբայրական բարեկամու-
թյան հաստատման, Սովետական Միության կազմավորման հիմքում։

* * *

Սովետական Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստու-
թյան մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ տրված է միասնական միութենա-
կան պետության կազմավորման ու զարգացման, սոցիալիստական ազգերի
ծաղկման ու մերձեցման օրինաչափությունների համակողմանի, գիտականո-
րեն հիմնավորված բնորոշումը։

Հիսուն տարի առաջ, Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ ու անմիջական ջան-
քերով, եղբայրական մեկ ընտանիքում միավորվեցին սոցիալիզմի ուղին բռնած
ժողովուրդները։ Կազմավորվեց ՍՍՀՄ-ը՝ բազմազգ սոցիալիստական պետու-
թյունը, իրավահավասար և սուվերեն սովետական հանրապետությունների
միությունը՝ կառուցված պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքնե-
րի, հասարակության տնտեսական ու քաղաքական միասնության, գաղափա-
րական ու կուլտուրական կյանքի ընդհանրության վրա։ Դա կոմունիստական
կուսակցության լենինյան ազգային քաղաքականության մեծագույն հաղթա-
նակն էր։

Սովետական Միության կազմավորումից անցել է կես դար։ Այն եղել է
սովետական ժողովրդի, մեր կուսակցության հերոսական մաքառումների և
մեծագործությունների արգասավոր ժամանակաշրջան, որի գլխավոր արդյուն-
քը ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումն է։ Եվ
այսօր սովետական մարդիկ, օրինական հպարտությամբ մի հետադարձ հա-
յացք նետելով անցած ուղուն, հանրագումարի են բերում իրենց սխրագործ
աշխատանքի հոյակապ արդյունքները։

Անցյալից սովետական նորաստեղծ երկիրը ծանր ժառանգություն էր
ստացել։ Քաղաքացիական պատերազմի հետևանքով կազմալուծվել ու քայ-
քայվել էին երկրի առանց այն էլ թույլ էկոնոմիկան, արտադրաուժերը։ Բավա-
կան է նշել, որ խոշոր արդյունաբերության արտադրության ծավալը կազմում
էր նախապատերազմյանի ընդամենը մեկ յոթերորդ մասը, գրեթե երկու ան-
գամ նվազել էր գյուղատնտեսության արտադրանքը։ Նոր կյանք, նոր կենցաղ
ստեղծելու համար անհրաժեշտ էր արագ վերականգնել ժողովրդական տնտե-
սությունը, հաղթահարել դարավոր հետամնացությունը մեր կյանքի բոլոր
ոլորտներում, հիմնել միասնական սոցիալիստական էկոնոմիկա։ Դժվարու-
թյունները մեծ էին, խոչընդոտները՝ բազում։ Մեր երկիրը միայնակ էր, գտն-
վելով թշնամական շրջապատման մեջ, նա կարող էր ապավինել միայն իր
սեփական ուժերին, նյութական միջոցներին։ Հարկավոր էր վճռական պայ-
քար մղել հակահեղափոխության արտաքին և ներքին ուժերի դեմ, պաշտպա-
նել Հոկտեմբերի նվաճումները նրանց ոտնձգություններից ու սուր դավերից,
ինչպես և խափանել անցյալի ազգային թշնամանքի, երկպառակության ժա-
ռանգությունը օգտագործելու նրանց փորձերը։

Եվ միայն սովետական ժողովուրդների սերտ դաշինքը, նրանց համա-
խմբումը միասնական պետականության մեջ, նյութական միջոցների և ջան-
քերի միավորումը հնարավորություն ընձեռեցին ո՛չ միայն պատմական ամե-
նակարճ ժամանակամիջոցում վերականգնելու երկրի արտադրաուժերը, այլև,

որ գլխավորն է, արմատական վերափոխումներ իրականացնելու հասարակու-
թյան տնտեսական, հասարակական-քաղաքական կյանքի բոլոր մարզերում,
կառուցելու նոր հասարակարգ։

Սոցիալիստական ազգերի հերոսական աշխատանքով, նրանց փոխադարձ
օգնությամբ ու համագործակցությամբ Սովետական Միությունը վերածվեց
աշխարհի հզոր տերության՝ բարձր զարգացած ինդուստրիայի, խոշոր մեքե-
նայացված գյուղատնտեսության, առաջավոր գիտության ու մշակույթի երկրի։
1913 թվականի համեմատությամբ, 1970 թվականին ՍՍՀՄ արդյունաբերու-
թյան արտադրանքն աճեց 92, իսկ գյուղատնտեսության արտադրանքի ծա-
վալը, ամբողջությամբ վերցված, մեծացավ 3,1 անգամ։

Ամրակուռ է դարձել սովետական բազմազգ պետությունը, ստեղծվել է
սոցիալիստական հզոր էկոնոմիկա, բուռն զարգացել ու ծաղկել են սոցիալիս-
տական բոլոր ազգերն ու ազգությունները։ Սոցիալիզմի հիմքի վրա ստեղծվել
է աշխատավորների միասնության և եղբայրության մի նոր աշխարհ, որտեղ
բոլոր ազգերն ու ազգությունները շաղկապված են անքակտելի բարեկամու-
թյամբ։ Զարգացման բարձր մակարդակի է հասել ընդհանուր միութենական
էկոնոմիկան, ոչնչացվել է դասակարգային և ազգային հակամարտությունը,
գոյավորվել են սոցիալիստական ազգերը, հաստատվել է սովետական ժողո-
վրդի սոցիալական ու բարոյա-քաղաքական միասնությունը։

Սովետական երկրում, ուր ապրում և աշխատում են ավելի քան հարյուր
ազգեր ու ազգություններ, հետևողականորեն և հաջողությամբ լուծվեց ազգա-
յին հարցը, լիակատար հաղթանակ տարավ լենինյան ազգային քաղաքակա-
նությունը, որը սոցիալիզմի ամենախոշոր նվաճումներից է։ Մեծ Լենինի խոս-
քերով ասած, մեր երկրում ստեղծվեց ազգային հաշտության մի այնպիսի
օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուա-
կան հասարակարգում։

Սովետական Միության կեսդարյա տարեգրությունը ՍՄԿԿ ազգային քա-
ղաքականության կենսական ուժի և հաղթանակի ակնառու հաստատումն է։
Կուսակցությունն է կռել ու կոփել սոցիալիստական ազգերի մեծ բարեկամու-
թյունը, ցեմենտել նրանց եղբայրական անխախտ դաշինքը և նրանց ջանքերն
ուղղել նոր հասարակարգի կառուցման նպատակին։

Անցյալում կեղեքված ու ճնշված ազգերի և ժողովուրդների ստեղծագոր-
ծական խոյանքները Հոկտեմբերյան հեղափոխության շնորհիվ ընթացան սո-
ցիալիստական հասարակարգի կառուցման հունով։ Կոմունիստական կու-
սակցության լենինյան ազգային քաղաքականության կենսագործմամբ մեր
երկրի մեծ ու փոքր ժողովուրդները լիովին իրականացրին իրենց կյանքն ազատ
տնօրինելու ինքնորոշման մեծ իրավունքը։ Լենինյան ազգային քաղաքակա-
նությունը կենսագործելիս կուսակցությունը ելնում էր այն բանից, որ սովե-
տական հանրապետությունները պետք է օժտված լինեն համահավասար իրա-
վունքներով ու լիազորություններով՝ անկախ նրանց բնակչության թվից, տե-
րիտորիայի մեծությունից և էկոնոմիկայի զարգացման մակարդակից։

Սոցիալիստական շինարարության ընթացքում մեր երկրի ժողովուրդները
վերացրին իրենց տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը։ Միու-
թենական և ազգային պետականության անխզելի միասնության մեջ, սովե-
տական ազգերի նյութական միջոցների ու ջանքերի կենտրոնացմամբ ու փո-
խադարձ օգնությամբ, հնարավոր դարձավ բոլոր հանրապետություններում



ստեղծել բարձր զարգացած էկոնոմիկա և կուլտուրա, աստիճանաբար հավա-
սարեցնել նրանց տնտեսական ու կուլտուրական զարգացման մակարդակ-
ները։
Հասարակության սոցիալիստական վերափոխման պրոցեսում վերացվեց
նախկին ազգային ծայրամասերի, զարգացման ավելի ցածր մակարդակի վրա
գտնվող ժողովուրդների տնտեսական և կուլտուրական փաստական անհա-
վասարությունը։ Այդ գործում անշահախնդիր օգնություն ցույց տվեցին երկրի
արդյունաբերական զարգացած մարզերի աշխատավորները և, առաջին հեր-
թին, ռուս բանվոր դասակարգը։ Իսկապես բացառիկ է ռուս մեծ ժողովրդի
դերը լենինյան ազգային քաղաքականության իրականացման, եղբայրական
հանրապետությունների բարգավաճման, ազգերի սոցիալիստական զարգաց-
ման ու մերձեցման գործում, ժողովուրդ, որն իրավամբ վաստակել է սովետա-
կան ժողովուրդների սերն ու հարգանքը։
Հնգամյակների տարիներին այդ հանրապետությունների տնտեսության
զարգացումը պլանավորվել և իրականացվել է ավելի բարձր տեմպերով,
միութենական բյուջեից հատկացվել են կապիտալ խոշոր ներդրումներ։ Այդ
ամենի շնորհիվ 1970 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, արդյու-
նաբերության արտադրության ծավալը, օրինակ, Մոլդավիայում և Ղազախ-
ստանում մեծացել է 146, Կիրգիզիայում՝ 188, Հայաստանում՝ 180 անգամ և
այլն։ Ներկայումս ՍՍՀՄ եղբայրական հանրապետություններն ունեն ին-
դուստրիալ հզոր բազա, զարգացած բազմաճյուղ էկոնոմիկա։ Աննախադեպ
ծաղկում է ապրել սովետական ժողովուրդների բովանդակությամբ սոցիալիս-
տական, ձևով ազգային կուլտուրան։ Եվ դա այն ժամանակ, երբ ոչ հեռավոր
անցյալում մեր երկրի, մասնավորապես ազգային ծայրամասերի ժողովուրդ-
ների ճնշող մեծամասնությունը ոչ միայն անգրագետ էր, այլև նրանց մի մասը
անգամ չուներ իր գիրն ու գրականությունը։ Սոցիալիստական շինարարու-
թյան ընթացքում ՍՍՀՄ շուրջ քառասուն ազգեր գրություն ստացան, առաջ
եկան ազգային բանվոր դասակարգի ստվար ջոկատներ, աճեցին ազգային
մտավորականության հրաշալի կադրեր։ Բազմակողմանի զարգացան սոցիա-
լիստական ազգերի ու ազգությունների լեզուները, արվեստն ու գրականությունը։
Թե ինչպիսի հրաշալի արդյունքներ է տվել ու տալիս սոցիալիստական
ազգերի համախմբումը եղբայրական մեծ ընտանիքում, նրանց բարեկամու-
թյունը, փոխադարձ համագործակցությունն ու օգնությունը, կարելի է տեսնել
մեր հանրապետության օրինակով։ Մի՞թե կարող էր փոքրաթիվ և սահմանա-
փակ միջոցներ ունեցող հայ ժողովուրդը, ապավինած միայն իր սեփական
նյութական միջոցներին և ուժերին, կարճ ժամանակամիջոցում վիթխարի
թռիչք կատարել դեպի առաջընթացի բարձունքները։ Ո՛չ, դա բացառված էր։
Սովետական Հայաստանի պատմական փորձը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը Հա-
յաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակին նվիրված
հանդիսավոր նիստում արտասանած ճառում,— կրկին ու կրկին համոզում է,
որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման ու
մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների
եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշ-
նակ զարգացման շնորհիվ։

Անցյալում Ադրբեջանի ինդուստրիայի միակ ճյուղը՝ նավթարդյունաբե-
րությունն էր, որը կենտրոնացած էր միայն Բաքվում ու նրա մերձակայքում,
ուր հիմնականում տեր ու տնօրինություն էին անում օտարերկրյա մոնոպո-
լիաները։ Չնայած մեր դարասկզբին Ադրբեջանը տալիս էր նավթի համաշ-
խարհային հանույթի կեսը, բայց երկիրը, ամբողջությամբ վերցրած, տնտե-
սական զարգացման ցածր մակարդակի վրա էր, ժողովուրդը խարխափում էր
խավարի ու տգիտության մեջ։ Նա իր հարստությունների, իր ճակատագրի
տերը չէր։ Ներկայումս Սովետական Ադրբեջանը դարձել է սոցիալիստական
ծաղկուն հանրապետություն՝ բարձր զարգացման հասած ժամանակակից բազ-
մաճյուղ տնտեսությամբ, հոգևոր մշակույթով։ Այժմ 12 օրում եղբայրական
հանրապետությունը տալիս է այնքան արդյունաբերական արտադրանք, որքան
թողարկում էր նախահեղափոխական շրջանի մեկ տարում։ Եթե անցյալում
Ադրբեջանի բնակչության ավելի քան 90 տոկոսն անգրագետ էր, ապա ներ-
կայումս 1,6 միլիոն մարդ սովորում է հանրակրթական դպրոցներում և բարձ-
րագույն ուսումնական հաստատություններում։ Այստեղ կան մեծ թվով
բարձրորակ մասնագետներ, գիտական աշխատողներ։

Մենք այսօր հպարտանում և ուրախանում ենք եղբայրական կիրգիզ ժո-
ղովրդի ձեռք բերած փառավոր հաջողություններով։ Իսկ դրանք, իսկապես,
ապշեցուցիչ են։ Մի՞թե նախկին քոչվոր ժողովուրդն ի վիճակի էր մեծ Հոկ-
տեմբերի հաղթանակից հետո, առանց մյուս սովետական եղբայր ժողովուրդ-
ների օգնության ու համագործակցության, հսկայական թռիչք կատարել նա-
հապետական-ֆեոդալական կացութաձևից դեպի սոցիալիզմ, ստեղծել հզոր
էկոնոմիկա, զարգացած գիտություն ու կուլտուրա։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությունը փոխադարձաբար շաղկապված
միասնական կոմպլեքս է, որը ներառնում է բոլոր հանրապետությունների
էկոնոմիկան, զարգանում ի շահ ամբողջ երկրի և առանձին վերցրած յուրա-
քանչյուր հանրապետության։ Սովետական յուրաքանչյուր հանրապետություն,
յուրաքանչյուր ժողովուրդ իր աշխատանքով արժանի ավանդ է մուծում ընդ-
հանուր գործում, արտադրանքի համամիութենական ֆոնդի մեջ և, իր հերթին,
այդ ֆոնդից ստանում այն ամենը, ինչ անհրաժեշտ է իր բարգավաճման
համար։

Այստեղից էլ հետևում է, որ ինչպես ողջ երկրի, այնպես և նրա յուրա-
քանչյուր հանրապետության սոցիալ-տնտեսական նվաճումները ձեռք են բեր-
վել սովետական բոլոր ազգերի ու ազգությունների սերտ համագործակցու-
թյան, մշտական փոխադարձ օգնության շնորհիվ։ Եվ եթե այս կամ այն հան-
րապետությունը տնտեսության զարգացման ասպարեզում հասել է որոշակի
հաջողությունների, ապա դրանում ներդրված են ո՛չ միայն տվյալ, այլև մյուս
հանրապետությունների աշխատավորների նյութական միջոցները, ուժերը։

Սովետական ժողովուրդների համատեղ ուժերով են կառուցվել Մագնի-
տագորսկն ու Կուզբասը, Դնեպրոգէսն ու Բրատսկի հիդրոէլեկտրակայանը,
Թուրքսիբն ու Ֆերգանայի ջրանցքը։ Միացյալ ուժերով նրանք այսօր ակոսում
են տիեզերքի անհունները, թափանցում ատոմի խորքը։ Մի՞թե միայն Ղա-
զախստանի աշխատավորները կկարողանային մշակել 25,5 միլիոն հեկտար
խամ ու խոպան հող։ Վիթխարի էր հիտլերյան զավթիչների պատճառած նյու-
թական վնասը, մեր երկիրը կորցրել էր իր ազգային հարստության մոտավո-
րապես 30 տոկոսը։ Եվ միայն սովետական ժողովուրդների համատեղ ուժե-



րով, նրանց նյութական միջոցների կենտրոնացման շնորհիվ հնարավոր դար-
ձավ կարճ ժամանակամիջոցում ապաքինել պատերազմի ծանր վերքերը։

Նոր հասարակարգի կառուցման համար համատեղ պայքարում ծնունդ
առան ու զարգացան սոցիալիստական ազգերի ու ազգությունների ներ-
դաշնակ հարաբերությունները, սերտ միասնությունն ու անխախտ բարեկա-
մությունը կայուն հիմքեր ստեղծեցին նրանց բարգավաճման ու մերձեցման
համար։ Համակողմանի զարգանում ու ծաղկում են սոցիալիստական ազգերը,
միաժամանակ նրանց միջև տեղի է ունենում աստիճանական մերձեցում, ուժե-
ղանում է նրանց փոխազդեցությունը և փոխհարստացումը։ Դրանք սոցիալիզ-
մի պայմաններում ազգերի և ազգային հարաբերությունների զարգացման
երկու առաջադիմական տենդենցներն են, դրանց զարգացման միևնույն օրի-
նաչափ պրոցեսի երկու կողմերի միասնությունը։ Ազգերի ծաղկումն ու մեր-
ձեցումը սերտ կապված են իրար և պայմանավորված են միմյանցով։ Ահա
թե ինչու չի կարելի իրար հակադրել ազգերի ծաղկումն ու մերձեցումը։ Առանց
մերձեցման անհնար է ազգերի ծաղկումը, ինչպես և առանց ազգերի համա-
կողմանի ծաղկման՝ նրանց մերձեցումը։ Միայն այդ միասնության մեջ կա-
րելի է ըմբռնել սոցիալիզմի օրոք ազգային հարաբերությունների էությունը։

Սոցիալիստական ազգերի ծաղկումն ու մերձեցումը մեր հասարակության
զարգացման օբյեկտիվ օրենքն է, նրանց բարգավաճման օրինաչափությունը։

Սոցիալիստական շինարարության տարիներին ազգային հարցի լուծման,
սոցիալիստական ազգերի մերձեցման պրոցեսում առաջացավ մարդկանց
պատմական նոր հանրությունը՝ սովետական ժողովուրդը։ Այդ ինտերնացիո-
նալ հանրությունը ՍՍՀՄ դասակարգերի և սոցիալական խմբերի եղբայ-
րական միասնության, սոցիալիստական ազգերի ու ազգությունների համա-
խմբվածության մարմնավորումն է։

Մարդկության նախընթաց պատմության մեջ չի եղել ժողովուրդների շա-
հերի և նպատակների այդպիսի անխորտակ միասնություն, այդպիսի հոգե-
հարազատություն և հավատարմություն հայրենիքին, որպիսիք դրսևորվում են
մեր երկրում։ Եվ երբ հիտլերյան ֆաշիզմը ձեռք բարձրացրեց սոցիալիստա-
կան հայրենիքի վրա, սովետական ժողովուրդները մեկ մարդու նման դաժան
գոտեմարտում կրծքով պաշտպանեցին Հոկտեմբերի նվաճումները, ցուցադրե-
լով իրենց անսահման սերն ու հավատարմությունը հայրենիքին։ Դա ՍՍՀՄ
ամրության, սոցիալիստական ազգերի անխորտակ միասնության և բարեկա-
մության մեծ քննությունն էր։

* * *

Կոմունիստական շինարարության պրոցեսում տեղի են ունենում սոցիա-
լիստական ազգերի հետագա բազմակողմանի ծաղկում և աստիճանական մեր-
ձեցում, փոխադարձ շփման ընդլայնում և լիակատար միասնության ամրա-
պնդում։ Ուժեղանում է ժողովուրդների փոխազդեցությունը, ամբողջ կացու-
թաձևի ինտերնացիոնալացումը։

Անցած տարիներին կուսակցության ղեկավարությամբ,— ասված է XXIV
համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— նոր
քայլեր արվեցին յուրաքանչյուր եղբայրական սովետական հանրապետության
համակողմանի զարգացման, մեր երկրի բոլոր ազգերի և ազգություն-
ների հետագա աստիճանական մերձեցման նպատակով։ Այդ մերձեցումը

տեղի է ունենում ազգային առանձնահատկություններն ուշադրությամբ նկատի առնելով, սոցիալիստական ազգային կուլտուրաները զարգացնելու պայմաններում։ Այդ հարցում կուսակցության քաղաքականության էությունն այն է, որ մշտապես հաշվի առնվեն թե՛ մեր Միության ընդհանուր և թե՛ նրա մեջ մտնող հանրապետություններից յուրաքանչյուրի շահերը։

Այսպիսին է մեր հասարակության զարգացման արդի փուլում ազգային հարցի ոլորտում կուսակցության քաղաքականությունը, որը մարմնավորված է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում։

Ինչպե՞ս է ընթանում ազգերի ծաղկման ու մերձեցման պրոցեսը, որո՞նք են այդ օբյեկտիվ օրինաչափության գործոնները։

Կոմունիզմի համար մղվող պայքարում գլխավորը նոր հասարակարգի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումն է, որը կառուցվում է ամբողջ հասարակության համար և սովետական ազգերի ու ազգությունների համատեղ ջանքերով, նրանց անձնազոհ աշխատանքով։ Այն, ինչպես ասված է ՍՄԿԿ ծրագրում, է՛լ ավելի սերտորեն կմիավորի ժողովուրդներին, ավելին, ինտենսիվ կդարձնի ազգերի միջև նյութական ու հոգևոր արժեքների փոխանակությունը, կաճի յուրաքանչյուր հանրապետության, յուրաքանչյուր ժողովրդի ավանդը կոմունիստական շինարարության ընդհանուր գործում։

ՍՍՀՄ միասնական ժողովրդական տնտեսությունն ազգերի հետագա մերձեցման օբյեկտիվ հիմքն է։ Երկրի տնտեսության զարգացման միասնական պետական պլանավորման մեջ ներդաշնակորեն զուգորդվում են ՍՍՀՄ և հանրապետությունների, սոցիալիստական ազգերի ինտերնացիոնալ և ազգային շահերը։ Այդ պլանների իրականացման ընթացքում ընդլայնվում ու խորանում են հանրապետությունների միջև աշխատանքի բաժանումը, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը, բարելավվում է արտադրաուժերի տեղաբաշխումը, բազմակողմանի բնույթ են ստանում միջհանրապետական տնտեսական կապերը։ Արտադրաուժերի հետագա ինտերնացիոնալացումը և միութենական հանրապետությունների միջև եղած տնտեսական կապերի կատարելագործումն ավելի սերտորեն է մերձեցնում, տնտեսապես համախմբում բոլոր ազգերը։

Գործողության մեջ է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանը, որի կենսագործմամբ նոր բարձրության կհասնի ինչպես միութենական, այնպես էլ բոլոր հանրապետությունների էկոնոմիկան։ Միաժամանակ նոր առաջընթաց քայլ կարվի հանրապետությունների տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման մակարդակների հետագա համահարթեցման համար։ Այդ նպատակով նախատեսվում է 1971—1975 թթ. մի շարք հանրապետություններում ավելի բարձր տեմպերով զարգացնել էկոնոմիկան։ Եթե իններորդ հնգամյակում 1970 թվականի համեմատությամբ, ՍՍՀՄ արդյունաբերությունը, միջին հաշվով աճելու է 47 տոկոսով, ապա Կիրգիզիայում՝ 55, Բելոռուսիայում՝ 58, Ղազախստանում՝ 59, Մոլդավիայում՝ 62, Հայաստանում և Թուրքմենիայում՝ 64 տոկոսով և այլն։

Մեր զարգացման արդի փուլում սոցիալիստական ազգերի բարգավաճման ու մերձեցման կարևոր ոլորտը կուլտուրայի բնագավառն է։ Ինչպես ասվեց վերը, սոցիալիզմի դարաշրջանում աննախընթաց զարգացան ու ծաղկեցին ազգային կուլտուրաները։ Այսօր մեր երկրի յուրաքանչյուր ժողովրդի կուլտուրա ունի սոցիալիստական, ըստ էության ինտերնացիոնալ բովանդա-



կություն և ազգային ձև, որն արտահայտվում է ժողովրդի լեզվի, կենցաղի, ավանդույթների մեջ։ Սոցիալ-քաղաքական և տնտեսական արմատական վերափոխությունների շնորհիվ և դրանց ազդեցության տակ, ազգային այդ ձևերը, դրանց տարրերը աստիճանաբար փոխակերպվում են, հղկվում, կատարելագործվում, հաղթահարվում են հնացած ձևերը։

Կոմունիստական շինարարության պայմաններում ազգային կուլտուրաների ծաղկումն ու մերձեցումը, հոգևոր արժեքների և կադրերի փոխանակումը միասնական, փոխադարձաբար իրար շաղկապված պրոցես են։ Մի կողմից՝ սոցիալ-տնտեսական, գաղափարական-քաղաքական ընդհանրության պայմաններում ծաղկում է յուրաքանչյուր ժողովրդի կուլտուրան, մյուս կողմից՝ ազգային կուլտուրաների զարգացումը հանգեցնում է սոցիալիստական ազգերի կուլտուրաների առավել մերձեցմանը։ Մշտապես աճող և խորացող փոխադարձ կապերի, շփման ու փոխազդեցության ճանապարհով տեղի է ունենում ազգային կուլտուրաների փոխհարստացում, ծաղկում, զարգանում են ինտերնացիոնալիստական տարրերը ազգերի կուլտուրաների մեջ։

Յուրաքանչյուր սոցիալիստական ազգի կուլտուրա պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի, համընդհանուր բազմազգ կուլտուրայի բաղկացուցիչ մասն է։ Այսպիսով, սովետական ինտերնացիոնալ կուլտուրան սովետական բոլոր ազգերի ու ազգությունների բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային կուլտուրաների դիալեկտիկական միասնությունն է։

Սոցիալիզմը և կոմունիզմը ապահովում են ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների լեզուների ազատ ու անկաշկանդ զարգացումը՝ նրանց իրավահավասարության և փոխհարստացման հիմքի վրա։ Միաժամանակ, ՍՍՀՄ ժողովուրդների հոգևոր կյանքի զարգացման, նրանց կուլտուրաների փոխազդեցության և փոխհարստացման գործում մեծ է ռուսաց լեզվի դերը։ Ինչպես ասված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, սոցիալիստական ազգերն այն կամովին ընտրել են որպես ազգամիջյան հաղորդակցության և համագործակցության ընդհանուր լեզու, որը դարձել է սովետական ժողովուրդների փոխադարձ կապի ու համախմբվածության հզոր զենքը, հայրենական ու համաշխարհային կուլտուրայի լավագույն նվաճումները յուրացնելու միջոցը։

Ազգերի հետագա մերձեցմանը մեծապես նպաստում է բնակչության միգրացիան։ Երկրի տարբեր հանրապետություններում ու վայրերում, միութենական ընդհանուր պլանով, կառուցվում են արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ ու էլեկտրակայաններ, նոր ջրանցքներ, գազամուղներ, երկաթուղային մագիստրալներ, որոնք պահանջում են մեծ թվով բանվորական կադրեր, բազմապիսի մասնագիտությունների տեր ինժեներներ ու տեխնիկներ, ճարտարապետներ և այլն։ Մեր երկրի էկոնոմիկայի զարգացման այս օբյեկտիվ պրոցեսը նպաստում է, որ ավելի բազմազգ դառնա հանրապետությունների բնակչության կազմը։ Բազմաթիվ խոշոր կառույցներում ձևավորվում են աշխատանքային կոլեկտիվներ, ուր ուս-ուսի աշխատում են տասնյակ ազգերի ներկայացուցիչներ։ Այսպես, Արփա-Սևան ստորերկրյա կառույցում, հայերի հետ միասին, աշխատում են ՍՍՀՄ 36 ազգերի ներկայացուցիչներ, որոնցից շատերը եկել են մյուս հանրապետություններից՝ օգնելու հաջողությամբ ավարտելու մեր հանրապետության համար կենսական նշանակություն ունեցող այդ կառույցի շինարարությունը։ Բնականաբար, վերոհիշյալ ինտերնացիոնալ աշխատանքային կոլեկտիվում տարբեր ազգերի աշխատավորներն

ավելի մոտիկից են շփվում միմյանց. համատեղ աշխատանքում աստիճանաբար նրանց մոտ ձևավորվում են հոգևոր կերպարի ու կենցաղի ընդհանուր գծեր, մի բան, որ նրանց ազատում է ազգային սահմանափակության վերապրուկներից, խորացնում ինտերնացիոնալիզմի, միասնական եղբայրական մեծ ընտանիքի պատկանելության զգացումը։

Սովետական ժողովուրդների բարեկամության ամրապնդման, նրանց մերձեցման գործում մեծ դեր են խաղում սոցիալիստական մրցությունը, արտադրական ու գիտական առաջավոր փորձի փոխանակությունը, աշխատանքի մարդկանց փոխադարձ շփումները, այցելությունները և այլն։ Զգտելով բազմապատկել իրենց ավանդը կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում, սովետական տարբեր ազգերի ու ազգությունների աշխատավորները սոցիալիստական մրցության մեջ են մտնում միմյանց հետ, կամովին ստանձնելով բարձր պարտավորություններ՝ համատեղ ուժերով ու ջանքերով իրականացնելու կուսակցության առաջադրած խնդիրները։

Սոցիալիստական մրցությունում վառ դրսևորվում են սովետական մարդու կերպարի բնորոշ գծերը՝ հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը, անձնվիրությունն ու հավատարմությունը սոցիալիստական հայրենիքին։ Մրցությունը խթանում է ազգերի մերձեցմանը, նրանց բարեկամության ամրապնդմանը։

Սոցիալիստական հասարակարգի առաջընթացի արդի ժամանակաշրջանում կուսակցությունը ջանում է ավելի զարգացնել կոմունիզմ կառուցողների սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի գիտակցությունը, միասնական սոցիալիստական հայրենիքին, ժողովուրդների մեծ ընտանիքին պատկանելու զգացումը։

Կուսակցությունը,— ասված է ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ,— այսուհետև ևս կամրապնդի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, հետևողականորեն վարելով սոցիալիստական ազգերի ծաղկման և նրանց աստիճանական մերձեցման լենինյան կուրսը։ Կուսակցությունն այսուհետև ևս բոլոր աշխատավորներին կդաստիարակի սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, նացիոնալիզմի ու շովինիզմի, ազգային սահմանափակության ու սնապարծության դրսևորումների նկատմամբ անհաշտության ոգով՝ ինչ ձևով էլ որ դրանք արտահայտվեն, բոլոր ազգերի և ազգությունների հանդեպ խոր հարգանքի ոգով։



# ԵՂԲԱՅՐՆԵՐԸ

Վ. Բ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

Կան երևույթներ, փաստեր, որոնք շատ հիշելուց, օգտագործելուց կամ դրանց մասին խոսելուց կորցնում են ուժը, դառնում սովորական, աննետաքրքիր։ Կան նաև այնպիսիք, որ որքան շատ հիշվեն, որքան շատ կրկնվի դրանց մասին ասվածը, չեն փայլատվում։

Մի՞թե կարող են կորցնել իրենց ուժը Երևանի հեղափոխության թանգարանում պահվող այն վավերագրերը, որոնք վերաբերում են Մելնիկովին և Կուդրովին, այն ռուս օդաչուներին, որոնք 1920 թվականի դեկտեմբերին, արհամարհելով վտանգը, առաջին օդանավն իջեցրին հայկական հողի վրա, բերելով Սովետական Ռուսաստանի օգնությունը։ Տեխնիկայի լեզվով ասած, Մոսկվա—Երևան կանոնավոր չվերթի առաջին երթուղին էր այդ, Ռուսաստանի և Հայաստանի՝ տնտեսական, բովանդակությամբ նոր կապերի ու համագործակցության առաջին արտահայտությունը։

Հիմա, 50-ամյա հեռավորությունից, ես ուզում եմ զուգահեռ անցկացնել պատմության և այսօրվա միջև։ Սակայն կյանքն այնպիսին է դարձել, որ դժվար է նույնիսկ համեմատելը։ Ու, թեպետ շատ է փոխվել կյանքը, փոխվել են քաղաքներն ու գործարանները, մարդիկ ու շրջապատը, նույնն են մնացել մեր էությունն ու մեր հաջողությունների հիմքը։ Միայն մեծ, հիասքանչ պատերն են, որ բարձրացել են հիմնաքարի վրա, բարձրացել ու կառուցել մի հոյակապ շինություն— մեր մեծ օջախը։

Ահա թե ինչ է պատմում Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի կուսակցական կազմակերպության քարտուղար Մյասնիկ Գասպարյանը։

Կոմբինատի նախագծերն սկսեցին կազմել 1958 թվականին։ Հետո՝ շինարարությունը։ Մի քանի ամիս էր անցել, զգացինք առաջին լուրջ դժվարությունները. տասնյակ արտադրամասերի նախագծումն ու շինարարությունը պետք էր սկսել անհապաղ, քանի որ արտադրությունը մեզ մոտ անընդհատ է. մեկի թափոնը հումք է դառնում մյուսի համար։ Մենք նմանվեցինք մեծ ուղերթ ելած ճամփորդին, և զգացինք, որ մենակ չենք կարող։

Կոմբինատը կենսական անհրաժեշտություն էր թե՛ հանրապետության և թե, հատկապես, Հրազդանի շրջանի տնտեսական զարգացման համար։ Իսկ գործը ձգձգվում էր, դժվարությունները անհամար էին։ Այդ ժամանակ մեզ օգնության հասան «Լենպրոմստրոյ», «Գրուզգոսպրոեկտ», «Մոսկվա-Գիպրոսպեցպրոեկտ», «Յուժտեխմոնտաժ» տրեստի Նովորոսիյսկի հատուկ մոնտաժային վարչությունը և նախագծային ու մոնտաժային տասնյակ այլ կազմակերպություններ։ Այո՛, ծանր պահին մենակ չմնացինք։

Ծանր պահ...

Ու նորից հիշում եմ 1920 թվականի դեկտեմբերը, երբ Մելնիկովն ու Կուդրովը Ռուսաստանի Սովետական Հանրապետության օգնությունը հասցրին Հայաստանին։ Երկիրը քայքայված էր, ավերված, ամեն տեղ սովալլուկների, գաղթականների խմբեր, համաճարակ, անապաստանություն։ Ռուսաստանի ուղարկած ոսկին թեթևացրեց նորաստեղծ հանրապետության հոգսը. սովամահ եղող ժողովրդի համար Պարսկաստանից հաց գնեցին։

Հիմա էլ պահը ծանր էր։ Անհրաժեշտ էր Հրազդանում կարճ ժամանակամիջոցում ստեղծել լեռնաքիմիական հսկա, մեծ քանակությամբ ցեմենտ արտադրել օրավուր աճող քաղաքների, գործարանների, ճանապարհների ու կամուրջների, հնգամյակի նորակառույցների համար։ Ժամանակը թեպետ մեր օգտին էր աշ-

խատում, բայց այդ ամենը պետք է ստեղծվեր արագ, կարճ ժամկետում: Եվ հասավ օգնությունը: Հարյուրավոր մասնագետներ, նախագծային ու մոնտաժային բազմաթիվ կազմակերպություններ Հրազդան եկան Սովետական Միության տարբեր անկյուններից:

Հրազդանցիներն սկսեցին աշխատել հանգիստ ու վստահ: Հսկան հասակ առավ, աշխարհին մեկնեց իր այցեքարտը— երկինք մխրճված ծխնելույզներն ու ամբարները:

## ՆՈՎՈՐՈՍԻՅՍԿԻՑ ԵԿԱՆ ՆՐԱՆՑ ՓՈԽԱՐԵՆ, ՈՎՔԵՐ ՉԵԿԱՆ 30 ՏԱՐԻ ԱՌԱՋ

Ամեն անգամ Սևան—Երևան ճանապարհով անցնողները նկատում էին, որ Հրազդանից այն կողմ, փոքրիկ հարթության վրա, օր-օրի բարձրանում է մի նոր ավան: Գիտեին, որ ապագա հսկա կոմբինատի բնակելի շենքերն են: Բայց հեռվից չէր երևում այն մեծ աշխատանքը, որ արդեն կատարվում էր կոմբինատում, ցեմենտի արտադրությունն սկսելու համար: Անհրաժեշտ էր սկսել ցեմենտի վառարանների մոնտաժումը: Արարատի ցեմենտի կոմբինատի աշխատողները խորհուրդ տվեցին մասնագետներ հրավիրել: Տեղում մոնտաժողներ չկային: Գործն իր վրա վերցրեց Նովոռոսիյսկի հատուկ մոնտաժային վարչությունը: Մի քանի օրից Հրազդանում էր Ստանիսլավ Կոբզևի մոնտաժողների բրիգադան: Եկել էին նրանք՝ անհանգիստ միայն այն բանի համար, որ չեն կարողանա աշխատել հարավի շոգ պայմաններում: Բայց զարմացել էին: Հրազդանը նրանց դիմավորեց 30 աստիճան սառնամանիքով: Ցրտաշունչ ձմեռ, բուք: Բայց աշխատանքը չդադարեց ոչ մի վայրկյան: Բրիգադայի ղեկավարները՝ Ստանիսլավ Կոբզևը և Հովհաննես Խաչատուրովը գիտեին, որ աշխատելու են ժամանակավոր, որ գործն ավարտելուց հետո մեկնելու են այլ հասցեներով: Դրա համար նրանք տեղում կադրեր պատրաստելու միջոցներ ձեռնարկեցին. չէ՞ որ առջևում մյուս վառարանների մոնտաժն էր, գունավոր ցեմենտի ստացման բարդ գործը: Չկար հանգիստ ու կիրակի... Մոնտաժից հետո դասընթացներ, ապա հավաքվում էին ակումբում. շինարարներին էին այցելում շրջանային կուլտուրայի տան ինքնագործ խմբերը, դերասաններ՝ մայրաքաղաքից: Իսկ առավոտյան՝ կրկին աշխատանք:

Լինում էին պահեր, երբ թվում էր, թե սպառվել են ուժերը, դադար ու հանգիստ է պետք: Բայց Հրազդանում այդ ե՞րբ է լինում խաղաղ ու հանգիստ: Ցուրտ ձմռանը պետք է հաջորդեր անձրևային գարունը. աշխատանքը չէր կարող հարմարվել տարվա եղանակին: Եվ Հյուսիսային Կովկասից եկած ջահելներն աշխատում էին նվիրումով, ինքնամոռաց:

— Քիչ մնաց, կավարտենք վառարանը և մի լավ կտաքանանք,— կատակում էր Ստանիսլավը: Դա կատակ չէր. գիտեին, որ «տաքանալ», այսինքն՝ հանգստանալ կարող էին միայն գործն ավարտելուց հետո: Ամիսներ անց ամեն ինչ ավելի հանգիստ էր: Նովոռոսիյսկցի մոնտաժողները հրազդանցի ջահելներից հիանալի մասնագետներ պատրաստեցին, որոնք դարձան անվանի վարպետներ, արժանի օգնականներ: Այդպես սկսվեց վճռական, եռանդուն պայքարը ցեմենտի համար:

Այն տևեց մեկ տարի: Նովոռոսիյսկցի երիտասարդները ոչինչ չխնայեցին իրենց հայ բարեկամներին օգնելու համար:

— Ուրախ ենք, որ պատվով կատարեցինք մեր գործը,— հրաժեշտի ժամանակ ասաց բրիգադայի ինժեներ Ստանիսլավը:— Ուրախ ենք, որ ձեզ հետ էինք ծանր պահին ու միասին հաղթահարեցինք այն:

Ծանր պահ...

Այդ պահերին միասին լինում են միայն եղբայրները:

Ես դարձյալ դիմում եմ պատմությանը... 1942 թվական. Նովոռոսիյսկը կրակ-ավերի մեջ էր, և օդից դեսանտ իջեցվեց: Հայաստանից մեկնած մի խումբ ջահելներ կազմեցին 255-րդ ծովային հետևակի բրիգադը և 225 օր կռվեցին թշնամու օղակում:

225 հերոսական օրեր, հերոսացած կյանքեր, նաև կորուստներ... Նովոռոսիյսկն ազատագրվեց սովետական զինվորի արյամբ, որին խառնված էր և «Մալայա Զեմլյայի»՝ հայաստանցի պաշտպանների արյունը: Հարյուրավոր երիտասարդ կյանքեր խզվեցին: Այժմ, 30 տարի անց, 255-րդ բրիգադի շտաբի պետ Բորիս Հովհաննիսյանը պատմում է.

— Հիանալի ջահելներ էին, նրանք պետք է ապրեին, վայելեին այսօրվա երջանկությունը, մեզ հետ միասին կառուցեին նոր քաղաքներն ու գործարանները: Բայց...

Աղետալի պահին Նովոռոսիյսկ մեկնած ջահելներից Հայաստան չվերադարձան շատերը: Նրանց փոխարեն ծանր պահին Հայաստան եկան ուրիշները...

## ԳԵՆԱԴԻ ԻՎԿԻՆԸ ԵՎ ՈՒՐԻՇՆԵՐԸ

Երկար, անվերջ պտտվող վառարանը հրե հսկայի է նման: Տաք օդն այրում է մարդու երեսը, թեպետ մարդն այժմ հեռվից միմիայն ապարատներն է կառավարում:

— Ապարատն իր հերթին, բայց մի կարգին պետք է ինքդ շոշափես վառարանը, շոշափես նրա տրամադրությունը,— բացատրում է պտտվող վառարանի մեքենավար Գենադի Իվկինը:

Վաղուց է այստեղ, սիրել է լեռնոտ երկիրը, մնացել մշտական բնակության ու աշխատանքի:

— Մեկ-մեկ կարոտում եմ Մոլդավիան, դե՜, ի՞նչ կա որ, այցի եմ գնում:

Հիվանդասենյակում առուգայցի եկած պրոֆեսորի նման, հարցուփորձ է անում վառարանի մոտ աշխատողներին, ստուգում ամեն մանրուք, ապարատների սլաքները... Հետո դիմում է ընկերներին, ինչպե՞ս են:

Իվկինը կոմբինատի լավագույն մեքենավարն էր: Ասում եմ էր, որովհետև նրա նման հիմա շատերը կան: Երբ նոր էին սկսել աշխատանքը, Գենադին միակն էր: Արթուն պարտիզպանի նման շրջում էր վառարանների երկայնքով, ամեն տեղ էր, հասնում էր ամենքին: Հետո որոշեց ընկերներին ևս վարպետ դարձնել: Իր «գաղտնիքները» սովորեցրեց Ռուբիկ Նազարյանին, Հայրապետ Կիրակոսյանին, Պավլիկ Աբրահամյանին:

Իվկինի հետ խոսում եմ Մոլդավիայի մասին: Նա պատմում է սիրով. նույնպիսի ջերմությամբ խոսում է և իր նոր բնակավայրի, կոլեկտիվի ու շրջապատի մասին: Լսում եմ նրան, մտաբերում իմ նոր ծանոթներին՝ թաթար Հաջիմուրադ Խալիմովին, ուկրաինացի Անատոլի Ստրատովիչին, ռուս Վալենտին Կարիտովին և մյուսներին: Մարդիկ, որ եկել են օգնելու հայ լեռնագործներին, ու նրանց ազգության մասին հիշում ու հիշեցնում են միայն բարեկամության երևույթների ժամանակ:

Հաջիմուրադ Խալիմովի մասին պատմելիս բոլորի դեմքին մի բարի, մտերմիկ ժպիտ է ծաղկում:

— Ա՜յ թե տղա է, հա՜...

Թաթարիայից է, իր ողջ էությամբ կապված նոր կոլեկտիվին: Արտադրամասի կուսակցական կազմակերպության քարտուղարն է նա, մեքենավար-վարպետ, հիանալի ընկեր ու... մարզիկ: Կոմբինատի № 1 թենիսիստն է, հանրապետության առաջնության մասնակիցը:

— Ձեռքից գնացել է,— կատակում է Հաջիմուրադի կինը՝ Նինա Պիչչակովան,— խելքը տվել է թենիսին ու մոռացել է տուն, տեղ: Կա՜մ թող չեմպիոն դառնա, կա՜մ լրիվ ձախողվի, թե չէ հանգիստ չունի:

Այդ անհանգիստ տղան մենակ չէ կոմբինատում: Շատերն են նրա նման պրպտող, որոնող, բազում նախասիրությունների տեր: Մեկը մարզիկ է, մյուսը՝ ինքնագործ խմբի լավագույն մենակատար, երրորդը՝ նորարար: Եվ այդ ամենը շնորհիվ այն բանի, որ անդամն են մեծ, համերաշխ կոլեկտիվի, ստեղծագործ ու հիանալի կազմակերպության:

***

Հրազդանի կոմբինատը օր-օրի հասակ է առնում հերոսական աշխատանք կատարող մարդկանց ջանքերով. փոխօգնության և եղբայրության հաղթանակն է դա: Կոմբինատի բարդ պրոցեսները, նոր արտադրատեսակների ու կարողությունների գործարկումը տասնյակ նոր մասնագիտությունների անհրաժեշտություն էին հարուցել: Սուրեն Պետրոսյանը հումքի թաց աղացման վարպետի գործը սովորեց անվանի վարպետ, ցեմենտի տասնյակ այլ գործարաններում փորձ ու հմտություն ձեռք բերած Անատոլի Ստրատովիչից: Ուկրաինացու անմիջական ու պարզ բնավորությունը լավ բարեկամության հիմքը հանդիսացավ: Սուրենը դարձավ Անատոլիի լավագույն ընկերը: Այդ ընկերության հիմքում աշխատանքն էր: Այս տարվա ծանր, ցրտաշունչ ձմռան պայմաններում աշխատանքը ջերմացրեց մարդկանց սրտերը, որ իրենց հոգու այդ ջերմությունը հաղորդեցին և շրջապատին:

Պտտվեցին վառարանները՝ անխափան, համաչափ: Իսկ դրսում 30 աստիճան ցուրտ էր: Վթարներ էին լինում, որոնք վերացվում էին րոպեների ընթացքում, որովհետև իրենց դիրքերում էին մեքենավար Իվկինը, բեռնաթափող Սաֆար Հասանովը, հումքի բաժնի մեքենավար Հարություն Հարությունյանը, Սուրեն Պետրոսյանը և շատ ուրիշներ:

## ԻՆՉՈ՞Ւ ՉԻ ԾԽՈՒՄ ՓՈՇՈՒ ԱՄՊԸ

Ասում են՝ Հովհաննես Թումանյանն ափսոսում էր, որ Լոռվա կուսական լեռների անդորրը խախտեց շոգեքարշը: Ասում են նաև, թե շատերն ափսոսանքով են խոսում, որ Ծաղկաձորից ոչ հեռու, բնության գեղատեսիլ անկյունում է կառուցվել լեռնաքիմիական կոմբինատը: Ճիշտ է, ժամանակակից շենքերը, բարեկարգ բանավանը գրավում են շատերին, բայց մարդիկ էլի ասում են՝ ցեմենտի փոշին շատ է վնասում շրջապատը: Իրոք, մի ժամանակ Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի վրա ծխում էր փոշու ամպը: Դա հեռավոր անցյալում չէր: Մինչև վերջերս էլ ցեմենտի հսկայական կորուստ տալով, աղտոտում էր շրջապատը: Ի՞նչ անել: Կոմբինատի մասնագետների համար սա լուրջ հարց էր, որի կարգավորումը ո՜չ միայն տնտեսական մեծ գործ էր, այլև կօգներ շրջապատի և բնության մաք-

թյանը: Գործի գլուխ կանգնեց Վալենտին Կարիտովը: Ասպիրացիոն տեղամասի պետի լավագույն օգնականը դարձավ մեխանիկ Ռաֆիկ Աբրահամյանը: Համատեղ որոնումներով անցան առաջին ամիսները: Ամեն օր հանգամանորեն ստուգվում, ճշտվում էին փոշի առաջացնող գործոնները: Պարզվեց, որ փոքր են փոշեմուղ խողովակների տրամագծերը, որի պատճառով և մեծ քանակությամբ ցեմենտափոշի էր արտամղվում: Փոխվեցին, մեծացվեցին խողովակները, արտադրամասում սահմանվեց անընդհատ հերթապահություն: Փոշին նահանջեց, օրական լրացուցիչ ստացվեց հարյուրավոր տոննա ցեմենտափոշի, որն օգտագործվում է ապակու և այլ իրերի արտադրության համար: Կոմբինատում վերջերս տեղադրվեց փոշին մաքրող նոր սարք, որը պատրաստել են «Էներգոցվետմետգազոչիստկա» տրեստի Ուրալյան մասնաճյուղի աշխատողները. որպես այդպիսին այն միակն է Սովետական Միությունում:

Հիմա այլևս չկա փոշու ամպը, և միայն Հրազդանի ջերմաէլեկտրակենտրոնի խողովակների գոլորշին է բարձրանում երկինքն ի վեր: Մարդիկ էլ չեն ասում, թե ցեմենտի 12 տոկոսը որպես փոշի նստում է կանաչի ու անտառի վրա: Բայց ամենահետաքրքրասերներն իսկ չգիտեն, որ հսկայի նմանվող այդ շինության մեջ աշխատող ազնիվ ու աշխատասեր Վալենտին Կարիտովի, Ռաֆիկ Աբրահամյանի և շատ ուրիշների քրտինքով ու կամքով վերացվեց փոշու ամպը:

## ՈՐՊԵՍ ՎԵՐՋԱԲԱՆ

Գենադի Իվկին, Հաջիմուրադ Խալիմով, Ստանիսլավ Կոբզև, Ալեքսանդր Պախոմով, Անատոլի Ստրատովիչ. ռուս, թաթար, ուկրաինացի, մոլդավացի եկել, հայ բարեկամների հետ մի միասնական օջախ են կազմել, աշխատում, ապրում են մի հարկի տակ: Նրանց այստեղ է բերել ո՛չ էժան վաստակը (ուրիշ տեղ ավելի են վճարում), ո՛չ փափուկ, հանգիստ անկյունը (Հրազդանն այդպիսին չէ), ո՛չ աշխատանքի փնտրտուքը (սովետական երկրի ո՞ր անկյունում հիմա չեն կառուցում): Սա հենց այն օրինակն է, որին ասում են եղբայրական օգնություն: Նրանք եկել են, քանի որ գիտեն, համոզված են, որ իրենք շատ են պետք Հրազդանում, իրենց սպասում էին այստեղ:

Այդ եղբայրական ձեռքը կյանքի կկոչի Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի բոլոր կարողությունները, տասնյակ արտադրատեսակներ, նյութեր ու պատրաստուկներ, կոմբինատի արտադրանքը կառաքվի տասնյակ հասցեներով— Ռուսաստան, Ուկրաինա, Թաթարիա, Մոլդավիա... Իր հետ տանելով Հրազդանի պիտակը: Հայաստանին աշխարհի հետ տնտեսապես կապող 103 երթուղիներին կավելանան նորերը: Այդ երթուղիները բաբախող մեծ սրտի նյարդերն են, որոնց ուժ ու կենսունակություն է տալիս եղբայրության զարկերակը:

Այդպես կարող են ապրել միայն եղբայրները:



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՀԱՄԱԼՐԵԼ ԱՐԺԱՆԱՎՈՐՆԵՐՈՎ

Մ. Մ. ՓԱՓԱԶՅԱՆ

ՀԿԿ Իջևանի շրջկոմի առաջին քարտուղար

*Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմությունը, միջազգային կոմունիստական շարժման ուսանելի փորձը վկայում են, որ կուսակցության որակական կազմը, կոմունիստների գիտակցական բարձր մակարդակը, նրանց կազմակերպվածությունն ու համախմբվածությունը վճռական դեր են խաղում կուսակցության քաղաքական գծի մշակման ու իրականացման գործում: Հաշվի առնելով այս կարևոր հանգամանքը՝ ՀԿԿ Իջևանի շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները միշտ էլ ջանացել են ՍՄԿԿ շարքերի աճի հարցերը լուծել կուսակցության նոր պահանջներին համապատասխան: Չէ՞ որ կուսակցությունը միշտ էլ խնդիր է դրել անընդհատ բարելավել ՍՄԿԿ շարքերի որակական կազմը, բարձրացնել պահանջկոտությունը նոր անդամների ընդունելության նկատմամբ:*

*Անդրադառնալով կուսակցության շարքերի աճի հարցերին՝ Վ. Ի. Լենինն ընդգծում էր, որ կուսակցությանը ձևական անդամներ հարկավոր չեն: Մենք պետք է հասնենք այն բանին, որ կուսակցության անդամները լինեն օրինակելի ո՛չ միայն իրենց գիտակցականությամբ, այլև գաղափարայնությամբ և վարք ու բարքով: Լենինյան այս ցուցումը մեր կուսակցության գործունեության բոլոր էտապներում եղել և մնում է որպես նրա շարքերի համալրման, կուսկազմակերպությունների ամրապնդման ու մարտունակության բարձրացման ուղենիշ:*

*ՍՄԿԿ XXIII համագումարը, նշելով կոմունիստական շինարարության գործում կուսակցական-կազմակերպական աշխատանքի կարևոր նշանակությունը, կանոնադրության մեջ մտցրեց այնպիսի կարևոր փոփոխություններ, որոնք լիովին ապահովում են կուսակցության անդամության վերաբերյալ լենինյան սկզբունքի հետևողական կիրառումը: Համագումարը կրկին ընդգծեց, որ կուսակցության սոցիալական կազմում առաջատար տեղը պետք է պատկանի բանվոր դասակարգին: ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ կուսակցությունը հետևողականորեն կենսագործում է և կշարունակի այդ գի-*

ծը, որովհետև այն լիովին համապատասխանում է նրա բնույթին, սովետական հասարակության մեջ բանվոր դասակարգի խաղացած դերին։

Զարգացնելով կուսակցության շարքերի համալրման լենինյան դրույթները՝ ՍՄԿԿ XXIV համագումարը պահանջից այսուհետև ևս «...կարգավորիչ ներգործություն ունենալ կուսակցության շարքերի աճի վրա, դրանք անհատական ընտրության հիման վրա համալրել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության առավել արժանավոր ներկայացուցիչներով, հասնել այն բանին, որ ՍՄԿԿ-ի կազմը կուսակցությանը թույլ տա լավագույն ձևով լուծելու իր առջև կանգնած խնդիրները» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, 1971, էջ 123)։

Այս ամենը մեզ համար ղեկավար սկզբունք է։ Դրա ճիշտ կենսագործումը ՍՄԿԿ շարքերի համալրման հաջողության երաշխիք է։ Այս առումով հատկանշական են վերջին տարիների ընդունելության ցուցանիշները մեր շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում։ Եթե 1968—1969 թթ. բանվորները կազմել են ՍՄԿԿ շարքերն ընդունվածների 50—57 տոկոսը, ապա 1970-ին այն հասել է 65-ի։ Նույն տարիներին ՍՄԿԿ շարքերում կոլտնտեսականների ընդունելությունը կատարվել է շրջանի աշխատավորների սոցիալական կազմում նրանց ունեցած հարաբերակցության համապատասխան։ Դրականն այն է, որ 1968—1970 թթ. ՍՄԿԿ շարքերն ընդունված 150 ծառայողների 90 տոկոսից ավելին ինժեներա-տեխնիկական աշխատողներ են։

Կուսակցական շարքերի աճի բարելավման համար տարվող աշխատանքը բարձրացրեց ընդունվողների որակական կազմը անցյալ տարում։ Այսպես, օրինակ, ՍՄԿԿ շարքերն ընդունվածների մեջ բանվորները կազմել են 65,3, կոլտնտեսականները՝ 23 տոկոս, իսկ 1972 թ. առաջին կիսամյակում՝ համապատասխանաբար՝ 72 և 9,1 տոկոս։ Կուսակցության շարքերի համալրմանը բավարար ուշադրություն են դարձնում Այգեհովտի, Սևքարի սովխոզների, Կայան ավանի, ծխախոտի ֆերմենտացիոն գործարանի, Իջևանի փայտամշակման, բենտոնիտի ու գորգագործական կոմբինատների, «Լեսխոզմաշ» գործարանի, Սարիգյուղի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունները։

Այս կապակցությամբ նշենք, որ անցած տարվա չորրորդ եռամսյակի առաջադրանքների կատարման համար շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները շահեցին ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշն ու դրամական առաջին կարգի մրցանակը։ 1972 թվականի առաջին եռամսյակում շրջանի արդյունաբերողներն իրենց ձեռքում պահեցին փոխանցիկ դրոշը։

Այս հաջողությունների մեջ իրենց համեստ բաժինն ունեն նաև ՍՄԿԿ շարքերը նոր ընդունված երիտասարդ բանվորները, որոնք, մտնելով կուսակցության մեջ, հայրենանվեր աշխատանքի օրինակներ են տալիս։ Հատկանշական է գորգագործական կոմբինատի սկզբնական կուսկազմակերպության գործունեությունը։ Վերջին երեք տարվա ընթացքում այստեղ ՍՄԿԿ շարքերն ընդունվածների 95 տոկոսը արտադրության առաջավոր բանվորներ են։ Արտադրության մարդկանց նկատմամբ ցուցաբերվող ամենօրյա ուշադրությունն ու հոգատարությունը, կուսակցության մեջ նրանց ներգրավումը կոլեկտիվում ստեղծել են առաջադրված պլանները կատարելու, հասարակական կյանքում ու աշխատանքում միշտ առաջավոր լինելու ձգտում։ Ահա թե ինչու մի ժամա-



նակ տևականորեն ետ մնացող կոմբինատը 1971 թվականից սկսեց գերակատարել առաջադրված պլանները և այժմ պատկանում է հանրապետության առաջավոր ձեռնարկությունների թվին։

Կուսակցության շարքերի որակական բարելավումը վճռական բեկում մտցրեց կոմբինատի, առանձնապես գործման արտադրամասի սկզբնական կուսկազմակերպության ու կոլեկտիվի գործունեության մեջ։ Այստեղ ՍՄԿԿ 36 անդամներից 18-ը առաջավոր բանվորներ են և կուսակցության շարքերն են ընդունվել վերջին երեք տարում։ Ստեղծվել է բանվորների գործունյա մի կազմակերպություն, որը, ստանձնելով 411 մարդուց բաղկացած կոլեկտիվի ղեկավարությունը, հասնում է նորանոր հաջողությունների։ Արտադրամասի թողարկած գորգերը 1971—1972 թթ. մրցանակներ են շահել Մոսկվայի գեղարվեստական ցուցահանդեսում։

Նույնանման օրինակներ կարելի է բերել Իջևանի բենտոնիտի կոմբինատից, որտեղ կուսկազմակերպության անդամ-թեկնածուների 40 տոկոսից ավելին կուսակցության շարքերը նոր համալրած բանվորներ են, որոնք համարվում են նաև ձեռնարկության հիմնադիրները։ Կոմբինատի կոլեկտիվը սիստեմատիկաբար կատարում և գերակատարում է պետական պլանները։

Շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները ձգտում են ո՛չ թե կուսակցության մեջ ձևականորեն բարձրացնել բանվորների ու կոլտնտեսականների տոկոսը, այլ կիրառել անհատական ընտրության, «քիչ, բայց լավ» լենինյան հայտնի սկզբունքը։ Նրանք ՍՄԿԿ շարքերի ընդունելության գործերը ուսումնասիրում են բազմակողմանի, ընդունվողների արտադրական ցուցանիշների հետ միաժամանակ հաշվի առնում նրանց քաղաքական պատրաստականությունը, բարոյական կերպարը, ընդհանուր զարգացման մակարդակը և այլն։ Շրջանի կուսկազմակերպությունները սկսել են ավելի ուշադիր մոտեցում ցուցաբերել կուսակցության մեջ կատարվող ընդունելությանը, բարձրացրել են պահանջկոտությունը ընդունվողների նկատմամբ։

Կուսակցության շարքերն ընդունվողների ճիշտ ընտրության գործում լավագույն քննություն է բռնում նաև այն ձևը, երբ դիմողների գործերը, որպես կանոն, նախապես քննարկվում են կուսակցական խմբերում, արտադրամասային սկզբնական կուսկազմակերպություններում։ Կուսակցական այդ օղակների կարծիքն ու գնահատականը կարևոր են մարդկանց նկատմամբ օբյեկտիվ որոշում ընդունելու համար։ Լավ է, երբ այդ քննարկումներին մասնակցում են նաև ՍՄԿԿ շարքերն ընդունվողի աշխատանքային, անկուսակցական ընկերները, որոնք կարող են իրենց կարծիքը հայտնել։ Դրանով առավել կբարձրանա կուսակցության շարքերն ընդունվողի պատասխանատվությունն իր պարտականությունների կատարման և վարքագծի նկատմամբ։

ՍՄԿԿ շարքերի համալրման պատասխանատու գործում շրջկոմին մեծ օգնություն է ցույց տալիս կուսակցության շարքերն ընդունվողների և կոմունիստների անձնական գործերը քննող արտահաստիքային հանձնաժողովը, որը մեզ մոտ գործում է 1965 թվականից։ Ամեն անգամ կոնֆերանսից հետո փոփոխվում ու հաստատվում է հանձնաժողովի կազմը։ Այժմ նրանում ընդգրկված են կուսակցական, սովետական և տնտեսական աշխատանքի երկար տարիների փորձ ունեցող յոթ կոմունիստներ։ Հանձնաժողովի յուրաքանչյուր անդամի ամրացված է 12—19 սկզբնական կուսկազմակերպություն։ Նրանք սիստեմատիկաբար լինում են տեղերում, ուսումնասիրում ՍՄԿԿ շարքերի ընդու-

նելության կազմակերպման, կոմունիստների անձնական գործերի քննարկման
վիճակը, կոնկրետ օգնություն ցույց տալիս սկզբնական կուսկազմակերպու-
թյուններին։ Իր գործունեության ընթացքում հանձնաժողովը քննարկել է ավելի
քան 600 գործ։

Պրակտիկան ցույց է տվել, որ կուսակցության ապագա զինվորի արժա-
նիքները դրսևորվում են նրա կոմերիտական տարիքում՝ աշխատանքում և շըր-
ջապատում։ Այդ ժամանակ է զգացվում երիտասարդի մոտ լավագույն հատ-
կանիշներ զարգացնելու, աշխատանքի մարդու ու հայրենիքի հանդեպ սեր
դաստիարակելու, նրա գաղափարական մակարդակը բարձրացնելու կարիքը։
Այդ պարտականությունը պատվով են կատարում շրջանի սկզբնական կոմե-
րիտական կազմակերպությունները, որոնք իրենց շարքերում կոփում են վաղ-
վա կոմունիստին, նրան ուսուցանում կոլեկտիվի հոգսերով ապրելու, կարգա-
պահ, նախաձեռնող լինելու, միշտ նորին ու առաջավորին ձգտելու դժվարին ու
պատվավոր գործը։ Միանգամայն բնական է, որ ՍՄԿԿ XXIV համագումարը
պահանջեց երիտասարդությանը, մինչև 23 տարեկանը ներառյալ, կուսակցու-
թյան մեջ ընդունել միայն ՀամԼԿԵՄ-ի միջոցով։ Կոմերիտական կազմակեր-
պություններն իրենց շարքերից արժանավորներին երաշխավորում են ՍՄԿԿ
շարքերը համալրելու համար։ Եթե 1970 թ. ՍՄԿԿ շարքերն ընդունվածների
թվում կոմերիտականները կազմել են 46,6 տոկոսը, ապա 1971 թ. այն հասել
է 57,7, իսկ ընթացիկ տարվա առաջին կիսամյակում՝ 78 տոկոսի։

Ըստ արժանվույն գնահատելով ՀամԼԿԵՄ-ի դերը կուսակցության շար-
քերն առաջավոր, գիտակից մարդկանցով համալրելու գործում՝ ՀԿԿ շրջկոմը,
սկզբնական կուսկազմակերպություններն ամենօրյա ղեկավարություն և օգ-
նություն են ցույց տալիս կոմերիտական կազմակերպություններին։ Կուսկազ-
մակերպությունների ժողովներում հաճախակի քննության են առնվում ԼԿԵՄ
կազմակերպությունների մարտունակության բարձրացման, երիտասարդու-
թյան վրա նրանց ազդեցության ուժեղացման, արտադրության վճռական տե-
ղամասերում կոմերիտականների ներգրավման հարցերը։ Կուսշրջկոմի բյու-
րոյում պարբերաբար լսվում է ՀԼԿԵՄ շրջկոմի հաշվետվությունը, միջոցառում-
ներ են մշակվում կոմերիտականների ակտիվությունը զարգացնելու, նրանց
քաղաքական դաստիարակությունը բարելավելու համար։ ԼԿԵՄ կազմակերպու-
թյունների հետ.տարվող հետևողական աշխատանքի շնորհիվ բարձրացել է
կոմերիտականների քաղաքական ակտիվությունը, առաջավոր կոմերիտական-
ները դիմումներ են ներկայացնում ՍՄԿԿ շարքերն ընդունվելու համար։

Կուսակցության շրջանային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպու-
թյունները լուրջ ուշադրություն են նվիրում նաև ՍՄԿԿ շարքերը կանանցով
համալրելուն։ 1971 թ. ՍՄԿԿ շարքերն ընդունվածների թվում կանայք կազմել
են 27, 1972 թ. առաջին կիսամյակում՝ 45 տոկոսը։ Հետևողական աշխատանք
է կատարվում հետագայում ՍՄԿԿ շարքերն ընդունվողների մեջ նրանց թիվն
ավելացնելու համար։ Ընթացիկ տարվա առաջին եռամսյակում, անցած տար-
վա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, գրեթե երկու անգամ ավե-
լացել է ՍՄԿԿ շարքերը համալրած կանանց թիվը։

ՍՄԿԿ շարքերի ընդունելությամբ ո՛չ թե ավարտվում, այլ, ըստ էության,
շարունակվում է մարդկանց, ներկա դեպքում կոմունիստների, քաղաքական
հասունության, նրանց աշխարհայացքի ձևավորման պրոցեսը։ Կուսակցական
տոմս ունենալը դեռևս վերջին սահմանը չէ։ Երիտասարդ կոմունիստի համար



կուսկազմակերպությունը, նրա ժողովները, քաղաքական նոր միջնոլորտը դառ-
նում են դաստիարակության իսկական դպրոց, քաղաքական ուսուցման սխա-
տեմը՝ գաղափարական կոփվածության դարբնոց։ Կուսշրջկոմը և սկզբնական
կուսկազմակերպությունները երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշ-
խատանքում առաջնորդվում են մեծ Լենինի այն ցուցումով, որ կոմունիստ
դառնալու համար անհրաժեշտ է հիշողությունը հարստացնել այն բոլոր գի-
տելիքների իմացությամբ, որ մշակել է մարդկությունը։ ՍՄԿԿ երիտասարդ
անդամներին ու թեկնածուներին քաղաքական անհրաժեշտ գիտելիքներ տալու
նպատակով ՀԿԿ շրջկոմին կից կազմակերպվել է քաղդպրոց, որ ընդգրկված է
140 մարդ։ Դպրոցի թեմատիկան հաստատում է շրջկոմի բյուրոն։ Ունկնդիր-
ների առջև զեկուցումներով հանդես են գալիս ՀԿԿ շրջկոմի քարտուղարները,
բաժինների վարիչները, սովետական ու տնտեսական ղեկավար աշխատողնե-
րը։ Մենք հոգ ենք տանում, որպեսզի երիտասարդ կոմունիստները, բոլոր երի-
տասարդները հնարավորություն ստանան՝ ուսուցումը շարունակելու տարբեր
ուսումնական հաստատություններում։ Այժմ 25—30 տարեկան 110 կոմու-
նիստներից 50-ը ունեն բարձրագույն, 20-ը՝ միջնակարգ-մասնագիտական
կրթություն, 25-ը առանց արտադրությունից կտրվելու սովորում են բուհերում
և տեխնիկումներում։ Երիտասարդ կոմունիստների աշխարհայացքի ձևավոր-
ման գործում վճռական դեր է խաղում քաղաքական ուսուցումը։ Շրջանի
սկզբնական կուսկազմակերպություններին կից գործող քաղաքական կրթության
տարբեր օղակներում ընդգրկված 1750 կոմունիստների և անկուսակցական-
ների ճնշող մեծամասնությունը երիտասարդներ են։

Երիտասարդ կոմունիստների դաստիարակության գործում մեծ նշանա-
կություն ունի նրանց հասարակական աշխատանքներին մասնակից դարձնելը,
հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության բարձրացումը։
ՍՄԿԿ երիտասարդ անդամներն ու թեկնածուները մասնակցում են կուսկազ-
մակերպությունների ժողովներում ու բյուրոների նիստերում քննարկվելիք
հարցերի նախապատրաստմանը։ Նրանք ընտրվում են կուսակցական ու
կոմերիտական ղեկավար օրգաններում, ընդգրկվում հասարակական այլ աշ-
խատանքներում։ Կուսկազմակերպությունները հետևողականորեն զբաղվում են
կոմերիտական մարմիններում կուսակցական կորիզն ամրապնդելու, կոմերի-
տական տարիք ունեցող կոմունիստների ուժերը ԼԿԵՄ աշխատանքներում օգ-
տագործելու հարցերով։ Այժմ սկզբնական ԼԿԵՄ կազմակերպությունների քար-
տուղարների 40—45 տոկոսը երիտասարդ կոմունիստներ են։ Նրանք աճել են
այդ կազմակերպություններում, ՍՄԿԿ շարքերն ընդունվել նրանց երաշխա-
վորությամբ։ Վերջին տարիներին ՍՄԿԿ շարքերն ընդունված 25 կոմունիստ-
ներ քաղխմբակների պրոպագանդիստներ ու սեմինարների ղեկավարներ են և
իրենց լավ են դրսևորում այդ չափազանց շնորհակալ գործում։

Կուսակցության շարքերը գործունյա, բանիմաց երիտասարդներով հա-
մալրելու, նրանց մոտ կազմակերպական կարողությունները զարգացնելու գոր-
ծում մեծ նշանակություն ունի պատասխանատու աշխատանքներում երիտա-
սարդ կոմունիստների առաջքաշումը։ Վերջին երեք տարում մի շարք երիտա-
սարդ կոմունիստներ առաջ են քաշվել սովետական, կոմերիտական, տնտեսա-
կան ղեկավար աշխատանքներում։

Մարդկանց անհատական ընտրության, նրանց ՍՄԿԿ շարքերն ընդունելու
և պատասխանատու աշխատանքում վստահելու հետ մեկտեղ՝ կուսակցությունն

ընդգծում է նրանց վրա դրված պարտականությունների կատարման ստուգման առաջնահերթ նշանակությունը։ Որպես վստահված գործի ստուգման կարևոր միջոց, սկզբնական կուսկազմակերպություններում լայնորեն կիրառվում է կոմունիստների և գլխավորապես ՍՄԿԿ երիտասարդ անդամների ու թեկնածուների ինքնահաշվետվության մեթոդը։ Կոմունիստների ինքնահաշվետվության կազմակերպման ուսանելի փորձ են ձեռք բերել Ակնաղբյուրի, Այգեհովտի, Աչաջրի սովխոզների, Սարիգյուղի կոլտնտեսության, ավտոգրասենյակի, փայտամշակման կոմբինատի սկզբնական կուսկազմակերպությունները։ Անցած տարի ինքնահաշվետվություններով հանդես են եկել ՍՄԿԿ շարքերը նոր ընդունված 25 կոմունիստներ և թեկնածուներ։

Նմանօրինակ քննարկումների ժամանակ կոմունիստները հանդես են գալիս դիտողություններով, առաջարկություններով, բացահայտում են իր գործունեության մասին հաշիվ տվող ՍՄԿԿ անդամի ու թեկնածուի աշխատանքի թերությունները, սխալները, դրվատում ուսանելին։ Երիտասարդ կոմունիստների դաստիարակության ու կոփման այս մեթոդը, անշուշտ, օգնում է նրանց՝ իրենց նկատմամբ ավելի պահանջկոտ լինելու, կանոնադրական պարտականությունները բարեխղճորեն կատարելու համար։

Սակայն որոշ կուսկազմակերպությունների գործունեություն դեռևս չի համապատասխանում ՍՄԿԿ շարքերի որակական կազմի բարելավման վերաբերյալ կուսակցության նոր պահանջի մակարդակին։ Ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարը՝ նոր անդամների ընդունելությամբ չափից ավելի տարվելը, այդ գործում անպահանջկոտությունը, որ, ցավոք, հանդիպում է առանձին կազմակերպություններում, հակասում է կուսակցական շինարարության լենինյան սկզբունքներին։ ՍՄԿԿ շարքերի ընդունելության գործում նման երևույթի գոյության մասին վկայող փաստեր կան նաև մեր մի շարք սկզբնական կուսկազմակերպություններում։ Այսպես, օրինակ, Ծաղկավանի սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունը, առանց խոր ուսումնասիրելու, ՍՄԿԿ շարքերն է ընդունել զոոտեխնիկ Ռ. Եգանյանին։ Հենց թեկնածուական շրջանում դրսևորվեց կուսակցության անդամին ոչ վայել նրա վարքագիծը։ Ռ. Եգանյանը կեղծիքի միջոցով փորձեց յուրացնել պետական ունեցվածքը։ ՀԿԿ շրջանային կոմիտեի բյուրոն իրավացիորեն մերժեց նրա դիմումը և չընդունեց կուսակցության շարքերը։ Ջ. Ղարդաշյանը զբաղվում էր հարբեցողությամբ, խախտում սոցիալիստական համակեցության կանոնները։ Սակայն դա չէր խանգարել Կիրանց գյուղի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությանը՝ նրան ընդունելու ՍՄԿԿ շարքերը։ Ջ. Ղարդաշյանը չվերակառուցեց իրեն և շարունակեց կուսակցության անդամի կոչման համար անհարիր վարքագիծը։ Նա հարբած վիճակում վթարի ենթարկեց ավտոմեքենան, որի պատճառով եղավ մարդկային զոհ։ Շինանյութերի արտադրության կոմբինատի կուսկազմակերպությունը ՍՄԿԿ շարքերը անդամության թեկնածու էր ընդունել մեքենագրուհի Սուսաննա Շահնազարյանին։ Այդ շրջանում էլ պարզվեց ՍՄԿԿ շարքերի համար նրա անարժան լինելը, և նա մեխանիկորեն դուրս մնաց կուսակցությունից։ Թեկնածուական շրջանում հանցանքներ և զանցանքներ թույլ տալու համար ՀԿԿ շրջանային կոմիտեն վերջին երեք տարվա ընթացքում մերժել է ՍՄԿԿ շարքերի ընդունելության ութ գործ։

Նմանօրինակ փաստերը վկայում են, որ մի շարք սկզբնական կուսկազմակերպություններում դեռևս պատշաճ բարձրության վրա չի գտնվում երի-



տասարդ կոմունիստների դաստիարակությունը, կուսկազմակերպությունները,
նրանց բյուրոները անհատական մոտեցում չեն ցուցաբերում ՍՄԿԿ շարքերն
ընդունվողների նկատմամբ, երբեմն անպատասխանատվություն են հանդես
բերում նաև երաշխավորություն տվող կոմունիստները։ Մինչդեռ ՍՄԿԿ կանո-
նադրության մեջ նշված է, որ երաշխավորողը պատասխանատվություն է
կրում կուսկազմակերպության առաջ՝ երաշխավորվողի քաղաքական, գործնա-
կան և բարոյական հատկանիշների ոչ օբյեկտիվ բնութագրության համար։
Կուսկազմակերպություններում սխալներ են կատարվում ո՛չ միայն կուս-
շարքերի համալրման, մարդկանց ընտրության, այլև ընդունելությունից հետո
անդամության թեկնածուների հետ տարվող աշխատանքի ընթացքում։ Առան-
ձին կուսկազմակերպություններ ՍՄԿԿ անդամության թեկնածուներին արտա-
դրության վճռական տեղամասերն աշխատանքի ուղարկելու, ավելի դժվարին
գործ վստահելու փոխարեն, նրանց հանձնարարում են հեշտ, ուժերի ու կարո-
ղությունների դրսևորման ոչ մի ոլորտ չունեցող բնագավառ։ Սալահ գյուղի
կոլտնտեսության, Ակնաղբյուրի սովխոզի սկզբնական կուսկազմակերպու-
թյունները կուսակցության շարքերը նոր ընդունված առանձին ընկերների հա-
նում են արտադրության վճռական տեղամասերից, դարձնում պահեստապետ,
գանձապահ, հաշվետար և այլն։ Նման վերաբերմունքը թուլացնում է կու-
սակցության թեկնածուի նկատմամբ պահանջկոտությունը, բացասաբար անդ-
րադառնում նրանց ակտիվության զարգացման ու պատասխանատվության
բարձրացման վրա։ Կուսկազմակերպությունների առաջնահերթ պարտքն է՝
ՍՄԿԿ անդամության թեկնածուներին, երիտասարդ կոմունիստներին մշտա-
պես պահել իրենց ուշադրության կենտրոնում, համարձակ նրանց ուղարկել
աշխատանքի առավել կարևոր ու պատասխանատու տեղամասերը, պայման-
ներ ստեղծել նրանց ընդունակությունների ու կարողությունների դրսևորման
համար։
Կուսակցության շարքերի համալրումը, դրանց որակական կազմի բարե-
լավումը և երիտասարդ կոմունիստների դաստիարակությունը կուսակցական-
կազմակերպական աշխատանքի անկյունաքարն է, կուսակցական շինարարու-
թյան արմատական հարցերից մեկը։ Մենք պարտավոր ենք բնավ չմոռանալ
կուսակցության անդամի կոչումն ու նշանակությունն անընդհատ բարձրացնե-
լու վերաբերյալ Վ. Ի. Լենինի պահանջն ու ցուցումները։
Այժմ, երբ մեր կուսակցությունը նախապատրաստական լայն աշխա-
տանքներ է ծավալել կուսակցական փաստաթղթերի փոխանակություն անց-
կացնելու համար, ՍՄԿԿ շարքերի որակական կազմի բարելավումը դառնում է
առավել քան հրատապ անհրաժեշտություն։ Քաղաքական այս կարևոր իրա-
դարձությունը, ինչպես ընդգծեց ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1972 թ.) պլե-
նումը, սկզբունքային նշանակություն ունի կուսակցության շարքերի հետագա
ամրապնդման, սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության
ապահովման համար։ Կուսշրջկոմների ու սկզբնական կուսկազմակերպու-
թյունների առջև խնդիր է դրվում՝ արմատապես բարելավել ՍՄԿԿ անդամու-
թյան թեկնածուների, երիտասարդ կոմունիստների հետ տարվող քաղաքական
աշխատանքը, կուսակցության շարքերն ընդունել բացառապես ամենաառաջա-
վոր ու գիտակից բանվորներին, կոլտնտեսականներին ու մտավորականության
ներկայացուցիչներին։

---

# ՓՈՔՐ ՕՂԱԿՆԵՐԻ ՄԵԾ ՈՒԺԸ

(Կուսակցական խմբերի աշխատանքի փորձից)

*Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատի կուսկոմիտեն տեղամասերում ու հերթափոխություններում, բրիգադներում ու բաժանմունքներում և նույնիսկ փոքր արտադրամասերում ստեղծել է կուսակցական խմբեր, որոնք միավորված են արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունների մեջ։ Կոմբինատի սկզբնական կուսկազմակերպություններում գործում է 50 կուսակցական խումբ։ Այսպես, հաշվի առնելով աշխատանքային և տեխնիկական առանձնահատկությունները՝ կուսկոմիտեն էլեկտրածառայության փոքր արտադրամասերը (չափող ավտոմատ սարքերի, կապի, 2—6 և 2—13) միավորել է մեկ՝ 2—8 արտադրամասի կուսկազմակերպության մեջ։ Ընդ որում, բոլոր այդ փոքր արտադրամասերն ունեն իրենց կուսակցական խմբերը։*

*Արտադրության ներքին օղակներում կուսակցական վերահսկողության, քաղաքական-դաստիարակչական ու մյուս աշխատանքների կատարման պատասխանատվությունը դրված է կուսակցական խմբերի ու խմբավարների վրա։ Յուրաքանչյուր խումբ ունի իր գործունեության ոլորտը, խնդիրներն ու նպատակները։ Էլեկտրաչափիչ սարքերի արտադրամասի կուսակցական խմբի կոմունիստները, օրինակ, ստուգում, կարգավորում են բոլոր ենթակայանների էլեկտրաչափիչ սարքերը։ Կապի արտադրամասի խումբն ապահովում է ձեռնարկության հեռախոսային ու ռադիոտրանսլյացիոն ցանցի անխափան աշխատանքը. շաբաթը երկու անգամ կեսժամանոց տեղական հաղորդումներ են տրվում ձեռնարկության բանվոր-ծառայողների համար։*

*Ուսանելի հարուստ փորձ ունի 2—13 արտադրամասի կուսխումբը։ Արտադրամասում ընդամենը 29 բանվորներ ու ինժեներատեխնիկական աշխատողներ կան, որոնցից կոմունիստներ են 11-ը։ «Մենք էներգետիկներ ենք,— տարակուսում էր կուսխմբավար Դ. Ավետիսյանը,— չունենք ապրանքային արտադրանք, չունենք պլան»։ Նրան նույնիսկ տարօրինակ էր թվացել, երբ կուսկազմակերպության քարտուղար Ֆ. Մարգարյանը առաջին անգամ պահանջել էր բյուրոյի հաստատմանը ներկայացնել խմբի միջոցառումների պլանը։ Խմբավարն այդ առթիվ զրուցել էր կոմունիստների հետ։ Արտադրամասի պետ Ն. Խուրշուդյանը, որն ունի կուսակցական ու պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ, հիշեցրել էր, որ արտադրամասի ու կուսակցական խմբի խնդիրն է՝ անխափան էլեկտրաէներգիա մատակարարել կարբիդի, կրի,*



*չոր սառույցի, մեխանիկական ու 2—2 արտադրամասերին, իջեցնել էլեկտրաէներգիայի ծախսի գործակիցը։*

*— Մենք կարող ենք ընթացիկ նորոգումները կարճ ժամկետում վերջացնելով, ժամեր տնտեսել,— խմբի ժողովում առաջարկեց կոմունիստ, էլեկտրափականագործ Ս. Անդրեասյանը։— Այդ ժամերի հաշվին կրի ու կարբիդի վառարանները կտան տարեկան մի քանի հարյուր տոննա լրացուցիչ արտադրանք։*

*Միջոցառումների պլանը մշակելիս՝ նա հիշեցրեց, որ երեսուներորդ ենթակայանում տարեկան երեք անգամ տեղի է ունենում խափանում, որի հետևանքով երկու-երեք օր ընդհատվում է չոր սառույցի արտադրամասի աշխատանքը։ Եվ իրոք, վերջին անգամ ամբողջովին փչացել էին ենթակայանի վահանակի ավտոմատներն ու անցումային էլեկտրամեկուսիչները, դրա պատճառած վնասը հասնում էր մի քանի հազար ռուբլու։ Պարզվեց, որ խափանումն առաջանում է չոր սառույցի արտադրամասում էլեկտրաէներգիայի ծախսի անհամաչափությունից։ Շուտով խմբի կոմունիստներ Դ. Ավետիսյանն ու Ս. Անդրեասյանը ներկայացրին ռացիոնալիզատորական հետաքրքրական առաջարկություն։ Նրանք ենթակայանում կատարեցին այնպիսի կոնստրուկտիվ ձևափոխություն, որով մեծացավ ավտոմատների ու անցումնային էլեկտրամեկուսիչների դիմացկունությունը, բարելավվեցին արտադրամասի աշխատանքի պայմանները, թեթևացան ենթակայանի մարդկանց հոգսերը։*

*Կուսակցական խմբի անդամները աշխատանքի նկատմամբ ցուցաբերում են կոմունիստական վերաբերմունք, արտադրություն են մտնում խղճի թելադրանքով, մշտական վերահսկողություն սահմանում էլեկտրաէներգիայի ծախսի նկատմամբ։ Կարբիդագործներ Մ. Թոռչյանի, Խ. Վարդանյանի ղեկավարած կուսակցական խմբերի մարդիկ յուրաքանչյուր տոննա կարբիդի թողարկման ժամանակ տնտեսում են 15—25 կվտ ժամ էլեկտրաէներգիա։ Կոմունիստ էներգետիկներ Ս. Մալխասյանին և Ս. Մանասյանին հաճախ կարելի է տեսնել կրակից կարբիդ քամող բանվորների մոտ. նրանք հետևում են էլեկտրաէներգիայի ծախսի ռեժիմի պահպանմանը։*

*Գիշերային հերթափոխություններից մեկի ընթացքում հերթափոխի պետ, կոմունիստ Ս. Մանասյանը աննորմալություններ է նկատում կարբիդի արտադրության հինգերորդ վառարանի էլեկտրասնման տրանսֆորմատորի աշխատանքում։ Սլաքի փոքր-ինչ տատանումները կասկածանքի տեղիք են տալիս։ Մանասյանն իսկույն կռահում է, որ աննորմալությունն առաջացել է տրանսֆորմատորի յուղի սառեցման ջերմափոխանակիչների անբավարար աշխատանքի հետևանքով։ Արտադրամասի պետ Ն. Խուրշուդյանի, ինժեներ Ս. Մելքումյանի և կուսխմբավար Դ. Անդրեասյանի օգնությամբ պարզվում են նաև դրա պատճառները։ Խափանումը վերացնելու համար երեք օր էր հարկավոր։ Դա նշանակում էր երեք օր անգործության մատնել վառարանը, որի ընթացքում արտադրամասը կարող է տալ մի քանի հարյուր տոննա արտադրանք։ Կուսակցական խումբը հարցը սրությամբ է դնում սկզբնական կուսկազմակերպության առջև։ Բյուրոյի քարտուղար Ֆ. Մարգարյանը մի պահ վարանում է։ Կուսխմբի պահանջը դուրս էր գալիս սկզբնական կազմակերպության իրավունքների շրջանակներից։ Եվ որովհետև խումբը պահանջում էր ստեղծել մասնագիտացված բրիգադներ, բյուրոն այդ հարցը հասցնում է կուսկոմիտե, վերջինիս պահանջով գործին միջամտում է նաև դիրեկցիան։ Շուտով օգնության են հասնում մասնագիտացված նոր բրիգադներ՝ 2—1,*

2—7, 2—12, 2—2 արտադրամասերից։ Նրանց օժանդակությամբ երեք օրվա աշխատանքը ավարտվում է 29 ժամում։

2—13 արտադրամասի կուսխմբի կոմունիստները ջերմորեն արձագանքեցին Շչոկինսկ քաղաքի քիմիագործների՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման հայրենասիրական նախաձեռնությանը։ Խումբն առաջ քաշեց «Պայքար լիարժեք վայրկյանի համար» նշանաբանը։ Շատերն զգացին, որ այժմյան պայմաններում մեկ մասնագիտության տիրապետելը բավական չէ մեծ առաջադրանքների կատարման համար։ Բանվորներին տեխնիկական գիտելիքներով զինելու, նոր մասնագիտություն սովորեցնելու համար կուսակցական խմբի նախաձեռնությամբ կազմակերպվեցին տեխնիկական ուսուցման խմբեր։ Այստեղ էլեկտրափականագործներ Վ. Էլիզբեկյանը, Հ. Սարգըսյանը, Դ. Ավետիսյանը, Ռ. Թամրազյանը և ուրիշներ սովորեցին ևս մեկական նոր մասնագիտություն, սկսեցին աշխատել նաև զուգահեռ բանվորական տեղերում։ Ընդլայնելով սպասարկման գոտին՝ նրանք կատարում են մեկուկեսից երկու արտադրական նորմա։ Կոմունիստ Դ. Ավետիսյանը տիրապետեց նաև էլեկտրամոնտյորի և էլեկտրազոդողի մասնագիտությանը։

Այդ օրերին արտադրամասին պետք էր նաև ավտոամբարձչավար։ Սովորաբար ծանր սարքավորումները տեղադրելիս օգնության էին գալիս մեքենամեխանիզմների արտադրամասի վարորդները, որոնք այդ ժամանակ ուղարկվել էին այլ տեղամասեր։ Դեպքը Դավիթին հուշեց, որ արտադրամասին պետք է նաև ամբարձիչ աշխատեցնող։ Նա սովորեց նաև այդ մասնագիտությունը։

Կոմբինատի լավագույն կուսակցական օղակներից է 2—6 արտադրամասի՝ Լ. Թադևոսյանի ղեկավարած խումբը։ Այս արտադրամասի էներգետիկների խնդիրն է՝ կիսահաղորդչային ուղղիչների միջոցով փոփոխական հոսանքը վերափոխել հաստատունի, իսկ վերջինս էներգիայի կենսական աղբյուր է քլորի խմբում՝ 1—3—բ և 1—3—վ արտադրամասերում աղաջրից քլոր, ջրածին, նատրիումի հիմք և կաուստիկ սոդա ստանալու համար։

Այստեղ շնորհալի շատ կոմունիստներ կան։ Նրանց մեջ կարելի է առանձնացնել հերթափոխի պետ Գ. Կիրակոսյանին, որը բարեխիղճ աշխատող է, գործը կատարում է սրտացավորեն։ Իր ղեկավարած կենտրոնական ղեկավարման սենյակում մի քանի հարյուրի հասնող էլեկտրասպասքներից որ մեկի ցուցմունքներին էլ նայի, նա կարող է ճիշտ տեղեկություններ տալ էլեկտրաէներգիան սպառող արտադրամասի գործունեության մասին։ Նկատելով ամպերմետրի փոքր-ինչ խոտորված սլաքը՝ նա պահանջում է իր ենթակայության տակ աշխատող ինժեներ Ա. Զոդնինին՝ ստուգել կիսահաղորդչային ուղղիչների չորրորդ ագրեգատի ջերմային ռեժիմը։ Նախապես հայտնում է, որ այնտեղ ջերմությունը բարձրացել է։ Իսկ այդ առաջ է բերում էլեկտրաէներգիայի գերածախս։ Վերջինս ստուգում է ու հաստատում պետի կարծիքը։ Հերթափոխի պետն իսկույն հայտնում է էլեկտրոլիզի արտադրամասի հերթափոխի պետին, որ աղաջրի էլեկտրատարրալուծման պրոցեսում խախտվել է տեխնոլոգիական ռեժիմը։ Պարզվել է, որ այնտեղ, սխալմամբ հոսքային գծի մեջ, տաքի փոխարեն, բաց էին թողել սառը աղաջուր։ Վրիպումը շտկվում է։ Կուսակցական խումբը հարկ է համարում մասսայականացնել Գ. Կիրակոսյանի աշխատանքի փորձը։ Այն ջերմ արձագանք է գտնում նրա ընկերների մոտ, արմատավորվում։ Արտադրամասը դրա շնորհիվ վերջին մեկ տարվա ընթացքում տնտեսել է 100 հազար կվտ ժամ էլեկտրաէներգիա և 30 տոկոսով կրճա-





արտադրական ջրերի
տել ագրեգատների սառեցման համար օգտագործվող
ծախսը։

Կոմբինատի արտադրական մեծ խնդիրների մեջ 2—6 արտադրամասն իր համեստ բաժինն ունի։ Դրանք լուծելու համար, սակայն, առաջանում են ոչ քիչ հոգսեր։ Օրինակ, էլեկտրափականագործ Ի. Տրուշկինը գանգատվում էր, որ իրենց համար շատ ծանր է 270 կիլոգրամանոց շարժիչների նորոգումը, որովհետև աշխատանքի հրապարակը խիստ նեղ է, չկան բարձրացնող սարքավորումներ։ Ոմանք էլ իրավացիորեն նկատում էին, որ առանձին տեղամասերում չի ապահովված աշխատանքի անվտանգությունը, հաճախակի շարքից դուրս են գալիս 3500 վոլտ լարման էլեկտրամեկուսիչները և պարպուրդի տեղիք տալիս։ Կուսխմբի ղեկավար Լ. Թադևոսյանը սիրով ունկնդրում է կոմունիստներին, ապա՝ արտադրամասի պետ Կ. Հովհաննիսյանի հետ ծանրութեթև անում նրանց առաջարկությունները և կուսակցական խմբի քննարկմանը դնում արտադրամասի տեխնիկական հագեցվածության բարձրացման հարցը։ Խմբի յոթ կոմունիստներից յուրաքանչյուրն իր նկատառումներն է հայտնում քննարկվող հարցի վերաբերյալ։ Առաջարկված տեխնիկական միջոցառումների պլանը իրականացման համար մշակվում և հաստատվում է միջոցառումների պլան։ Լավագույն ռացիոնալիզատորներից կազմակերպվում է կոմպլեքսային բրիգադ։

Ժամանակ անցավ, իրականացան այդ միջոցառումները։ Ու հիմա կուսխմբի ղեկավարը անկեղծ հպարտությամբ հաշիվ է տալիս կատարածի մասին. մեքենայացվել է 270 կիլոգրամանոց հզոր էլեկտրաշարժիչների նորոգման աշխատանքը, կիսահաղորդչային ուղղիչների օդասառեցման նորոգման պրոցեսը կրճատվել է ավելի քան չորս անգամ, համապատասխանաբար նվազել են պարպուրդները, հազվադեպ է պատահում, որ խափանվեն 3500 վոլտ լարման էլեկտրամեկուսիչները։

Ամեն մի սկզբնական կուսկազմակերպություն ուժեղ է աշխատավորական լայն զանգվածների հետ ունեցած իր կապերով։ Կիրովի անվան քիմիական կոմբինատում այդ կապերն ամրապնդող օղակները կուսակցական խմբերն են։ 2—8 արտադրամասի կուսկազմակերպության հաջողությունը բացատրվում է նրանով, որ կուսխմբերը հանդես են բերում նախաձեռնություն ու ակտիվություն՝ արտադրական և մյուս հարցերը լուծելիս։ Ամեն մի կոմունիստ իր տեղն ունի և իր խնդիրը, ապրում է արտադրամասի, կուսկազմակերպության և, վերջապես, կոմբինատի ընդհանուր շահերով։

Պ. Ա. ՊԱՊՅԱՆ

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՄԱՐԴԱՏԱՐ ՏՐԱՆՍՊՈՐՏԸ ԵՎ ՔԱՂԱՔԸ*

Վերջին տարիներին Երևանում որոշակի գործ է կատարված քաղաքային մարդատար տրանսպորտի աշխատանքը բարելավելու համար: Աճել է շարժակազմի պարկը, ավելացել գծերի երկարությունը, ամրապնդվել է տեխնիկական բազան, կառուցվել և շահագործման են հանձնվել նոր հավաքակայաններ ու դեպոներ, ուղերթ են դուրս գալիս ավելի հարմարավետ տրոլեյբուսներ, ավտոբուսներ և տրամվայներ:

Սակայն Երևանի քաղաքային մարդատար տրանսպորտը և նրա կառավարման ներկայիս կառուցվածքը դեռևս լրիվ չեն բավարարում բնակչության պահանջները: Քաղաքային մարդատար տրանսպորտի աշխատանքների կոորդինացման միակ օղակը Երքաղսովետի արտադրական-ավտոտրանսպորտի վարչությունն է: Վարչության կոորդինացիայի բաժինը, որը բաղկացած է ընդամենը 4 հոգուց, չունի հստակ պարտականություններ ու իրավունքներ և փաստորեն զբաղվում է քաղաքային մարդատար տրանսպորտի աշխատանքների մասին միայն օպերատիվ տեղեկություններ հավաքելով: Վարչության կառավարման կառուցվածքի վերլուծությունը ցույց է տալիս, որ այն հիմնականում զբաղվում է Երքաղսովետի բեռնատար ավտոտրանսպորտի և քաղաքի ճանապարհների շահագործման հարցով: Քաղաքային մարդատար տրանսպորտի կառավարման գոյություն ունեցող կառուցվածքը փաստորեն չի ապահովում էլեկտրական տրանսպորտի (տրամվայ, տրոլեյբուս) և մարդատար ավտոտրանսպորտի (ավտոբուս, տաքսի) երթևեկության կոորդինացումը, որի հետևանքով բնակչության տրանսպորտային սպասարկման գործում բազմաթիվ թերություններ կան: Այսպես, տրամվայ-տրոլեյբուսի և մարդատար ավտոտրանսպորտի ինչպես երթուղային սխեմաները, այնպես էլ դրանց շարժակազմի քանակը մշակվում և որոշվում են ինքնուրույն: Դրա պատճառով քաղաքային տրանսպորտի շարժակազմը ծանրաբեռնվում է անհավասարաչափ (ըստ երթուղիների և տրանսպորտի տեսակների) և օգտագործվում ոչ բավարար արդյունավետությամբ: Երևան քաղաքի մարդատար տրանսպորտի առանձին տեսակների և մարդատար փոխադրումների զարգացման դինամիկան ցույց է տալիս, որ 1968—1971 թթ. ընդհանուր առմամբ ուղևորների թիվն աճել է 4,2 մլն և կազմել է 215,9 մլն: Այդ ժամանակամիջոցում քաղաքի ազգաբնակչությունն աճել է 15,1 տոկոսով: Սրա հետ մեկտեղ, 1968 թ. համեմատությամբ, քաղաքային երթուղային ավտոբուսների քանակն ավելացել է 16,5 տոկոսով, սակայն տրանսպորտի

* Տպագրվում է հարցադրման կարգով. Խմբ.:



այդ տեսակով փոխադրումները կրճատվել են 5, տրամվայինը՝ 16,1 տոկոսով, իսկ տրոլեյբուսայինը ավելացել է 37,1 տոկոսով: Այս ամենը վկայում են, որ քաղաքային մարդատար տրանսպորտի շարժակազմն անբավարար է օգտագործվում ինչպես մարդատար ավտոտրանսպորտային ձեռնարկություններում, այնպես էլ տրամվայ-տրոլեյբուսի հավաքակայաններում: Տարեցտարի իջնում են պարկի օգտագործման ցուցանիշները: Ամեն տարի քաղաքային մարդատար տրանսպորտի շարժակազմի ավելի քան 45 տոկոսը չի մասնակցում փոխադրումներին: 1971 թ. մարդատար ավտոտրանսպորտային ձեռնարկությունների պարկի օգտագործման գործակիցը եղել է 0,55, տրոլեյբուսների հավաքակայաններինը՝ 0,59, տրամվայինը՝ 0,46, իսկ 1972 թ. առաջին կիսամյակում ավտոբուսային ձեռնարկություններում այն իջել է մինչև 0,42, իսկ տրոլեյբուսային և տրամվային հավաքակայաններում մնացել է նույնը: Ավելին, իջել է նաև այս ցուցանիշի պլանավորումը: Եթե 1968 թ. մարդատար ավտոտրանսպորտային ձեռնարկությունների պարկի օգտագործման գործակիցը պլանավորվել է 0,64, ապա 1971 թ., 0,60, տրամվայի հավաքակայանների օգտագործման գործակցի պլանն իջել է 3,3 տոկոսով, իսկ տրոլեյբուսների համար աճ չի նախատեսվել, այն մնացել է 0,62 մակարդակի վրա: Նման պրակտիկան, իհարկե, հնարավորություն չի տալիս նախատեսել և միջոցներ ձեռնարկել հիմնական արտադրաֆոնդերի, այդ թվում՝ տրանսպորտային միջոցների բարելավման, ներքին ռեզերվների հայտնաբերման և օգտագործման համար:

Աշխատանքային ցածր կարգապահության, երթուղիներն անհրաժեշտ քանակի տրանսպորտային միջոցներով չապահովելու, հսկողության բացակայության հետևանքով քաղաքային մարդատար տրանսպորտի բոլոր տեսակների երթերում գոյություն ունեն մեծ չափերի հասնող կորուստներ: 1971 թ. Երևանի քաղաքային տրանսպորտի ուղևորային երթերի կորուստների ընդհանուր թիվը կազմել է 974 հազար, որից միայն ավտոբուսներինը՝ 710, տրոլեյբուսինը՝ 172, տրամվայինը՝ 92 հազար, իսկ 1972 թ. միայն առաջին կիսամյակում այն համապատասխանաբար կազմել է 316,2, այդ թվում ավտոբուսինը՝ 228,8, տրամվայինը և տրոլեյբուսինը՝ 87,4 հազար երթ:

Եթե այս կորուստների համապատասխան վերահաշվարկ կատարենք, ապա պարկի օգտագործման գործակիցների վերը նշված փաստացի կատարողականներն, ըստ երևույթին, կիջնեն շատ ցածր մակարդակի, իսկ եթե վերածենք դրամի, ապա կտեսնենք, թե ինչ մեծ կորուստներ ունենք: Դրա պատճառով քաղաքային մարդատար տրանսպորտի ձեռնարկությունները շարունակ չեն կատարում պետական առաջադրանքները և մեծ մասը աշխատում է ոչ շահութաբեր: Այսպես, ավտոբուսային փոխադրումներից ստացված եկամուտները 1968 թ. համեմատությամբ, իջել են ավելի քան 320 հազար ռուբլով, իսկ տրամվայինը՝ 242 հազարով: Եթե 1968 թ. քաղաքային մարդատար ավտոտրանսպորտային ձեռնարկությունների շահույթը կազմել է 650,7 հազար ռուբլի, ապա 1971 թ. պլանավորված 293,9 հազար ռուբլու շահույթի դիմաց (պլանն իջել է 40,7 տոկոսով) վնասը հասել է մոտ 191 հազար ռուբլու, իսկ 1972 թ. առաջին եռամսյակում պլանավորված 477,6 հազար ռուբլի շահույթի փոխարեն վնասը կազմել է 88,7 հազար ռուբլի: Առանձին ձեռնարկություններ պլանավորվում են իրենց արտադրական հնարավորություններից ցածր: Այսպես, № 1 մարդատար ավտոտրանսպորտային ձեռնարկությունը 1968 թ. փաստացի տվել է 387,3 հազար ռուբլու շահույթ, սակայն 1971 թ. այն պլանավո-

րել է 160,4 հազար ռուբլի, իսկ 1972 թվականին՝ ավելի ցածր, որը կազմում է 140 հազար ռուբլի, № 2982 ավտոբուսային շարասյունը 1968 թ. շահույթ է ունեցել 189,9, 1971 թ. պլանավորել է 69,1 հազար ռուբլու, № 5 մարդատար տրանսպորտային ձեռնարկությունն անցյալ տարում պլանավորված 215 հազար ռուբլի շահույթի դիմաց ունեցել է 35,4 հազար, իսկ № 6 ձեռնարկությունը կրել է 320,9 հազար ռուբլու վնաս։

Երևան քաղաքի համար բնութագրական է քաղաքային մարդատար տրանսպորտի շարժակազմի հագեցվածության բարձր ցուցանիշը՝ 130—140 ինվենտարային միավոր յուրաքանչյուր 100 հազար բնակչին։ Շարժակազմի յուրաքանչյուր միավորի պլանային միջին բեռնվածությունը չափավոր է՝ 190—200 հազար ուղևորի փոխադրում մեկ տարվա ընթացքում։ Ուստի, կատարվող փոխադրումները պետք է լինեն հարմարավետ, այսինքն՝ ամենուր օգտագործվեն միայն նստատեղերը, բացառությամբ կարճատև ժամանակների, երբ ուղևորները կանգնած են։ Սակայն, ցավոք, իրականում այդպես չէ։ Փաստորեն շարժակազմի մեկ միավորի միջին բեռնվածության ձեռնարկության ցուցանիշը մոտ երկու անգամ ավելի է։ Իջեցնելով գծերում և երթուղիներում շարժակազմի անհրաժեշտ քանակը, մեխանիկորեն բարձրանում է տեղատարողության գործակիցը, որը չի ապահովում կատարվող տեղափոխումների նույնիսկ միջին հարմարավետությունը։

Քաղաքային տրանսպորտի ցանցում ստեղծված ոչ ռացիոնալ երթուղիների և պլանով նախատեսված շարժակազմով չապահովելու հետևանքով երթուղիներում ժամանակի տարածությունները բավական մեծ են, իսկ մարդատար տրանսպորտի շահագործման արագությունը խիստ ցածր։

Քաղաքային մարդատար տրանսպորտում ուղևորների փոխադրավճարների գանձման կազմակերպման գործում դեռևս անհրաժեշտ կարգ չի ստեղծված։ Հաճախ տոմսավաճառները, վարորդները (որոնք աշխատում են առանց տոմսավաճառի) դրամարկղ են մուծում ավելի քիչ, քան փաստացի գանձված գումարը։ Առանց տոմսավաճառի աշխատող ավտոբուսների, տրամվայների և տրոլեյբուսների մեծ մասում դրամարկղներն ընդհանրապես բացակայում են, իսկ որտեղ տեղակայված են, մեծ մասամբ չունեն տոմսեր, և վարորդները, խախտելով կարգը, իրենք են ստանում փոխադրավճարները, որի պատճառով խախտվում են շարժման գրաֆիկներն ու ինտերվալները։ Այս ամենը, ինչ խոսք, նկատելիորեն անդրադառնում է երթուղիներում տրանսպորտի արագության վրա։

Այսօր կարելի է վստահ ասել, որ առանց տոմսավաճառի սպասարկումը կայուն տեղ է գտել քաղաքային տրանսպորտում, իսկ ամենակարևորը համապատասխանում է մեր ժամանակի ոգուն։ Սակայն, Երևանում սպասարկման այս առաջավոր մեթոդն աղավաղվել է և գործնականորեն այն բացակայում է։ Դա հիմնականում բացատրվում է նրանով, որ ՀՍՍՀ ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությունը, Երքաղսովետը և քաղաքային մարդատար տրանսպորտի ձեռնարկությունների ղեկավարները ժամանակին չեն լուծել առանց տոմսավաճառի տրանսպորտային սպասարկման հետ կապված մի շարք հարցեր։

Ժամանակի տարածությունների և շահագործման արագության վրա խիստ անդրադառնում է նաև գոյություն ունեցող կանգառների տեղաբաշխումը (դիսլոկացիա), որոնց հեռավորությունները չեն համապատասխանում տրանս-





պորտի առանձին տեսակների նորմատիվներին։ Օրինակ, միայն Բարեկամության փողոցում (որի երկարությունը 2 կմ-ից քիչ ավելի է) գոյություն ունի 7 կանգառ) համատեղ՝ տրամվայի, տրոլեյբուսի և ավտոբուսի), որոնց միջին հեռավորությունը 250 մետր է, իսկ որոշ տեղերում՝ 25—50։ Կանգառներն ավելի մոտ են Լենինի անվան պողոտայում, Կարմիր բանակի և այլ փողոցներում։

Այս բոլորը հանգեցնում է շարժակազմի շրջապտույտների կրճատմանը, որը, բնականաբար, ազդում է երթուղիների տարածության վրա։ ՀՍՍՀ ԿՎԼ կատարած ուսումնասիրության արդյունքներից երևում է, որ 10—30 րոպե տրանսպորտի միջոցներին սպասում են բնակչության 63, իսկ 30 և ավելի՝ 15,7 տոկոսը։

Գործող տրանսպորտային սիստեմի հզորությունները և սխեմաները չեն ապահովում բնակչության հասունացած և զարգացող պահանջները, հաշվի չեն առնվում քաղաքի և ծայրամասային գոտիների հատակագծման առանձնահատկությունները, դրանց հիմնական տարրերի կազմի և տեղաբաշխման նախատեսված փոփոխությունները։

Բնակչության տրանսպորտային սպասարկման որակի վրա բացասաբար է անդրադառնում այն, որ քաղաքի ոչ բոլոր շրջաններն են ապահովված տրանսպորտային գծերով (Նորքի բնակելի զանգվածի, Զեյթունի, Նոր Արեշի, Լենինյան, Շահումյան, 26 կոմիսարների անվան շրջանների մի շարք բնակելի մասեր և այլն)։

Այսօրվա համար ավելի խոր և լիովին պետք է լուծվեն քաղաքային տրանսպորտի կոմպլեքսային սխեմաների հարցերը, քանի որ Երևանը դեռևս չունի գիտականորեն հիմնավորված լիարժեք տրանսպորտային սխեմաներ։

Մասսայական տրանսպորտի գծերի «մոտեցումն» ապահովելու համար այդ ցանցի խտությունը մոտավորապես պետք է լինի 1,5—2,5 կմ$^2$, իսկ գծերի փոխադարձ հեռավորությունը, միջին հաշվով, 1,3—0,8 կմ։ Չնայած Երևանում պահպանվում է միջին խտությունը, բայց այն միայն ի հաշիվ քաղաքի կենտրոնի։ Շատ շրջաններում տրանսպորտային ցանցի խտությունը պահանջվող նորմայից խիստ ցածր է և չի հասնում նույնիսկ մեկ կմ (քառ. կմ վրա)։ Սա բացատրվում է նրանով, որ մինչև օրս քաղաքում գոյություն ունեցող շառավղային, օղակային-շառավղային և տրամագծային տրանսպորտային ցանցի սխեմաներն առաջացել են խիստ պատահական։ Նման վիճակը նույնպես ստեղծում է ուղևորների տեղափոխման ոչ ռացիոնալ պայմաններ։

Քաղաքային էլեկտրատրանսպորտային և ավտոտրանսպորտի ձեռնարկություններում բավարար չեն դիսպետչերական ծառայությունները։ Երթևեկության ծառայությունները չունեն ֆունկցիաների հատուկ բաժանում, այսինքն՝ երթևեկության կազմակերպում և դիսպետչերական ղեկավարում. գոյություն ունեցող դիսպետչերական կետերը ձևական են և հանդիսանում են միայն գրանցող օղակ։ Քաղաքային մարդատար տրանսպորտի դիսպետչերիզացիայի թույլ զարգացման գլխավոր պատճառներից մեկն այն է, որ ձեռնարկությունները չունեն անհրաժեշտ դիսպետչերական կապի տեխնիկական միջոցներ։

Տրանսպորտային ձեռնարկություններում անհրաժեշտ աշխատանք չի տարվում առանձին երթերի ժամանակի հաշվարկի համար և գործող երթերը չունեն շարժման չվացուցակի հիմնավոր նորմաներ։ Մարդատար տրանսպոր-

տի նորմալ աշխատանքի համար կարևոր նշանակություն ունի ոչ միայն քա-
ղաքային մարդատար տրանսպորտի աշխատանքների բարելավումը, այլև
անվտանգ երթևեկության ապահովումը։ Ներկայումս փողոցները հագեցած են
տրանսպորտային միջոցներով, որոնք դժվարացնում են երթևեկության պայ-
մանները, առաջացնում խցանումներ, դանդաղեցնում երթևեկությունը։ Մինչ-
դեռ անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում տրանսպորտային հոսքերին, եր-
թևեկության կարգավորման բնագավառում արդյունավետ սիստեմների ստեղծ-
մանը։ Միության մի շարք քաղաքներում այժմ փողոցային երթևեկության
կարգավորման համար օգտագործվում է հաշվիչ-հաշվողական տեխնիկան,
որը, սակայն, մեզ մոտ չի կիրառվում։ Դեռևս չեն ուսումնասիրվում տրանս-
պորտային հոսքերի շարժումների գոյություն ունեցող օրինաչափությունները։
Միջոցառումները մշակվում են ո՛չ թե տեխնիկա-տնտեսական հաշվարկների
համաձայն, այլ միայն ճանապարհա-տրանսպորտային պատահարների վեր-
լուծման եզրակացություններից, որոնք երթևեկության կազմակերպման հիմ-
նական սկզբունքների որոշման չափանիշը չեն։

Խոսելով քաղաքային մարդատար տրանսպորտի աշխատանքների մասին,
անհրաժեշտ է ուշադրություն նվիրել շարժակազմի տեխնիկական սպասարկ-
ման վիճակի վրա, որը ռեալ, բայց դեռևս վատ օգտագործվող ռեզերվ է։

Ուղևորների սպասարկումը բարելավել և քաղաքային տրանսպորտի ինչ-
պես էլեկտրական, այնպես էլ ավտոտրանսպորտի շահութաբերությունը բարձ-
րացնել կարելի է միայն շարժակազմի գծից դուրս գալու ժամանակի կրճատ-
ման, միջնորոգումների և տեխնիկական դիտարկումների մեծացման միջոցով։
Մեզ մոտ տրանսպորտային ձեռնարկություններում դեռևս բացակայում է նո-
րոգումների գիտական հիմնավորված սիստեմը, որը կապահովեր շարժակազ-
մի հուսալի աշխատանքը՝ միջդիտարկումային և միջնորոգման վազքերի հա-
մապատասխան ժամկետների դեպքում։

Շարժակազմի նորոգման որակը և տեխնիկական սպասարկումը դեռևս
ետ է մնում այս բնագավառում գոյություն ունեցող մակարդակից։ Խախտվում
են ավտոբուսների, տրամվայների և տրոլեյբուսների պրոֆիլակտիկ սպա-
սարկման գրաֆիկները։ Միայն այս տարվա հունվարին փաստացի գիծ դուրս
եկած 12000 ավտոբուսից տեխնիկական անսարքության պատճառով ստիպ-
ված ավտոտնտեսություն են վերադարձել 4500-ը (31,6 տոկոս), 2550 տրամ-
վայի գնացքներից՝ 1080-ը (42,3 տոկոս), 5764 տրոլեյբուսներից՝ 1210-ը
(20 տոկոս)։ Նման վիճակը ցույց է տալիս, որ հերթապահ մեխանիկները ձե-
վականորեն են ստորագրում ուղեգրերը։

Մարդատար տրանսպորտի գոյություն ունեցող տեխնիկական վիճակը և
դրա սպասարկումը չի կարող բավարարել քաղաքի բնակչության պահանջները։
Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մասսայական մարդատար
տրանսպորտի ցանցի զարգացման և շարժակազմի օգտագործման ետ մնա-
լը քաղաքի աճի տեմպերի համեմատ, շոշափելի դժվարություններ են ստեղ-
ծում մայրաքաղաքի բնակչության փոխադրումների պահանջները բավարարե-
լու համար։ Սա կարելի է բացատրել նրանով, որ մինչև օրս Երևան քաղաքի
գլխավոր հատակագծի կազմման ժամանակ ուշադրությունը բևեռվել է քաղա-
քի տրանսպորտային սիստեմի զարգացման և քաղաքի պլանի, կոմպոզիցիա-
յի, կառուցվածքի վրա նրա ազդեցության միայն սկզբունքային ուղղություն-
ներին։



Ուստի, բնակչության տրանսպորտային սպասարկման վիճակը բարելա-
վելու համար, անհրաժեշտ է սկզբունքորեն վերանայել նման մոտեցումը՝
տրանսպորտային ցանցի և քաղաքային մարդատար տրանսպորտային սխ-
տեմի նախագծման, դրա ձևերի ընտրության և շարժակազմի քանակի որոշ-
ման ժամանակ։ Սա ուղղակիորեն կապված է քաղաքային մարդատար տրանս-
պորտի աշխատանքների նախատեսվող ծավալից, որոնց մանրամասն հաշ-
վարկը պահանջում է ներքաղաքային տեղափոխումների մանրազնին և սիս-
տեմատիկ ուսումնասիրություն։ Չնայած Երնախագիծ ինստիտուտը նա-
խագծել է տրանսպորտային միջոցների և հետիոտն երթևեկության կազմա-
կերպման սխեմա՝ 1969—1971 թթ. համար, սակայն դա դեռևս տրանսպորտա-
յին հարցի լուծումը չէ։ Հարկավոր է մոտ ժամանակներում նախագծել Երևան
քաղաքի տրանսպորտային գլխավոր հատակագիծը։

Տրանսպորտային ցանցի հետագա բարելավումը և բնակչության տրանս-
պորտային նորմալ սպասարկումը հնարավոր կլինի կենտրոնական ներքին
օղակի ստեղծմամբ, որի վրա «կխլանան, կմարվեն» շառավղային մագիս-
տրալները, չհասած քաղաքի կենտրոնական հանգույցին։ Քաղաքի կենտրոնի
տրանսպորտային հարցի լուծումը կվերացնի տրանզիտային հոսքերը, և կենտ-
րոնը ազատ կլինի հետիոտն երթևեկության համար։ Անհրաժեշտ է զարգաց-
նել տրանսպորտային ցանցը քաղաքի առանձին վարչա-տերիտորիալ շրջան-
ներում և նոր բնակելի զանգվածներում՝ տրանսպորտային ցանցի սխեմանե-
րին համապատասխան։ Քաղաքային մարդատար տրանսպորտի տեսակները
պետք է զարգանան կոմպլեքսային, հաշվի առնելով, որ դրա յուրաքանչյուր
տեսակը (տրամվայ, տրոլեյբուս, ավտոբուս, տաքսի) ունի իր օգտագործման
որոշակի ոլորտը։ Ելնելով քաղաքային մարդատար տրանսպորտի երթևեկու-
թյան կոորդինացման սկզբունքներից, անհրաժեշտ է ստեղծել քաղաքային
տրանսպորտի երթևեկության կազմակերպման միասնական ծառայություն։

Երթևեկության դիսպետչերական ղեկավարումը կոորդինացնելու նպատա-
կով, մեր կարծիքով, պետք է քաղաքում կազմակերպել մարդատար տրանս-
պորտի միասնական կենտրոնական դիսպետչերական կայան, որը կկարգա-
վորի, կհսկի և կղեկավարի քաղաքի տերիտորիայի բոլոր երթուղիները։ Ան-
հրաժեշտ է կիրառել ժամանակակից արդյունավետ դիսպետչերական կապի
տեխնիկական միջոցներ, լիովին ռադիոֆիկացնել մարդատար քաղաքային
տրանսպորտի շարժակազմը։ Քաղաքային մարդատար տրանսպորտի տեսակ-
ների կոորդինացման նպատակով պետք է արմատապես վերանայել մարդա-
տար տրանսպորտի երթուղային սիստեմը, երթուղիների քանակը և կանգառ-
ների տեղաբաշխումը։

Քաղաքի աճը և փողոցային երթևեկության չափերի ու կազմի փոփոխու-
թյունները պահանջում են մշտական հոգատարություն՝ երթևեկության ան-
հարմարությունները, «նեղ տեղերը» և վտանգավոր դրությունները ժամանա-
կին վերացնելու համար։ Անհրաժեշտ է մշտապես հետևել փողոցա-ճանա-
պարհային ցանցի տրանսպորտային հոսքերի փոփոխություններին, նրանց
երթևեկությանը, ըստ առանձին տեղամասերի թողունակությանը՝ հանգուցա-
յին կետերում, ինչպես նաև հետիոտնի ինտենսիվ երթևեկությանը։ Այսպիսի
սիստեմատիկ դիտարկումները, փողոցային երթևեկության դժվարություննե-
րի, անհարմարությունների և վտանգավորությունների վերլուծությունը հիմք

կտան ճիշտ «դիագնոզելու» ո՛չ միայն դրանց վերացման միջոցները, այլև կկանխեն առաջացման պատճառները։

Երթևեկության աճող ծախսերը և քաղաքում դժբախտ պատահարների ավելացումը պարտավորեցնում է կանգ չառնել ժամանակավոր, քիչ արդյունավետ միջոցառումների վրա, այլ պետք է որոնել և իրականացնել երթևեկության կազմակերպման ռադիկալ որոշումներ։ Քաղաքային երթևեկությունը կազմակերպելիս բնակչության տեղափոխումների վրա ժամանակի ընդհանուր ծախսերն անհրաժեշտ է նվազագույնի հասցնել։

Տրանսպորտի բոլոր տեսակների զարգացմանը պետք է համապատասխանեն քաղաքի ճանապարհային ցանցը և տրանսպորտային հոսքերի շարժման ղեկավարման միջոցները։ Շատ է խոսվել Երևանի փողոցների ասֆալտային ծածկույթի վիճակի մասին, որի համար իրավացի են տրանսպորտային աշխատողների բողոքները։ Բազմաթիվ փոսերը, «ալիքները» դժվարացնում են երթևեկությունը և վնասներ պատճառում քաղաքային տրանսպորտին։ Քաղաքային ճանապարհների ծառայության ժամկետները չեն ապահովում անհրաժեշտ նորմաները։ Այժմ քաղաքային երթևեկության կազմակերպումն անիմաստ է առանց ավտոմատ ղեկավարման։ Այս սիստեմների օգտագործումն ամեն օր կկրճատի հապաղումների տասնյակ-հազար մեքենաժամ, որի շնորհիվ կտնտեսվեն միլիոնավոր ռուբլիներ։

Դեռևս մեզ մոտ սովորական է լուսանշանների միացման կանաչ-դեղին, կարմիր-դեղին հերթականությունը։ Մոսկվայում, ինչպես նաև արտասահմանյան բազմաթիվ քաղաքներում այն փոխվել է (կանաչ-դեղին, կարմիր-կանաչ)։ Ազդանշանների այսպիսի հերթականությունը (Մոսկվայի օրինակով) իջեցնում է խաչմերուկների սահմանում հետիոտնի վրաերթը 15 տոկոսով, սակայն այնտեղ, ուր չկա հետիոտնի երթևեկություն (քաղաքի որոշ տեղամասերում), ընդհակառակը, անհրաժեշտ է ո՛չ միայն երկու դեղին ազդանշան, այլև վարորդի համար տալ կանաչ ազդանշանի վառման վերջի համար նախնական զգուշացում։ Անհրաժեշտ է, որ այս սիստեմը կիրառվի նաև Երևանում։

Լուսանշանները գոյություն ունեն մոտ 100 տարի։ Այս ընթացքում մշակվել են որոշ կոնստրուկցիաներ, չափեր, օպտիկա և այլն։ Կյանքը ցույց է տալիս, որ մեզ մոտ նպատակահարմար է ներդնել լուսանշանային ղեկավարման հետևյալ ձևերը. ավտոկարգավորման սիստեմ, որը չունի նախօրոք տրված ծրագիր, այլ ազդանշանները տրվում են՝ կախված անցումներում տրանսպորտային հոսքերի մեծությունից (կիբեռնետիկական լուսանշաններ), կարգավորման կոորդինացված սիստեմ («կանաչ ալիք»), որն ապահովում է փողոցային մագիստրալի անվտանգ երթևեկությունը։ Այս սիստեմի փորձը Մոսկվայում ցույց է տալիս, որ հասարակական տրանսպորտի արագությունն ավելանում է 30 տոկոսով՝ երթևեկության կարգավորվածության նկատելի բարելավման պայմաններում, իսկ տրանսպորտային միջոցների հապաղումների կրճատումից ընդհանուր էկոնոմիկան կազմում է մեկ տարում մոտ 100 հազար ռուբլի՝ փողոցի 1 կմ երկարության վրա։ Բացի այդ, երթևեկության հստակ ռիթմի շնորհիվ հետիոտնի վրաերթի թիվն իջնում է մինչև 20 տոկոսով։

Ինչպես խոշոր քաղաքներում, այնպես էլ Երևանում պետք է կառուցվեն հարմարավետ, անընդհատ երթևեկության մագիստրալային փողոցներ և ճանապարհներ, տարբեր բարձրությունների վրա հատումներով երկրորդական փողոցների հետ, ստորգետնյա հետիոտն անցումներ (Մոսկվայում այն 100-ից ավելի է, իսկ Երևանում՝ մեկը՝ այն էլ գործնականորեն չի օգտագործվում)։

Երևանի գլխավոր հատակագծի համաձայն իններորդ հնգամյակում կկառուցվեն նոր կամուրջներ, ստորգետնյա անցուղիներ, ուղանցներ, ինչպես նաև ճանապարհներ։ Այս տեսակետից կարևոր են դառնում Ավանի մեծ և Հրազդանի կամուրջների նախագծի կազմումն ու շինարարական աշխատանքներն սկսելը։ Քաղաքային տրանսպորտի պրոբլեմի մասնակի լուծման համար կարևոր է հնգամյա պլանով նախատեսված ստորգետնյա արագընթաց էլեկտրատրանսպորտի շինարարությունը, որն արդեն սկսվել է։

Քաղաքային երթևեկության կազմակերպման աշխատանքները բարելավելու, դրանց հետագա նախագծման համար նպատակահարմար է ստեղծել քաղաքային տրանսպորտի նախագծային հատուկ կազմակերպություն։

Նկատի ունենալով քաղաքային մարդատար տրանսպորտի հետագա զարգացումը և մայրաքաղաքի բնակչության տրանսպորտային սպասարկման արմատական բարելավումը, անհրաժեշտ է այդ նպատակով նախատեսված աշխատանքները սկսել այժմվանից։ Այն հարկավոր է դնել գիտական հիմքերի վրա և հանձնարարել համապատասխան գերատեսչական կազմակերպություններին՝ գիտականորեն, կոմպլեքսային լուծելու տրանսպորտի աշխատանքներում առաջացած պրոբլեմային հարցերը։

Մշտապես կատարելագործել քաղաքային մարդատար տրանսպորտի աշխատանքները, տալ նրան հստակ ռիթմ և բարձր տեմպ, արագացնել բնակչության տեղափոխումները— սրանք առանձնահատուկ կարևորություն ունեցող խնդիրներ են և չպետք է իջնեն օրակարգից։

Վ. Պ. ՍՏԵՓԱՆՅԱՆ





# ՄԱՍՆԱԳԻՏԱՑՄԱՆ ԴՐԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔԸ

Գյուղատնտեսության արտադրության մասնագիտացումը պահանջում է խելացի զուգակցել տվյալ տնտեսության շահերն ընդհանուր պետական շա-
հերի հետ, այն իրականացնել գիտականորեն հիմնավորված ձևով: Կոլտնտե-
սականների համամիութենական III համագումարում Լ. Ի. Բրեժնևը, քննադա-
տելով այն տնտեսություններին, որոնք երկու-երեք անասնապահական ճյու-
ղերի զարգացման համար ունենալով պայմաններ, մասնագիտացվել են միայն
մեկ մթերքի արտադրությամբ, ընդգծեց. «...մասնագիտացման հարցերում չի
կարելի ծայրահեղությունների մեջ ընկնել, թռչել-անցնել էտապների վրայով»
(Լենինյան կուրսով, էջ 677):

Պրակտիկայում դրսևորվել է կոլտնտեսությունների ու սովխոզների մաս-
նագիտացման երկու ձև՝ նեղ և խոր: Նեղ մասնագիտացված տնտեսություն-
ներն ունեն բուսաբուծության կամ անասնաբուծության մեկ ճյուղ: Խոր մաս-
նագիտացված տնտեսությունները բազմաճյուղ են, բայց ոչ ունիվերսալ: Այն-
տեղ զարգանում են բուսաբուծության ու անասնաբուծության մի քանի ճյու-
ղեր. գլխավոր արտադրաճյուղը համապատասխանում է կոնկրետ բնական և
տնտեսական պայմաններին: Լրացուցիչ արտադրաճյուղերը չեն խանգարում
գլխավորին, այլ լրացնում են:

Մասնագիտացված բազմաճյուղ կոլտնտեսությունն ու սովխոզը ունեն
մի շարք առավելություններ: Հայտնի է, որ կոլտնտեսությունների և սովխոզ-
ների հողահանդակները լինում են տարբեր տեսակի և օգտագործվում ըստ
բնույթի և նշանակության: Դրա համար էլ, երբ տարբեր հողահանդակներ ու-
նեցող տնտեսությունը նեղ մասնագիտացման է ենթարկվում, լրիվ չեն օգ-
տագործվում բոլոր հողերը: Իսկ մասնագիտացված բազմաճյուղ տնտեսու-
թյունն ի վիճակի է օգտագործելու բոլոր տեսակի գյուղատնտեսական հողա-
հանդակները:

Գյուղատնտեսական արտադրությունը, ինչպես հայտնի է, սեզոնային
բնույթ ունի, որի հետևանքով բանվորական ուժը և գյուղատնտեսական տեխ-
նիկան տարվա ընթացքում օգտագործվում են ոչ հավասարաչափ: Այդ վերա-



բերում է բոլոր տնտեսություններին: Բայց բազմաճյուղ տնտեսությունում, ուր
լավագույն չափով զուգակցվում են բոլոր ճյուղերը, բանվորական ուժի ու
գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման սեզոնայնությունը թուլանում
է և բարձրանում է դրանց օգտագործման արդյունավետությունը:

Կյանքը ցույց է տալիս, որ առանձին տարիների կլիմայական անբարե-
նպաստ պայմանները նեղ մասնագիտացված տնտեսության էկոնոմիկայի վրա
ավելի ուժեղ են անդրադառնում: Բանն այն է, որ բազմաճյուղ տնտեսությու-
նում մեկ ճյուղի վնասը փոխհատուցվում է մյուս ճյուղերի եկամուտների հաշ-
վին, որը հնարավոր չէ նեղ մասնագիտացված տնտեսությունում:

Մասնագիտացված բազմաճյուղ կոլտնտեսությունների ու սովխոզների
առավելություններից մեկն էլ այն է, որ դրամական եկամուտները ստացվում
են բոլոր ամիսներին: Դրա շնորհիվ բարելավվում է շրջանառու միջոցների
օգտագործումը: Իսկ նեղ մասնագիտացված տնտեսություններից շատերը
դրամական միջոցները ստանում են սեզոնային կարգով:

Մասնագիտացված բազմաճյուղ տնտեսության առավելությունը երևում է
Ադրբեջանական ՍՍՀ Լեռնային Ղարաբաղի ավտոնոմ մարզի Մարտունու շրջանի Ճարտար գյուղի կոլտնտեսության (նախագահ՝ սոցիալիստական աշխա-
տանքի հերոս Սուրեն Ադամյան) և Մարտակերտի շրջանի XXII համագու-
մարի անվան սովխոզի (դիրեկտոր՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ
Սամվել Մամունց) հաշվեկշիռներից: Ութերորդ հնգամյակում այդ երկու տըն-
տեսությունների մասնագիտացումը և դրա խորացումը տեղի է ունեցել խա-
ղողագործության առավել զարգացման հաշվին: Խաղողագործությունը 1970 թ.
կազմել է սովխոզի և կոլտնտեսության ապրանքային արտադրանքի (համա-
պատասխանորեն) 85,4 և 75 տոկոսը: Միաժամանակ զարգացել է նաև անաս-
նաբուծությունը: Չնայած նրան, որ ապրանքային արտադրանքի մեջ անաս-
նաբուծական մթերքների տեսակարար կշիռը պակասել է, բայց սովխոզում
անասնաբուծական մթերքների արտադրությունն աճել է մոտ 22, իսկ կոլ-
տնտեսությունում՝ ավելի քան 40 տոկոսով: Անասնաբուծության զարգացման
այդ տեմպերը բարձր են հնգամյակի ընթացքում մարզի անասնաբուծության
զարգացման տեմպերից:

Տնտեսությունների մասնագիտացման խորացումը նրանց հնարավորու-
թյուն ընձեռեց զգալիորեն ավելացնելու ապրանքային արտադրությունը: Ան-
ցած հնգամյակում սովխոզում ապրանքային արտադրանքի ծավալն աճել է
3,3, կոլտնտեսությունում՝ 2,2 անգամ: Ավելացել է նաև արտադրության ար-
դյունավետությունը: Սովխոզը հնգամյակի ընթացքում ստացել է 3,8 մլն
ռուբլու շահույթ և հատուցել խաղողագործության վրա կատարած բոլոր կա-
պիտալ ներդրումները: Կոլտնտեսությունը հնգամյակի վերջին տարում պե-
տությանը խաղող վաճառելուց ստացել է 1,2 մլն ռուբլու շահույթ և փակել
անասնապահությունից կրած 357,5 հազար ռուբլու վնասն ու տնտեսության
համար ապահովել 30 տոկոս եկամտաբերություն:

Շահույթների զգալի ավելացումը տնտեսություններին հնարավորություն
ընձեռեց բարձրացնել անասնաբուծության ինտենսիվության մակարդակը:
Տավարաբուծության և ոչխարաբուծության արտադրանքը մի երկու տնտեսու-
թյուններում էլ աճել է մթերատվությամբ, իսկ խոզաբուծությունն ու թռչնա-
բուծությունը՝ մթերատվության բարձրացմամբ և գլխաքանակի ավելացմամբ:

Սովխոզում ու կոլտնտեսությունում 1970 թ. մեկ կովի կաթնատվությունը

համապատասխանորեն կազմել է 2349 և 3237 կգ, յուրաքանչյուր ոչխարից ստացած բուրդը՝ 1,8 և 2,1 կգ։ Սովխոզում և կոլտնտեսությունում բարձրացել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Հնգամյակի վերջին տարում բերքատվությունը համապատասխանորեն կազմել է՝ հացահատիկինը՝ 18,3 և 19,9, խաղողինը՝ 96 և 177, բանջարեղենինը՝ 209 և 259 ցենտներ։

Մասնագիտացման շնորհիվ այդ տնտեսություններում տեղի է ունեցել արտադրության համակենտրոնացում, որը հնարավորություն ստեղծեց կազմակերպելու խաղողի վերամշակման ձեռնարկություններ։ Երկու տնտեսություններն ըստ էության ագրո-արդյունաբերական կոմպլեքսներ են։ Սովխոզում ավարտվում է խոշոր գինեգործարանի շինարարությունը. կոլտնտեսությունում վաղուց կա այդպիսի գործարան, որն արտադրում է գինի և խաղողի հյութ։ 1970 թ. սովխոզն իրացրել է 2,8 մլն ռուբլու արդյունաբերական արտադրանք, որից ստացել է 695 հազար ռուբլու շահույթ։ Այդ նույն տարում կոլտնտեսությունը, պետությանը վաճառելով ավելի քան 6900 տոննա խաղող, մոտ 1000 տոննա մշակել է իր գործարանում։ Կոլտնտեսության արդյունաբերական արտադրանքի արժեքը կազմել է 265 հազար, իսկ արդյունաբերությունից ստացած շահույթը՝ 162,3 հազար ռուբլի։

Սովխոզի և կոլտնտեսության փորձը ցույց է տալիս, որ տնտեսության մեջ վերամշակման բազայի առկայությունը նպաստում է գյուղատնտեսական հումքի ռացիոնալ օգտագործմանը, տրանսպորտային և այլ ծախսերի կրճատմանը, բերքի արդյունավետ վերամշակմանը։ Վերը բերված տվյալները վկայում են, որ այդ տնտեսություններում արդյունաբերական ձեռնարկությունների առկայությունը բացասաբար չի ազդել գյուղատնտեսական արտադրության զարգացման վրա։

XXII կուսհամագումարի անվան սովխոզը և «Կոմունիզմ» կոլտնտեսությունը մարզի լավագույն տնտեսություններն են։ Նրանց արտադրության զարգացման տեմպերը հնգամյակի տարիներին ամենաբարձրն են մարզում։ Այժմ նրանք հաջողությամբ իրականացնում են արտադրության հետագա ինտենսիվացման մի շարք միջոցառումներ։

Ինչպես սովխոզի, այնպես էլ կոլտնտեսության եկամուտների, մասնավորապես շահույթի աճի շնորհիվ զգալիորեն բարձրացել է բանվորների և կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը, էական փոփոխություններ են կատարվել կուլտուրական կյանքում։ Ծարտար գյուղի կոլտնտեսության 1970 թ. համախառն արտադրանքը կազմել է 3621 հազար ռուբլի, որից զուտ շահույթ՝ 891 հազար ռուբլի։ Վերջինից անբաժանելի ֆոնդին հատկացրել է 637 հազար, կուլտկենցաղային կարիքների համար՝ 21 հազար ռուբլի։ Այստեղ կոլտնտեսականների յուրաքանչյուր աշխօրի դիմաց բաշխվել է 16 ռ. 64 կոպեկ։ Գյուղում կա միջնակարգ երկու, ութամյա մեկ դպրոց, կուլտուրայի հիանալի տուն, որն իր արտաքին ճարտարապետական տեսքով նման է Երևանի օպերայի ու բալետի թատրոնի շենքին։ Գործում է տեղամասային հիվանդանոցը, կառուցվում է նոր առողջապահական օբյեկտ։ Կոլտնտեսությունն ունի երկու գրադարան ու հյուրանոց, կենցաղային սպասարկման տաղավարներ։

ՍՄԿԿ XXII համագումարի անվան սովխոզը գտնվում է Մարտակերտի շրջանային կենտրոնում։ Միայն 1970 թվականին տնտեսությունը ստացել է 2 և կես միլիոն ռուբլու շահույթ, որից 290 հազարը հատկացրել է արտադրության ընդլայնման, 132 հազարը՝ նյութական խրախուսման և սոցկուլտմիջոցառումների, 81 հազարը՝ սոցիալիստական մրցության մեջ առաջնություն շահողներին պարգևատրելու ֆոնդին։ Անցած հնգամյակում սովխոզն իր միջոցներով բանվորների համար կառուցել է չորս բնակելի շենք՝ յուրաքանչյուրը 8—12 բնակարանից բաղկացած, 100 տեղանոց բանվորական ճաշարան, 150 տեղանոց մանկապարտեզ. ավարտվում է 400 հանդիսատեսի համար կուլտուրայի տան կառուցումը։ Սովխոզի կենտրոնական բնակավայրում գործում են երեք դպրոց, կուլտուրայի տուն, հիվանդանոց, մանկապարտեզներ, սանէպիդկայան, կենցաղսպասարկման բազմաթիվ օբյեկտներ։

Այս տնտեսություններում խաղողագործության և խաղաբուծության առավել բարձր տեմպերով զարգացումը պատահական չէ։ Բանն այն է, որ այդ արտադրաճյուղերն ավելի լավ են համապատասխանում նրանց բնական և տնտեսական պայմաններին։

Ինչպես նշված, այնպես էլ մարզի մյուս տնտեսությունների մասնագիտացումը նպաստել է գյուղատնտեսական արտադրանքի արագ աճին։ Հնգամյակի տարիներին մարզի գյուղատնտեսության համախառն արտադրանքի միջին տարեկան աճը երկրի գյուղատնտեսության զարգացման միջին տարեկան աճից բարձր էր մոտ 1,5 անգամ։

Ագրոարդյունաբերական կոմպլեքսը, որը մեր երկրում արտադրության զարգացման տնտեսապես արդարացված ձև է, կարող է կազմակերպվել տնտեսության մասնագիտացման ու դրա խորացման պայմաններում, երբ զգալի չափով աճում է այս կամ այն գյուղատնտեսական հումքի արտադրությունը։ Եվ կոմպլեքսի արդյունաբերական ձեռնարկությունը կարող է ու պետք է ծառայի տվյալ տնտեսության գյուղատնտեսական գլխավոր արտադրաճյուղին։

Ե. Հ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

մուծած մեծ ավանդը, բացահայտվում են նրա կոնկրետ կապերը տարբեր երկրների բանվորական շարժման մասնակիցների, պրոլետարական կազմակերպությունների հետ: Խիստ ուսանելի համարելով Մարքսի այս շրջանի գործունեությունը՝ Վ. Ի. Լենինը 1907 թ. գրել է. «Մարքսն ամենախաղաղ, թվում էր թե «իդեալական»,— նրա արտահայտությամբ,— «անմխիթար-ճահճային» («Նոյե-ցայտից» խմբագրության խոսքերով) ժամանակները կարողանում էր շոշափել հեղափոխության մոտիկությունը և պրոլետարիատին **բարձրացնել** մինչև իր առաջավոր, հեղափոխական խնդիրների գիտակցումը» (Երկեր, հ. 12, էջ 118):

Աշխատությունը բաղկացած է նախաբանից և երկու մասից, որոնք ընդգրկում են 11 գլուխ՝ համապատասխան պարագրաֆներով: Որպես գրքի առաջին մասի բնաբան հեղինակը բերում է Մարքսի պատասխանները «Խոստովանությունից».

Ձեր բնորոշ գիծը. նպատակի միասնություն:

Ձեր պատկերացումը երջանկության մասին. պայքար:

Ձեր պատկերացումը դժբախտության մասին. ստորադասություն:

Այս պատասխանները վերաբերում են 1865 թվականին, երբ վերջացել էր եվրոպական ռեակցիան և սկսվել հեղափոխական շարժման նոր վերելքը:

1849 թ. հակահեղափոխական ուժերին հաջողվում է ճնշել եվրոպական հեղափոխությունը, որի պարտությունն առանձնապես ծանր է անդրադառնում բանվորական շարժման վրա: Հեղափոխության մասնակիցները դաժան հետապնդումների են ենթարկվում, նրանց կազմակերպությունները ջախջախվում են: 1852 թ. հոկտեմբեր-նոյեմբերին Քյոլնում ռեակցիոն ուժերը դատական պրոցես են կազմակերպում կոմունիստների միության անդամների դեմ, Մարքսի առաջարկությամբ նույն տարում միությունը դադարեցնում է իր գործունեությունը:

Գրքում միանգամայն ճիշտ է ընդգծվում, որ կոմունիստների միությունը՝ պատմության մեջ այդ առաջին պրոլետարական կուսակցությունը, իր դերը կատարել էր՝ մոտ հինգ տարի շարունակ լինելով հեղափոխական գործունեության հիանալի դպրոց: Միության շարքերից աճել էին Ինտերնացիոնալի շատ ղեկավար գործիչներ— Վ. Լիբկնեխտը, Ի. Եկարուսը, Ֆ. Լեսները և ուրիշներ: Մարքսն ու Էնգելսը նշում էին, որ նոր պայմաններում անհրաժեշտ է գտնել բանվորական շարժման կազմակերպման նոր ձևեր:

Խուսափելով ռեակցիայի հետապնդումներից, Մարքսը 1849 թ. օգոստոսին Փարիզից վտարանդվում է Լոնդոն, որտեղ, ապրելով խիստ ծանր պայմաններում, շարունակում է իր հեղափոխական պայքարը: Այդ ժամանակաշրջանում՝ 50-ական թվականներին, Մարքսը Էնգելսի հետ միասին բազմակողմանիորեն մշակում է կոմունիստական աշխարհայացքի ընդհանուր տեսական և փիլիսոփայական հիմքերը, ձևակերպում է իր կողմից հայտնաբերված պատմության խնկական գիտական մատերիալիստական ըմբռնման գլխավոր գծերը, առաջ է քաշում և հիմնավորում քաղաքատնտեսության մի շարք ելակետային դրույթները, նախապատրաստում իր գլխավոր երկը՝ «Կապիտալը», մըշակում և զարգացնում է դասակարգային պայքարի և պրոլետարական հեղափոխության, բանվոր դասակարգի քաղաքական կուսակցության մասին ուսմունքը:

Գրքում հանգամանորեն ցույց է տրված Մարքսի ուսմունքի մարտնչող բնույթը: Հեղափոխական մարտերի ընդմիջումները Մարքսը հմտորեն օգտագործում էր իր տեսության հետագա զարգացման, բանվորական շարժումը թեորիապես զինելու և նոր գրոհների նախապատրաստելու համար: Գիտական ճշմարտության ուղիները որոնելիս՝ Մարքսը անխոնջ էր, հաստատակամ: Իզուր չէ, որ նրա սիրած ասացվածքը Դանթեի հետևյալ խոսքերն էին. «Գնա քո ճանապարհով, ով ինչ ուզում է, թող ասի»:

Մարքսի համար գիտությունը առաջին հերթին բանվոր դասակարգին հեղափոխական պայքարում զինելու միջոց էր: Մարքսը գիտությանը վերաբերվում էր որպես իր կուսակցական պարտականությանը:

Հեղափոխական տեսության և հեղափոխական պրակտիկայի անխզելի կապը Մարքսի գործունեության բնորոշ գիծն էր կյանքի բոլոր ժամանակաշրջաններում: Մարքսը խիստ տարբերում էր իսկական հեղափոխական գործունեությունը կեղծ աղմկարարությունից և շաղակրատանքից:

Մարքսն ու Էնգելսը գոհ էին, որ իրենց հաջողվել է ռեակցիայի ծանր տարիներին վերջնականապես սահմանազատվել աղմկարար



խմբավորումներից և նրանց խարդախություն-
ների համար բարոյական պատասխանատվու-
թյուն կրելուց: 1851 թ. փետրվարի 11-ին
այդ մասին նա Էնգելսին գրում էր. «Ինձ շատ
հաճելի է այս իսկական հասարակական մեկու-
սացումը, որի մեջ մենք երկուսս էլ՝ դու և ես,
այժմ գտնվում ենք: Այդ մեկուսացումը միան-
գամայն համապատասխանում է մեր բռնած
դիրքին և մեր սկզբունքին: Փոխադարձ զիջո-
ղությունների սիստեմը, քաղաքավարությունից
դրդված կիսատ-պռատ վարքագիծը, ինչպես և
այդ կուսակցության և դրա հետ միասին՝ այդ
բոլոր ավանակների ծիծաղաշարժ արարքների
համար հասարակության առաջ պատասխանա-
տվություն կրելը, այժմ արդեն այդ ամենը վեր-
ջացել է»:

Մարքսը մշտապես անողոք կռիվ էր մղում
մանրբուրժուական, ոչ պրոլետարական սոցիա-
լիզմի այն ժամանակ գերակշռող ուսմունքների
ու հոսանքների դեմ, վճռականապես մերկաց-
նում էմիգրանտական խմբակների շաղատա-
նությունները, իր դեմ ուղղված ամենակատաղի
ու ամենավայրագ անձնական հալածանքները:

Դատապարտելով բոլոր տեսակի օպորտու-
նիստներին՝ Մարքսը միաժամանակ հատուկ
հոգատարությամբ էր վերաբերվում իր զինա-
կիցներին ու համախոհներին, անվանում էր
նրանց «Մեր կուսակցություն», շարունակում
էր նրանց դաստիարակել կուսակցական կար-
գապահության, բանվոր դասակարգի նկատ-
մամբ բարձր պատասխանատվության զգացու-
մի, փոխադարձ համակրանքի ու ընկերական
օգնության ոգով: Բանվոր դասակարգի հզորու-
թյան նկատմամբ խոր հավատով աղեցուն՝
Մարքսը նրանց ելույթների մեջ տեսնում էր
պրոլետարական առյուծին, որը, չնայած դա-
ժան ռեակցիային, չի մեռել և ցույց էր տալու
իր հզոր, հաղթական ուժը:

Դաժան փորձությունները ավելի են կոփում
Մարքսի և Էնգելսի մեծ բարեկամությունը, որի
մասին հետագայում Լենինը գրել է. «Հնագույն
ավանդությունները պատմում են բարեկամու-
թյան զանազան սրտաշարժ օրինակների մա-
սին: Եվրոպական պրոլետարիատը կարող է
ասել, որ նրա գիտությունն ստեղծել են երկու
գիտնականներ ու մարտիկներ, որոնց հարա-
բերությունները գերազանցում են հնադարյան
մարդկանց բոլոր ամենասրտաշարժ պատմա-

զրույցները մարդկային բարեկամության մա-
սին»: Մի այլ առիթով Լենինն ասել է, որ եթե
չլիներ Էնգելսի անձնազոհ ֆինանսական օ-
ժանդակությունը, Մարքսը ոչ միայն չէր կարող
ավարտել «Կապիտալը», այլև անխուսափելիո-
րեն կկործանվեր աղքատության ճնշման տակ:

Գրքում ցույց են տրված Մարքսի և նրա
հիանալի ընտանիքի տառապանքները, Մարք-
սի տոկունությունը՝ հաղթահարելու բոլոր դըժ-
վարությունները: Մարքսի համար ընտանիքը ոչ
թե բեռ էր, այլ հենարան պայքարում, ոչ միայն
հոգսի, այլև բազում երջանկության աղբյուր:
Մարքսը խորապես երջանիկ էր ընտանեկան
կյանքում: Նրա ընտանիքում գերիշխում էին
լավատեսության ոգին, փոխադարձ վստահու-
թյան մթնոլորտը, ջերմությունն ու հոգատարու-
թյունը իրենց բարեկամների նկատմամբ: «Դուք
գիտեք,— գրել է Մարքսը 1866 թ. օգոստոսին
իր ապագա փեսա Լաֆարգին,— որ ես զոհեցի
իմ ամբողջ ունեցվածքը հեղափոխական պայ-
քարին: Ես չեմ փոշմանել դրա համար: Ընդ-
հակառակը, եթե հարկ լիներ նորից սկսել իմ
կյանքի ուղին, ես կրկին այդպես կվարվեի»:

Գրքում մեծ տեղ է հատկացված ազգային
ազատագրական և գաղութային հարցում
Մարքսի կողմից պրոլետարիատի քաղաքակա-
նության մշակման պրոբլեմին:

Դեռևս 40-ական թվականներին Մարքսն ա-
ռաջ է քաշում և հիմնավորում պրոլետարիա-
տի և նրա կուսակցության քաղաքականու-
թյան հիմնական սկզբունքները ազգային հար-
ցում, այն է՝ անհաշտ վերաբերմունք ոչ միայն
սոցիալական, այլ նաև ազգային կեղեքման նը-
կատմամբ, ճնշված ժողովուրդների իսկական
ազատագրական պայքարի և անկախության
համար ծավալվող շարժման մարտիկների, որ-
պես բանվոր դասակարգի դաշնակիցների, հե-
տևողական պաշտպանություն: Այս ինտերնա-
ցիոնալիստական սկզբունքները Մարքսը 50-ա-
կան թվականներին տարածեց Արևելքի և այլ
գաղութային երկրների ճնշված ժողովուրդների
նկատմամբ: Նա մերկացրեց ժողովուրդներին
«պատմական» և «ոչ պատմական» կատեգո-
րիաների բաժանելու հեգելյան արատավոր
կոնցեպցիան: Հակառակ արևմտաեվրոպական
քաղաքագետների, որոնք պաշտպանում էին
թուրքական միջնադարյան կայսրությունը,
Մարքսը որոշակի կերպով հանդես էր գալիս

այդ կայսրության հեղափոխական կործանման և նրա բեկորների վրա ազգային անկախ պետությունների ստեղծման օգտին: Մարքսը ցույց էր տալիս, որ սուլթանական Թուրքիայի «ամբողջականության» պաշտպանությունը ուղղված է սուլթանի կողմից ճնշված ժողովուրդների ազգային ձգտումների դեմ և, հետևաբար, արևելյան հարցը պետք է լուծել ոչ թե հինգ տերությունների դիվանագիտական խաղերով, այլ հեղափոխական դեմոկրատական ճանապարհով, «վեցերորդ տերության»՝ Եվրոպական հեղափոխության միջոցով: Գաղութային ճնշման դեմ ուղղված շարժումը Մարքսը համարում էր ազատագրական, հեղափոխական մեծ նշանակություն ունեցող երևույթ:

1857 թվականի առաջին համաշխարհային տնտեսական ճգնաժամի մեջ Մարքսը տեսավ հեղափոխական նոր վերելքի նախագուշակին և նոր եռանդով պայքար ծավալեց հեղափոխական ուժերին համախմբելու համար, ամրապնդեց կապերը պրոլետարական և դեմոկրատական շրջանների հետ: Այս տարիներին Մարքսի ստեղծագործական հանճարը ապրում է իր ծաղկման շրջանը: Նրա հեղինակությունը որպես հեղափոխական գիտնականի և հրապարակախոսի, աշխատավորության շահերի հետևողական պաշտպանի, ռեակցիայի դեմ մղված պայքարի մարտիկի, շատ բարձր էր պրոլետարական և դեմոկրատական շարժման մեջ: Մարքսին գիտեին Գերմանիայում, Անգլիայում, Ֆրանսիայում, Բելգիայում, Շվեյցարիայում, ԱՄՆ-ում, Իտալիայում, Ռուսաստանում: Մարքսի հետևորդների թիվը ամենուրեք անում էր:

60-ական թվականների սկզբին Մարքսը հետևողականորեն պաշտպանում է Ռուսաստանում ծավալվող գյուղացիական շարժումները: Քաղաքացիական պատերազմը Ամերիկայում, լեհական հայրենասերների ապստամբությունը: Մերկացնելով ռեֆորմիզմը և աղանդավորականությունը, մասնավորապես լասսալականությունը որպես մանրբուրժուական սոցիալիզմի տարատեսակ՝ Մարքսը ամրապնդում է տարբեր երկրների պրոլետարիատի ինտերնացիոնալ համախմբվածությունը: Մարքսի ու Էնգելսի ձևակերպած պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները դառնում են բանվորների միջազգային ընկերության կազմավորման գաղափարական գլխավոր խթանը: Մարքսի ու Էնգելսի կողմից դեռևս 1847 թվականին հռչակված «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» կոչը լայն արձագանք է գտնում և դառնում առաջին Ինտերնացիոնալի ընդհանուր նշանաբանը:

Գրքում միանգամայն ճիշտ է նշվում, որ 1864 թ. սեպտեմբերի 28-ին Լոնդոնում հիմնադրված Բանվորների միջազգային ընկերությունը՝ առաջին Ինտերնացիոնալը, Մարքսի ու Էնգելսի 12 տարվա հերոսական պայքարի արդյունքն էր: Պրոլետարիատի այդ նոր կազմակերպությունը կոմունիստների միության արժանավոր հաջորդն էր ռեակցիայի ծանր տարիներին: Մարքսն ու Էնգելսը անաղարտ պահեցին հեղափոխական գաղափարները, զարգացրին ու հարստացրին դրանք: Իրենց անխոնջ գործունեությամբ մարքսիզմի հիմնադիրները ոչ միայն գաղափարապես նախապատրաստեցին Ինտերնացիոնալի ստեղծումը, այլև ռեալ պայմաններ ստեղծեցին այն մարտական կազմակերպություն դարձնելու համար:

Գրքում մի ամբողջ գլուխ նվիրված է «Կապիտալ»-ի ստեղծման նախապատրաստական աշխատանքներին («Մեծ աշխատության ստեղծման էտապները»): Մարքսի այդ դարակազմիկ գործը երկունքով էր ծնվում: Իր ուժերը նվիրելով գլխավորապես քաղաքատնտեսության ուսումնասիրությանը՝ 1857—1859 թթ. Մարքսն ավարտում է «Քաղաքատնտեսության քննադատության շուրջը» երկի ձեռագիրը, որում ձևակերպում է իր մեծ հայտնագործությունը՝ հավելյալ արժեքի թեորիայի ուրվագծերը:

Ամփոփելով Մարքսի գործունեության 12 տարվա ժամանակաշրջանի արդյունքները՝ հեղինակը ընդգծում է, որ այն, ինչ արեցին Մարքսն ու Էնգելսը այդ 12 տարիների ընթացքում հեղափոխական պայքարի տեսության և տակտիկայի մշակման գործում, համապատասխանում էր ոչ միայն բանվորական շարժման անմիջական կարիքներին, այլև նրա հետագա զարգացման պահանջներին:

Գրախոսվող աշխատությունը լուրջ արժանիքների կողքին ունի առանձին թերություններ և բացեր: Նշենք դրանցից մի քանիսը:

Խոսելով հետազոտվող թեմայի վերաբերյալ եղած գրականության մասին, հեղինակը չի հիշատակում միութենական հանրապետություններում Մարքսին նվիրված ռուսերեն և տեղական լեզուներով հրատարակված գրականությունը:

Քննարկելով Մարքսի պատմական հետազոտությունները և, մասնավորապես, նրա ուսումնասիրությունները Արևելյան հարցի վերաբերյալ՝ հեղինակը շրջանցում է Մարքսի



սկզբունքային կարևոր նշանակություն ունեցող հարցադրումները Հայաստանի և Անդրկովկասի վերաբերյալ, մինչդեռ հայտնի է, որ հենց քննարկվող ժամանակաշրջանում Մարքսը բազմիցս մերկացրել է սուլթանական Թուրքիայի և մեծ պետությունների հակամարտությունները Հայաստանում:

1854 թ. մարտին Մարքսը նշում է, որ Օսմանյան կայսրության մեջ ապրում է երկու միլիոն չորս հարյուր հազար հայ: Հայաստանի մասին Մարքսը հետաքրքիր տվյալներ է հաղորդում 1856 թ. գրած **Կարսի անկումը** հոդվածաշարում և 1857 թ. հրապարակված **Արևելյան հարցի մասին** հոդվածում: Մարքսը նշում է, որ Կարսը Հայաստանի ամենահարուստ, ամենայուրացված մասն է, Էրզրումի բանալին, իսկ Էրզրումը Կոստանդնուպոլսի բանալին է, Անատոլիայի ստրատեգիական ու առևտրական ճանապարհների կենտրոնակետը:
Աշխատության աղբյուրագիտական տեսությունը շատ սխեմատիկ է, այն փաստորեն սահմանափակվում է տվյալ ժամանակաշրջանում Մարքսի կենսագրությամբ զբաղվող հեղինակների անունների թվարկմամբ:
Գիրքը զուրկ է գիտական ապարատից, մինչդեռ այն խիստ անհրաժեշտ է մենագրական հետազոտության համար: Լ. Ի. Գոլմանը Մարքսի և Էնգելսի գրական և նամակագրական ժառանգության խոշոր գիտակ է: Նա ակտիվ մասնակցություն է ունեցել Մարքսի և Էնգելսի Երկերի երկրորդ հրատարակության նախապատրաստմանը, Կարլ Մարքսի գիտական կենսագրության ստեղծմանը, Մարքսի կյանքի ու գործունեության վերաբերյալ նրա խոր գիտելիքները պետք է ավելի լայնորեն օգտագործվեին քննարկվող աշխատության տեղեկատու բաժինը հարստացնելու համար:

Կարլ Մարքսի գործունեությանը վերաբերող գրախոսվող գրքում քննարկվող ժամանակաշրջանը գիտական կոմունիզմի մեծ հիմնադրի ամբողջ կենսագրության օրգանական մասն է, այն օգնում է խորապես ըմբռնելու Մարքսի կյանքի անմահ սխրանքը, նրա կերպարը՝ որպես մտածողի, մարտիկի և մարդու:

Լ. Ի. Գոլմանի գիրքը ընթերցվում է մեծ հետաքրքրությամբ: Որպես հեղինակի երկար տարիների աշխատանքի արդյունք՝ այն հարուստ է նոր նյութերով, հետաքրքրական եզրակացություններով:

**Գ. Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**



## Ի ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ

Տնտեսագիտության թեորիան ուսումնասիրողների համար այս տարվա նոյեմբերից սկսած, մեր ամսագրում սիստեմատիկաբար կտպագրվեն տեսական նյութեր՝ հետևյալ թեմաներով.

1. ՍՄԿԿ XXIV համագումարը ժողովրդական տնտեսության կառավարման սիստեմի կատարելագործման մասին:
2. Սոցիալիզմի տնտեսական օրենքների օգտագործումը և արտադրության կառավարումը:
3. Սոցիալիստական արտադրության սիստեմի մեթոդները:
4. Սոցիալիստական արտադրության պլանավորման հիմնական սկզբունքները:
5. Արտադրության խրախուսումը և տնտեսական լիակատար հաշվարկը:
6. Գիտատեխնիկական պրոգրեսի կառավարումը:
7. Կառավարման սիստեմի կազմն ու կառուցվածքը:
8. Տնտեսական անալիզը կառավարման սիստեմում:

Միաժամանակ մեր ամսագրում կտպագրվեն ՍՍՀՄ արտաքին քաղաքականության և միջազգային հարաբերությունների կարևորագույն պրոբլեմները լուսաբանող հետևյալ թեմաները.

1. Մարքսիզմ-լենինիզմը սոցիալիստական արտաքին քաղաքականության գիտական հիմքն է:
2. Պրոլետարական ինտերնացիոնալիզմը սոցիալիստական արտաքին քաղաքականության հիմնական սկզբունքն է:
3. Երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը:
4. Իմպերիալիզմի արտաքին քաղաքականության ճգնաժամը:
5. Միջազգային հարաբերությունների կարգավորման բուրժուական կոնցեպցիայի քննադատությունը:
6. Երիտասարդ ազգային պետությունների դերը միջազգային հարաբերություններում:
7. Էկոնոմիկան և արտաքին քաղաքականությունը:
8. Սոցիալիստական միջազգային հարաբերությունների կարևորագույն գծերը:

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ



Адрес редакции. — Ереван-33, Барекамутян, 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 06063 Պատվեր 1377 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 13.100 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 5/IX 1972 թ.:

Հկկ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ավ. Իսահակյան փող. № 28:

## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ՆՈՐ ԳՐՔԵՐ

Կուսակցական շինարարության պրոբլեմներ: *ՍՄԿԿ ԿԿ առընթեր մարքսիզմ-լենինիզմի, հասարակական գիտությունների ակադեմիայի, բարձրագույն կուսակցական դպրոցի, ՍՍՀՄ ԳԱ հասարակական գիտությունների սեկցիայի միացյալ գիտական կոնֆերանսի նյութեր, հետևյալ թեմայով՝*

*«ՍՄԿԿ XXIV համագումարը և մարքս-լենինյան տեսության զարգացումը»: 1971 թ., 29 սեպտեմբեր—1 հոկտեմբեր: Մ., Քաղհրատ, 1972, 328 էջ:*

ՍԵՆՉԱԿՈՎԱ Լ. Տ.— Հեղափոխական շարժումը ռուսական բանակում և նավատորմում XIX դարի վերջին—XX դարի սկզբին (1879—1904 рр.). *Մ.,* «Наука» *հրատ., 1972, 216 էջ:*

Ժողովրդական վերահսկիչ: *Տեղեկատու, Մ., Քաղհրատ, 1972, 340 էջ:*

*Տեղեկատուում զետեղված են կուսակցության, կառավարության վերադաս մարմինների, ՍՄԿԿ համագումարների, Կենտկոմի պլենումների որոշումները և այլ նյութեր:*

Գիտատեխնիկական հեղափոխությունը և սոցիալական առաջադիմությունը *(Հոդվածների ժողովածու): Մ., Քաղհրատ, 1972, 368 էջ:*

Համաշխարհային փիլիսոփայության անթոլոգիա: *Չորս հատորով: Հատոր IV: ՍՍՀՄ ժողովուրդների փիլիսոփայական և սոցիոլոգիական միտքը XIX դարում: Մ.,* «Мысль» *հրատ., 1972, 708 էջ:*

Սկզբնական կոմերիտական կազմակերպություն: *Կոմերիտմիության համագումարների, կոնֆերանսների, ինչպես և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փաստաթղթերը և նյութերը (1918—1971), Մ., 1972, 416 էջ:*

Սովետական դատախազություն: *Կարևորագույն փաստաթղթերի ժողովածու: Մ.,* «Юридическая литература» *հրատ., 1972, 408 էջ:*

ԿԱՄԵՆԻՑԵՐ Ս. Ե.— Սոցիալիստական արտադրական ձեռնարկություն: *Տնտեսական գիտելիքներ մասսաներին: Եր., «Հայաստան» հրատ., 1972, 42 էջ:*

ՌՈՄԱՆՈՎ Ա. Պ.— Տիեզերականների կոնստրուկտորը: *Եր., «Հայաստան» հրատ., 1972, 168 էջ:*

*Վավերագրական այս ակնարկում հեղինակը շարադրել է տիեզերանավերի ստեղծող, ակադեմիկոս Սերգեյ Պավլովիչ Կորոլյովի (1906—1966) կյանքի և գիտական գործունեության փաստերը:*

ԹԱՄՐԱԶՈՎԱ Ի. Ի.— Կոմունիստական կազմակերպությունների գործունեությունը Անդրկովկասի ժողովուրդների ինտերնացիոնալ համախմբման համար (1921—1928 рр.): *«Հայաստան» հրատ., 1972, 200 էջ:*

ԱՆՏՈՆՅԱՆ Մ. Հ.— ՍՄԿԿ XXIV համագումարը և սոցիալիստական հասարակության կառավարման հարցեր: *Եր., ԳԱ հրատ., 1972, 188 էջ:*

ՄԿՐՏՉՅԱՆ Ա. Ա.— Բանվորական շարժումը ԱՄՆ-ում: *Արդի պրոբլեմները և տենդենցները, «Հայաստան» հրատ., 1972, 280 էջ:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՈՒԼՏՐԱՁԱՅՆԸ ՈՒԺԵՂԱՑՈՒՑԻՉ

Այս հայտնագործության հեղինակը Բելոռուսիայի ԳԱ ակադեմիկոս Ե. Գ. Կոնովալովն է։

Մագականությունը բնության կարևորագույն երևույթներից մեկն է։ Բոլոր կենդանի օրգանիզմները ապրում են մեծ մասամբ դրա շնորհիվ։ Բույսերի արմատը, ցողունը, տերևը և ճյուղերը ներհյուսված են բազմաթիվ մազանոթներից, որոնց միջով, շնորհիվ հեղուկի վեր բարձրանալու հատկության, սննդանյութերը թափանցում են բույսերի բոլոր կետերը։ Այս երևույթը հսկայական նշանակություն ունի պինդ նյութերը տարբեր նպատակներով, զանազան հեղուկներով հագեցնելու տեխնոլոգիայում։

Պարզվել է, որ մազանոթներով հեղուկի վեր բարձրանալուն մոգական ազդեցություն է թողնում ուլտրաձայնը։ Եթե հեղուկը մազանոթներում ուլտրաձայնային տատանում է տալիս որևէ հոսանքի աղբյուրի ազդեցությամբ, ապա մազանոթային էֆեկտը խիստ աճում է. հեղուկի վեր բարձրանալու հատկությունը մեծանում է մի քանի տասնյակ անգամ։ Զգալիորեն աճում է նաև վերելքի արագությունը։

Զուտ գիտական արժեքից բացի այդ հայտնագործումն ունի նաև արդյունաբերական նշանակություն։ Այն արագորեն ներդրվում է արտադրության մեջ։

## ՆՈՐ ԱՊԱՐԱՏ ՖԻԶԻՈԹԵՐԱՊԻԱՅԻ ՀԱՄԱՐ

«Волна—2»-ը սովետական առաջին ապարատն է, որը նախատեսված է մարմնի հյուսվածքների տաքացման համար՝ դեցիմետրային դիապազոնի էլեկտրամագնիսական ալիքների օգնությամբ։

Թերապիայում դեցիմետրային ալիքներով ապահովվում է բավական խոր ներգործություն առանց մաշկի վերնաշերտի հյուսվածքների և ենթամաշկի ճարպային բջիջների այրման վտանգի։ Ի տարբերություն համանման արտասահմանյան սարքերի, «Волна—2»-ը ունի չափիչ գործիք, որը ավտոմատ ձևով հսկում է պրոցեդուրայի ժամանակը, բժշկին հնարավորություն է տալիս ճշգրտորեն զոզավորել դեցիմետրային ալիքների ներգործության տևողությունը և ինտենսիվությունը։

Նոր ապարատը կիրառություն կգտնի ողնաշարի և հոդային հիվանդությունների բուժման գործում։ «Волна—2»-ով կհագեցվեն երկրի պոլիկլինիկաների ֆիզիոթերապիայի կաբինետները և հիվանդանոցները։

## ՏԻԵԶԵՐԱՆԱՎՈՒՄ՝ ԻՆՉՊԵՍ ՏԱՆԸ

Տիեզերական երկարատև թռիչքի ժամանակ տիեզերագնացները դժվարությամբ կմոռանան երկրային բնության կարգուկանոնը և նույնքան դժվար կընտելանան նոր տիեզերական գրաֆիկին։ Ահա թե ինչու տիեզերանավերի սովետական կոնստրուկտորները մտահոգված են այդ հարցով։ Նրանք առաջարկում են մի տարբերակ. տիեզերանավը սարքավորել էկրանով, որի վրա հաջորդում են միմյանց երկրային գունավոր բնանկարներ։ Ընդորում, դրանց լուսավորվածությունը փոփոխվում է ծրագրի համաձայն, ստեղծելով լուսաբացի, կեսօրվա և մայրամուտի պատրանք։ Եթե թռիչքը տևում է ամիսներ, փոփոխվում է նաև օրվա տևողությունը։

## ԱՄԻՆՈԹԹՎԻ ԱՎՏՈՄԱՏ ԱՆԱԼԻԶԱՏՈՐ

Այն թողարկում է «Միկրոտեխնա» չեխոսլովակյան ֆիրման։ Անալիզատորը, որն օգտագործվում է սպիտակուցային կառուցվածքի, հիվանդությունների ախտորոշման, դեղանյութերի պատրաստման հսկողության և բարդ բիոքիմիական անալիզների համար՝ դժվար է գերագնահատել։

Ապարատը անալիզները կատարում է արագ, արդյունքները գրանցում թղթի վրա։ Անալիզատորը գեկուցագրում նշում է հետազոտվող նյութի պարունակած ամինոթթվի տոկոսը։

Կենտրոնական կառավարման սիստեմը հնարավորություն է տալիս հանձնարարել հետազոտողի ցանկացած աշխատանքային ծրագիրը։